### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆ— Լենինը և հայ ժողովրդի վերածնունդը . . . . . 3

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Մեծ առաջնորդի ուղիով . . . . . . . 10

Ս. Տ. ԱԼԻԽԱՆՅԱՆ— Լենինը կադրերի մասին . . . . . . 18

Ն. Մ. ԹՈՐՈՄԱՆՅԱՆ— Սովետական դատախազության կազմակերպման լենինյան սկզբունքները . . . . . . . . 23

Ա. Մ. ՆԱԶԻՆՅԱՆ— Լենինի կերպարը սովետահայ բանահյուսության մեջ 29


### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ


Ա. Հ. ՍՏԵՓԱՆՅԱՆ— Հասունության քննություն . . . . . . 35

ՄԻՐՈՅԵ ԱՍԱԴ— Լենինյան ազգային քաղաքականության հավատարիմ առաջամարտիկը . . . . . . . . . 43

Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ— Ինչպես վարել կուսակցական տնտեսությունը . . 50


### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ


Ա. Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ— Արտադրության խթանման կարևոր գործոնը . . 56

ԱԴԵԼԻՆԱ ԵՍԱՅԱՆ— Ներգործարանային տնտհաշվարկը . . . . 61

Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ— Ճարտարապետի խոհեր . . . . . . 64

ԳՈՀԱՐ ԳԻՄՈՅԱՆ— Արդյունավետ օգտագործել կանանց աշխատանքը . 70

Վ. Գ. ՋԱԼԱԲՈՎ— Մտորումներ ապագա տրանսպորտի մասին . . . 76

Ա. ՍՏՐՈԳԱՆՈՎ— «Մագնիսացած» ջրի սյուրպրիզները . . . . 80


### ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 50-ԱՄՅԱԿԸ


Ա. Տ. ՎԻՐԱԲՅԱՆ— Մեքենաշինական Հայաստանը . . . . . 82

ՋԵՄՄԱ ԱՆԱՆՅԱՆ— Մեր շրջանի կուլտուրայի օջախները . . . . 91


### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ


Մ. Ս. ՀԱԿՈԲՅԱՆ— Կոմունիզմը «զսպելու» ամերիկյան դոկտրինան . . 95


### ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ


Ի. Ս. ՄԱՄԵԴՈՎ— Սրբազան ավանդույթներ . . . . . . 104


### ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ


Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Լենինյան ուշագրավ աշխատություններ . . . 108

# *Содержание*


**К 100-летию со дня рождения В. И. Ленина**

Г. А. ГАЛОЯН — Ленин и возрождение армянского народа . . 3
В. А. ГЕВОРКЯН — По пути великого вождя . . . . . . 10
С. Т. АЛИХАНЯН — Ленин о кадрах . . . . . . . 18
Н. М. ТОРОМАНЯН — Ленинские принципы организации советской прокуратуры . . . . . . . . . . 23
А. М. НАЗИНЯН — Образ Ленина в армяно-советском фольклоре . 29

**Партийная жизнь**

А. А. СТЕПАНЯН — Экзамен зрелости . . . . . . 35
МИРОЕ АСАД — Верный боец ленинской национальной политики . 43
А. Г. ЗАЛИНЯН — Как вести партийное хозяйство . . . . 50

**Вопросы экономики и науки**

А. Г. ГАБРИЕЛЯН — Важный фактор стимулирования производства . 56
АДЕЛИНА ЕСАЯН — Внутризаводской хозрасчет . . . . . 61
Г. А. ИСАБЕКЯН — Думы архитектора . . . . . . 64
ГОАР ГИМОЯН — Эффективно использовать труд женщин . . . 70
В. Г. ЧАЛАБОВ — Раздумья о будущем транспорта . . . . 76
А. СТРОГАНОВ — Сюрпризы «намагниченной» воды . . . . 80

**К 50-летию Советской Армении**

А. Т. ВИРАБЯН — Машиностроительная Армения . . . . 82
ДЖЕММА АНАНЯН — Очаги культуры нашего района . . . . 91

**Международная жизнь**

М. С. АКОПЯН — Американская доктрина «сдерживания» коммунизма 95

**Трибуна молодого научного работника**

И. С. МАМЕДОВ — Святые традиции . . . . . . 104

**Для вас, читатели**

С. С. НАЛБАНДЯН — Ленинские замечательные труды . . . . 108









Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆ

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

*Լենինի անունը հարազատ ու թանկ է ողջ աշխատավոր մարդկության համար։ Լենինյան դրոշը մեր ժողովրդի հարատևության խորհրդանիշն է։ Լենինիզմի գաղափարներին հավատարիմ մնալը՝ այդ հարատևության գրավականն է։*

*Հայ ժողովուրդը բազում փորձություններով անցած ժողովուրդ է։ Նրա այսօրվա գոյությունն իր կենսունակության վկայությունն է։ Դարերի խորքից եկող, դարերի իմաստությունն իր մեջ մարմնացրած մեր ժողովուրդը XIX դարի արշալույսին իր քաղաքական կողմնորոշմամբ կարողացավ ընտրել ազգային վերածնության ճիշտ ճանապարհը։*

*Դժվար չէ պատկերացնել, թե ինչ կլիներ մեր ժողովրդի նաև արևելյան հատվածի հետ, եթե այն միավորված չլիներ մեծ Ռուսաստանին, եթե նրա ազատագրական պայքարը չմիահյուսվեր ռուսական հեղափոխական շարժմանը։*

*Իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում, երբ հայ իրականության մեջ ևս ուժեղացավ դասակարգային շերտավորումը և սրվեց հակամարտությունը, մեր ժողովուրդը ծնեց նոր դարաշրջանի ոգին մարմնավորող հեղափոխական գործիչներ, լենինյան գվարդիայի մի վառ համաստեղություն— Իսահակ Լալայանց, Բոգդան Կնունյանց, Ստեփան Շահումյան, Սուրեն Սպանդարյան և ուրիշներ, որոնք լենինիզմի վեհ գաղափարներով զինված՝ ձեռնամուխ եղան հայ ժողովրդի սոցիալական ազատագրման վսեմ գործին։*

*Որքան կյանքը հեռացնում է մեզ դարակազմիկ պատմական անցքերից, այնքան ավելի խոր ենք ըմբռնում մեծ Լենինի խաղացած դերը մեր ժողովրդի պատմական ճակատագրում։ Չէ՞ որ մեր այսօրվա կյանքի յուրաքանչյուր նվաճում, լինի դա ժողովրդական տնտեսության, գիտության, թե մշակույթի ասպարեզում, հազարավոր թելերով կապված է երեկվա հերոսական մաքառումների, մեր խավար ճամփին լույս սփռած լենինյան գաղափարների հետ։ Հայ*

սոցիալիստական ազգի ձևավորումը լենինյան գաղափարների հաղթանակն է մեր իրականության մեջ։

Վ. Ի. Լենինը Ռուսաստանի նախկինում ճնշված բոլոր ժողովուրդների ազատագրման ուղին տեսնում էր հեղափոխական բանվորական շարժման հաղթանակի, ազգային-ազատագրական և բանվորական հեղափոխական շարժումների ամուր դաշինքի մեջ։ Նրանք, ովքեր հասկացան իրենց ժողովուրդների փրկարար այս միակ ճիշտ գաղափարը, որդեգրվեցին Լենինի ստեղծած մեր կուսակցությանը, կազմեցին նրա բանակը և ռուսական երեք հեղափոխություններում թափած արյան գնով նվաճեցին մեր ազատությունը։ Մենք իրավունք ունենք հպարտանալու նրանցով։ Այդ նրանք էին, որ մեծ պայքարի շեմին անհողդողդ կանգնեցին Լենինի կողքին, նրանք էին, որոնց Լենինը սիրում և անսահման վստահում էր, որոնք մեծ պայքարի դարում հասկացան Լենինի դերը մեր ժողովրդի կյանքում, անձնազոհ ծառայեցին նրա շահերին, մարտի մտան հայրենի «ցեցերի» դեմ։ Այդ նրանք էին, որ կազմեցին մեծ Լենինի բանակի հայկական մարտական ջոկատը... Մենք իրավունք ունենք հպարտանալու, բայց և պարտավոր ենք ընդմիշտ հավատարիմ մնալ նրանց գաղափարներին, լենինիզմի դրոշին։

Հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի գործիչները դեգերումների մեջ էին, և ո՞վ կարող է ասել, թե քանի՛ հարյուր հազարավոր ազնիվ մարդկանց նոր կյանքեր կխլեր այդ մեծ պայքարը, եթե նրա առաջամարտիկները մեր ժողովրդի պայքարը չկապեին Ռուսաստանում ծավալվող բանվորական հեղափոխական շարժման հունով, եթե այդ շարժումն իր ոլորտը չներգրավեր բոլոր կեղեքվողների պաշտպաններին։

Եթե հայ սոցիալ-դեմոկրատները մարմնավորում էին բանվորների, գյուղացիների և աշխատավոր ինտելիգենցիայի շահերը, նրանց պայքարի դասակարգային բովանդակությունը, ապա «համազգային» շահերի արտահայտչի «փրկարար» ֆրազներով պճնված դաշնակցությունն արտահայտում էր ժողովրդի հակառակ բևեռում գտնվող ազգային կեղեքիչների դասակարգային շահերը։ Նրան սնում էր հայկական բուրժուազիան, որի հանդեպ «երախտամոռ» չի եղել դաշնակցությունը, Ստ. Շահումյանի խոսքերով ասած՝ հայկական բուրժուազիայի շահերի և իղձերի արտահայտիչը։

Ազգային շահերի պաշտպանության ֆրազներով պճնվող դաշնակցականները, ի չարը գործադրելով ժողովրդի ազգային զգացմունքները, կարողացան պատմական որոշ ժամանակահատվածում իրենց ազդեցությունը տարածել մանրբուրժուական խավերի և բանվորական հետամնաց շրջանների վրա։

Օգտագործելով հայերի միավորվելու և սուլթանական դժնդակ տիրապետությունից ազատագրվելու ազգային օրինական ձգտումները, դաշնակցություն կուսակցությունը ջանում էր համախմբել հայ ժողովրդի նորանոր խավեր և ազգային-ազատագրական շարժումները ենթարկել հայ բուրժուազիայի շահերին։ Նա ազգային-ազատագրական լոզունգներով սպեկուլյացիա էր անում։ Քաղաքական իր նպատակներն իրագործելու համար դաշնակցությունը լծվեց արևմտյան իմպերիալիստական պետությունների կառքին, ջանալով գործարքներ կնքել իմպերիալիստական պետությունների հետ, դրանով իսկ նրանց դիվանագիտական գործառնությունների խաղալիք դարձավ։

Դաշնակցությունը քաղաքական ակտիվ պայքար էր մղում ռուս հեղափոխական բանվոր դասակարգի գաղափարները Հայաստան և հայ իրականություն մեջ թափանցելու դեմ։ Այդ պայքարում նա համաքայլ էր ռուսական



ցարիզմին։ Դաշնակցության այդ քաղաքականությունը ո՛չ միայն չէր նպաստում ձևավորվող հայ պրոլետարիատի մերձեցմանը հարևան ազգերի պրոլետարներին, այլև խորթություն էր սերմանում հայ և դրացի ժողովուրդների միջև։

Պատահական չէ, որ այսօր կոմունիզմի դեմ սկսված խաչակրաց արշավանքին մասնակցում են նաև դաշնակցության մնացուկները, որոնք իրենց նախորդ և ամբողջ շրջանի անփառունակ գործունեությամբ դժբախտություն են պատճառել հայ ժողովրդին։ Նրանք այժմ, բառիս բուն իմաստով, դարձել են ամերիկյան իմպերիալիզմի գործակալները և իրենց գոյությունը քարշ են տալիս միայն ամերիկյան դոլարների շնորհիվ։ Դաշնակցությունը վաղուց կորցրել է իր գոյության սոցիալական հենակետը, նրանից երես են դարձրել նաև սփյուռքահայության աշխատավորական զանգվածները։ Դաշնակցության քաղաքականության նկատմամբ պատրանքներ սերմանելու յուրաքանչյուր անհույս փորձ նպատակ ունի ծառայելու միայն հակակոմունիզմի շահերին։ Այստեղ ևս երրորդ ուղի գոյություն չունի։

XX դարը հայ ժողովրդի մեծ ողբերգության, բայց և բուռն վերածննդի դարն է։

Հայկական ջարդերը Թուրքիայում, հարյուր հազարավոր հայերի արտագաղթը, պատերազմի ավերածությունները, սովն ու համաճարակները արյունաքամ արին իր գոյության համար հաստատակամ մաքառող հայ ժողովրդին։ Նրա դեմ կազմակերպված ցեղասպանությունը չէր վերջանալու 1915—1916 թվականների նախճիրներով։ Թուրքական բռնակալները մտադրվել էին իմպերիալիստական պատերազմի ընթացքում իսպառ բնաջնջել նաև Անդրկովկասի հայերին։ Այդ են վկայում պատմական անթիվ փաստերը։ Թվում էր, թե երկրի երեսից իսպառ բնաջնջվելու է հազարամյա մշակույթ ունեցող մի ժողովուրդ։

Հոկտեմբերի արշալույսը, լենինյան գաղափարները լույս սփռեցին մեր ճանապարհին։ Բայց, 1917—1920 թվականներին, դաշնակցության հայրենադավ քաղաքականության հետևանքով, նոր ամպեր կուտակվեցին հայ ժողովրդի գլխին։ «Ազատ ու անկախ Հայաստանը» դարձավ դժոխքի Հայաստան, ուր ժողովուրդը, իր հերոսական մաքառումներով հանդերձ, մահվան էր դատապարտված։ Սա պատմական փաստ է և ոչ դատարկ ֆրազ։

Ո՞ւմ հայտնի չէ, որ Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների անասնական նացիոնալիզմի հեղձուցիչ շմոլքում խեղդվում էր աշխատավոր դասակարգը։ Ո՞վ չգիտե, որ այդ կուսակցությունների վարած քաղաքականության հետևանքով, դարերով կողք-կողքի ապրող եղբայր ժողովուրդները սուր ճոճեցին միմյանց դեմ, ընկան հարյուր հազարավոր մարդիկ, ավերվեցին, հրի ու սրի մատնվեցին գյուղեր ու քաղաքներ, ամայացավ հայ շինականի տունը, որբացան հայ կինն ու մանուկը։ Այդ վիճակում էին նաև Անդրկովկասի մյուս ժողովուրդների աշխատավորական զանգվածները։ Ո՞վ իրազեկ չէ, որ ազգամիջյան կոտորածներն ու պատերազմները հրահրում էին օտար բռնակալները, որոնց բնավ չէր հետաքրքրում մեր ժողովրդի ճակատագիրը, որ թուրքական զավթիչները շարունակում էին հայաջինջ իրենց քաղաքականությունը և դրա համար պարարտ հող էին ստեղծում անհեռատես մեր ազգային ջոջերը։

Եվ ո՞վ կարող էր վերածնության երաշխիք տալ մեր ժողովրդին, եթե չլիներ Սովետական Ռուսաստանը, եթե Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունն իր վրա չվերցներ հայ ժողովրդի ազատագրական միսիան։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն իրոք նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Դա է հավաստում համաշխարհային զարգացման ավելի քան կեսդարյա պատմությունը։ Սովետական իշխանությունը ծնվեց որպես Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավոր զանգվածների երկարամյա դասակարգային պայքարի արդյունք։ Լենինի գլխավորած սովետական առաջին կառավարության առջև ծառացած էին միջազգային և ներքին բազմաթիվ կնճռոտ հարցեր։ Դեռ լուծված չէր ով-ումի հարցը։ Ռուսաստանի բանվոր դասակարգը, մեր կուսակցության ղեկավարությամբ, կենաց ու մահու գոտեմարտի մեջ էր մտել աշխարհի բոլոր ռեակցիոն, ինչպես նաև սպիտակգվարդիական բանդաների և ծայրամասերի ազգայնական հակահեղափոխության ուժերի հետ։ Այդ օրերին էր, որ Լենինն իր հայացքը կրկին սևեռեց հայկական հարցի վրա, այն բարձրացրեց համապետական նշանակություն ունեցող հարցերի մակարդակի և հռչակեց «Թուրքահայաստանի» անկախության մասին հանրահայտ դեկրետը։

Բայց ո՛չ միայն հռչակեց։

Սովետական իշխանությունը հայ ժողովրդի իմպերիալիստական ճնշման քաղաքականությանը հակադրեց նրա լիակատար ազատագրման քաղաքականությունը և երբեք չդավաճանեց իր հռչակած սկզբունքներին։

Սովետական իշխանության և կոմունիստական կուսակցության մեղքը չէր, որ «Թուրքահայաստանի մասին» լենինյան դեկրետը չիրագործվեց ամբողջությամբ։ Երկրի միջազգային դրությունը հնարավորություն չընձեռեց լուծելու այդ և մի շարք այլ հարցեր։

Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունները, արևմտյան իմպերիալիստների թելադրանքով և օգնությամբ, երկրամասը հայտարարեցին Սովետական Ռուսաստանից անջատված։ Դա դավաճանություն էր Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի ժողովուրդների շահերին, դավաճանություն, որը խիստ թանկ նստեց այդ ժողովուրդների վրա, նրանց բերեց նոր զրկանքներ, տառապանքներ, մարդկային հազարավոր նոր զոհեր։

«Արևմտյան դեմոկրատներն (??) ուղի ցույց կտան մեզ»— այսպես բնութագրեց դաշնակների արտաքին քաղաքական կուրսը, դաշնակցության ջոջերից մեկը՝ Զավրիևը։ Դաշնակները պաշտպանություն էին փնտրում Արևմտյան իմպերիալիստների, Ռուսաստանի սպիտակգվարդիականության և հակահեղափոխական բոլոր տականքների շրջանում, բայց ո՛չ հայ ժողովրդի և նրա շահերը պաշտպանող Սովետական Ռուսաստանի մոտ։ Դաշնակների «օրիենտացիան» թելադրվում էր «գործարար» դատողություններով, նկատի էր առնվում, թե արտաքին ինչպիսի ուժերի վրա պետք կլինի հենվել իշխանությունը զավթելու և այն իրենց ձեռքում պահելու համար։

Բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների հանցագործ քաղաքականությունը, խելագար ավանտյուրաները, օր-օրի սաստկացնում էին նացիոնալիստական սանձարձակության մղձավանջը։ Նրանց ներքին ռեակցիան և արտաքին քաղաքականությունը զուգորդվում էին ազգային փոքրամասնությունների հալածանքով։

Սակայն որքան «անկախ» Հայաստանի սառը գրկի մեջ մոլեգնում էր սովը, այնքան ավելի սանձարձակ էր դառնում դաշնակների խրախճանքը, որոնք դհոլ-զուռնայի աղմուկով խլացնում էին սովից մեռնողների աղերսը։

Այսպես էին դաշնակցականները «փրկում» ազգը։



Սովետական Ռուսաստանի կառավարությանը քաջ հայտնի էր Անդրկովկասի բուրժուական նացիոնալիստների թշնամական դիրքը պրոլետարական հեղափոխության հանդեպ։ Ելնելով երկրամասի ժողովուրդների ազգային շահերից և ձգտելով պաշտպանել Անդրկովկասը օտարերկրյա զավթիչների ներխուժումից, սովետական կառավարությունը, Լենինի գլխավորությամբ, հետևողական պայքար էր մղում Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի իսկական անկախության համար, անշահախնդիր օգնություն ցույց տալիս երկրամասի աշխատավորներին՝ օտարերկրյա ինտերվենտների և ներքին հակահեղափոխության դեմ ազգային և սոցիալական ազատագրման համար մղած նրանց պայքարում։

1918 թվականի գարնանը, երբ թուրքական, գերմանական, ապա նաև անգլիական զավթիչները Անդրկովկաս էին ներխուժել և թալանում էին երկրամասը, Լենինի գլխավորությամբ Սովետական Ռուսաստանի կառավարությունը բողոքի ձայն բարձրացրեց։

Անդրկովկասի նորաթուխ կառավարությունները, երկրամասի պաշտպանությունը կազմակերպելու փոխարեն, գլխակորույս բանակցություններ էին վարում Թուրքիայի ու Գերմանիայի հետ։ Եվ դա այն պահին, երբ ժողովրդական մասսաները Սարդարաբադի և Ղարաքիլիսայի հերոսամարտերում ցույց տվին, որ երկրամասը թուրքական զավթիչներից պաշտպանելու ռեալ ուժ կա։ Թուրքական զորքերի ջախջախումը Սարդարաբադի և Ղարաքիլիսայի տակ զգալիորեն հետաձգեց նրանց ներխուժումը Սովետական Բաքու։

Պատերազմում խոշտանգված և հիասթափված հայ աշխատավոր մասսաները վերջնականապես համոզվեցին, որ իրենք սպասելիքներ չունեն ո՛չ Անտանտի իմպերիալիստներից, ո՛չ էլ նրանց կամակատար բուրժուա-նացիոնալիստական կուսակցություններից։ 1920 թվականի մայիսին Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, զինված ապստամբություն բարձրացրին դաշնակ բռնակալների դեմ։

Մայիսյան զինված ապստամբությունը բանվորների և գյուղացիների մղած պայքարի փայլուն մի էջ է՝ հանուն Հայաստանում սոցիալիստական մեծ հեղափոխության, լենինյան գաղափարների հաղթանակի։

Հայ բանվորը, աշխատավոր գյուղացին ու ինտելիգենտը խորապես համոզվեցին, որ իրենց փրկության, ազգային վերածննդի միակ ուղին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նշած ուղին է։ 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ տապալեցին դաշնակցականների տիրապետությունը և հաստատեցին սովետական կարգեր։ Մեծ Հոկտեմբերի արևը ծագեց հայոց լեռնաշխարհի վրա։

Սակայն, ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանություն հաստատվելուց հետո էլ, նորաստեղծ հանրապետությունների առջև ծառացել էին քաղաքական և տնտեսական բարդ խնդիրներ։ Թուրքական զորքերը շարունակում էին օկուպացնել Հայաստանի տերիտորիայի մի մասը, դաշնակցական ավանտյուրան դեռևս ճնշված չէր, Զանգեզուրում շարունակվում էր քաղաքացիական պատերազմը։ Հակահեղափոխական ելույթների էին պատրաստվում ջախջախված մուսավաթականներն ու վրացական մենշևիկները։ «Եթե չլիներ դաշնակցական վերջին ավանտյուրան,— նշել է Ալ. Մյասնիկյանը,— մենք ավելի լայն սահմաններում կլինեինք»։ Զափազանց ծանր էր այդ հանրապետություն-

ների տնտեսական վիճակը։ Բուրժուա-ազգայնական կուսակցությունների վարած քաղաքականությունն իր խոր հետքն էր թողել, և, չնայած սովետական իշխանության հաղթանակին, ժողովուրդների մեջ դեռ չէր վերացել անվստահությունը միմյանց նկատմամբ։

Կոմունիստական կուսակցության առջև ծառացած էին նաև տնտեսական կարգի լուրջ խնդիրներ։ Հարկավոր էր վերականգնել երկրամասի քայքայված ժողովրդական տնտեսությունը, կառուցել սոցիալիզմի հիմքերը։

Սակայն այդ բարդ խնդիրները լուծելու համար անհրաժեշտ էր անդրկովկասյան հանրապետությունների քաղաքական ու տնտեսական ջանքերի միավորում, սերտ համագործակցություն՝ Սովետական Ռուսաստանի հետ։

Վ. Ի. Լենինը լարված ուշադրությամբ հետևում էր Անդրկովկասում ծավալվող դեպքերին, խորհրդակցում Անդրկովկասի կուսակցական ու պետական գործիչների հետ։ ՌԿ(բ)Կ Կենտկոմը, նրա քաղբյուրոն և կազմբյուրոն բազմիցս անդրադարձել են Անդրկովկասի հարցերին, քաղաքական ու տնտեսական խնդիրների լուծման նպատակով կոնկրետ միջոցներ ձեռնարկել։

Դեռևս 1920 թ. դեկտեմբերի 13-ին Լենինն ընդունեց Հայաստանի հեղկոմի ներկայացուցիչներ Ս. Տեր-Գաբրիելյանին և Ա. Մռավյանին, որոնք տեղեկացրին նրան Հայաստանի ծանր դրության և օկուպացված շրջաններում թուրքերի գործադրած բարբարոսությունների մասին։ Լենինը խոստացավ ամեն կերպ աջակցել Հայաստանին՝ տնտեսապես ոտքի կանգնելու և Թուրքիայի հետ բանակցություններ սկսել՝ Ալեքսանդրապոլն ու երկաթուղին Հայաստանին վերադարձնելու համար։ Անհապաղ, այդ իսկ օրը, Լենինի նախաձեռնությամբ, Սովետական Հայաստանը հնարավոր օգնություն ստացավ։

Մեր ազգի գոյության, սոցիալիստական պետականության ստեղծման համար մենք պարտական ենք կոմունիստական կուսակցությանը, լենինյան գաղափարներին, Սովետական Ռուսաստանին։ Պատմական այս ճշմարտությունը պետք է լավ գիտակցի Սովետական Հայաստանի յուրաքանչյուր քաղաքացի։ Առաջին սերմացուից մինչև քաղաքական անկախությունը մեզ տվել է միայն Սովետական իշխանությունը: Եվ բնական է, որ ողջ 1921 թվականի ընթացքում Լենինի անմիջական կարգադրությամբ ՌՍՖՍՀ մի շարք օրգաններ սիստեմատիկ տնտեսական օգնություն ցույց տվին Հայաստանին։

Ինչպես մատնանշել ենք մեր հոդվածներից մեկում (տե՛ս «Լենինյան ուղիով», № 7, 1967 թ.) Լենինը և սովետական դիվանագիտությունը ռեալ կերպով աջակցեցին մեր ժողովրդին, վերջնականապես կասեցնելով քեմալական զավթիչների շարժումը դեպի Հայաստան։ Ջեղյալ հայտարարելով դաշնակների Ալեքսանդրապոլի նվաստացուցիչ պայմանագիրը, սովետական կառավարությունը միաժամանակ կարողացավ հարկադրել քեմալական Թուրքիային, որպեսզի նա ետ քաշի իր զորքերն Ալեքսանդրապոլից։

Անդրկովկասում սովետական իշխանության ամրապնդման և սոցիալիզմի կառուցման գործում սկզբունքային նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին 1921 թվականի ապրիլի 14-ին գրած պատմական նամակը։ Նա Կովկասի կոմունիստների առաջնահերթ խնդիրներից մեկը համարում էր Կովկասի տարբեր ազգությունների բանվորների և գյուղացիների միջև ազգային խաղաղության ամրապնդումը։ Լենինը հույս էր հայտնում, որ Կովկասի սովետական հանրապետությունների «սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված



բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում»։

Հաջողությամբ կենսագործելով Լենինի ցուցումները, Անդրկովկասի կոմունիստներն իրոք ստեղծեցին ազգերի չտեսնված դաշնադրություն, որի կենդանի մարմնացումը հանդիսացավ Անդրկովկասյան Ֆեդերացիան։ Եղբայրական երեք ժողովուրդների ստեղծագործական խիզախումներով, ընդամենը երեք հնգամյակի ընթացքում, երկրում ստեղծվեց սոցիալիստական առաջավոր տնտեսություն, և ազգերի լենինյան համերաշխություն, բարգավաճեց կուլտուրան։

Անդրկովկասի հանրապետությունների ֆեդերացիան Լենինը համարում էր սկզբունքորեն բացարձակապես ճիշտ և անպայման իրագործելի։ ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն նոյեմբերի 29-ին հաստատեց Անդրֆեդերացիա ստեղծելու վերաբերյալ Վ. Ի. Լենինի առաջարկած բանաձևը։ Անդրկովկասի կոմունիստական կուսակցությունների հետագա ամբողջ գործունեությունը խարսխվեց այդ որոշման վրա և հսկայական ջանքեր գործադրվեցին Անդրկովկասի սովետական հանրապետությունների քաղաքական դաշինքն ամրապնդելու համար։ 1922 թվականին ՍՍՀՄ ստեղծումը հանդիսացավ լենինյան ազգային քաղաքականության պատմական հաղթանակը։

Այս ամենը բավական են եզրակացնելու, որ Վ. Ի. Լենինը չափազանց կարևոր նշանակություն էր տալիս Հայաստանում և ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանության ամրապնդման, երկրամասի ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբման, սովետական հանրապետությունների ժողովրդական տնտեսության վերականգնման և աշխատավոր մասսաների կենսամակարդակի բարձրացման հարցերին։

Անդրկովկասում սովետական իշխանության ամրապնդման գործում անգնահատելի դեր խաղաց Վ. Ի. Լենինը՝ Անդրկովկասի ժողովուրդների մեծ բարեկամն ու խորհրդատուն։

Հաստատ ընթանալով հանճարեղ Լենինի կանխագծած ուղիով, հայ ժողովուրդը սովետական իշխանության տարիներին կարճ ժամանակամիջոցում կարողացավ ձեռք բերել տնտեսական, հասարակական և կուլտուրական վիթխարի նվաճումներ։ Այսօր Սովետական Հայաստանը, հենված ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական համագործակցության վրա, թևակոխել է կոմունիստական հասարակության շինարարության փուլը։ Կես դարի ընթացքում լենինյան գաղափարներով տոգորված սոցիալիստական հայ ազգը բուռն ծաղկում է ապրում։ Վերածնված հայ ժողովուրդն իր դարակազմիկ հասումներով այսօր ընթանում է ՍՍՀՄ ժողովուրդների առաջավոր բնագծերում։ Պատմությունը հազարավոր փաստերով ապացուցեց, որ մեր ժողովրդի ճակատագիրը, հիրավի. օրգանապես կապված է ռուսական հեղափոխական շարժման՝ լենինյանների բանակի մեծ երթին։



Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԻ ՈՒՂԻՈՎ

Սովետական ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը պատրաստվում են մեծ հանդիսավորությամբ նշելու Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի անմահ գործի շարունակող, նոր տիպի մարքսիստական կուսակցության ու պրոլետարական պետության հիմնադիր, բոլոր աշխատավորների առաջնորդ ու ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակը։

Լենինը ծնվեց ու գործեց ժողովրդի համար։ Վիթխարի են մեր երկրի բանվոր դասակարգին, գյուղացիությանը, բոլոր աշխատավորներին նրա մատուցած ծառայությունները։ Նա էր, որ կուսակցությանը զինեց պայքարի գիտականորեն հիմնավորված ծրագրով, աշխատավորական դասակարգերին կազմակերպեց ոտքի ելնելու ցարական ինքնակալության և բուրժուա-կալվածատիրական կարգերի դեմ։ Հեղափոխության առաջնորդը գլխավորեց մասսաների զինված ապստամբությունը, ապահովեց Հոկտեմբերի հաղթանակը, ստեղծեց սովետական պետությունը, դարձավ բանվորա-գյուղացիական կառավարության առաջին նախագահը, ճնշված բոլոր ազգերին ու ազգություններին համախմբեց եղբայրական մեծ ընտանիքում՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունում։ Սովետական Միությունը լենինիզմի կենդանի մարմնավորումն է, սոցիալիզմի, խաղաղության, դեմոկրատիայի ու ազատության համար մղվող պայքարի վառ փարոսը, կոմունիզմ կառուցող առաջին խոշոր երկիրը։

* * *

Վլադիմիր Իլյիչ Լենինը քաղաքական պայքարի հործանուտը մտավ պատմական նոր պայմաններում, երբ կապիտալիզմը թևակոխել էր զարգացման իմպերիալիստական փուլը։ Հաշվի առնելով ստեղծված իրավիճակը, վերլուծելով բանվորական շարժման կուտակված փորձը, նա մշակեց պրոլետարական պայքարի նոր եղանակներ, բանվոր դասակարգին զինեց գաղափարական հզոր զենքով, հաղթանակի հասնելու հիմնավոր ծրագրով։

Բացահայտելով իմպերիալիզմի սոցիալ-տնտեսական բնույթը, հակասությունները, Լենինը ցույց տվեց, որ կապիտալիզմի մոնոպոլիստական փուլը նրա վերջին փուլն է, սոցիալիստական հեղափոխության նախօրյակը, որ իմպերիալիզմի դարաշրջանում ավելի ծավալվում, հաճախակի են դառնում հեղափոխական շարժումները։

«Հայտնագործելով կապիտալիզմի իմպերիալիստական փուլում նրա տնտեսական-քաղաքական անհամաչափ զարգացման օրենքը, Լենինը այն հետևությունն է անում, որ տարբեր երկրներ դեպի սոցիալիզմ կընթանան ոչ միաժամանակ և իմպերիալիզմի ճակատը կարող է ճեղքվել ոչ անպայմանորեն ամենազարգացած երկրում։ Այս հետևությունը մարքսիստական գիտության նոր խոսքն էր։ Դա արմատապես փոխեց նոր հասարակարգի հաղթանակի պայմանների մասին եղած ըմբռնումը, ռուսական և միջազգային պրոլետարիատի առջև բացեց պայքարի պարզ հեռանկար։ Արդեն այդ ժամանակ Լենինը կանխատեսեց հասարակական զարգացման պրոցեսների ընթացքը մեկ կամ մի քանի երկրներում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ, համաշխարհային ասպարեզում երկու սիստեմների պայքարի անխուսափելիությունը» (Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներից)։

Զինված լենինյան գաղափարներով, Ռուսաստանի բանվոր դասակարգը, բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, առաջինը իմպերիալիզմին վճռական հարված հասցրեց։ Դաշնակցած գյուղացիության հետ, նա փշրեց իմպերիալիզմի համաշխարհային սիստեմի առավել թույլ օղակը, բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից անցավ սոցիալիստական հեղափոխության, Ռուսաստանում վերջ տվեց բուրժուա-կալվածատիրական կարգերին և ստեղծեց բանվորա-գյուղացիական իշխանություն։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը, որը տեղի ունեցավ 1917 թվականի հոկտեմբերին, պատահական երևույթ չէր։ Այն նախապատրաստված էր վաղուց և իր պատմական զարգացմամբ օրինաչափ էր ու անհրաժեշտ տվյալ ժամանակաշրջանի համար։ XX դարի սկզբին լինելով համաշխարհային իմպերիալիզմի բախումների հանգուցակետը, Ռուսաստանում առավել սուր էին հակասությունները աշխատանքի և կապիտալի, զարգացող կապիտալիզմի և ֆեոդալական-կալվածատիրական զգալի վերապրուկների, արդյունաբերական բարձր զարգացած շրջանների և հետամնաց ծայրամասերի միջև։ Իր բիրտ քաղաքականությամբ դրանց առանձին սրություն էր տալիս ցարական ինքնակալությունը, որը տիրապետող դասակարգերի հետ միասին կեղեքում ու ճնշում էր բանվորներին ու գյուղացիներին, սերմանում ազգային թշնամություն։ Երկրի տիրակալներն այդ միջոցներով ամեն կերպ ձգտում էին կասեցնել պատմության առաջընթացը, ամեն կերպ պահպանել պատմականորեն իր դարն ապրած հասարակական հարաբերությունների սիստեմը։

Այդ բոլորը մահամերձի ջղաձգություններ էին։ Ժամանակը, դասակարգային ուժերի հարաբերությունը, օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանները հասունացրել էին սոցիալիստական հեղափոխությունը, շահագործողական կարգերի կործանումը ու պրոլետարիատի տիրապետության հաստատումը։ Հետևողականորեն կենսագործելով հեղափոխության մեջ բանվոր դասակարգի ղեկավար դերի, նրա դաշնակիցների, նախորդ հեղափոխությունների փորձի, զինված ապստամբության կազմակերպման վերաբերյալ Լենինի ցուցումները, բոլշևիկների կուսակցությունը, նրա ղեկավարությամբ, գլխավորեց մասսաների պայքարը և այն հասցրեց իր հաղթական վախճանին։ Կատարվեց այն, ինչ ասում էր Լենինը. հաղթանակեց Հոկտեմբերը, քաղաքական իշխանությունն անցավ բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի ձեռքը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը հանդիսացավ լենինիզմի մարմնավորումը, նրա ուժի ու ճշմարտացիության վառ դրսևորումը։ Հոկտեմբերը «աշխարհին տվեց սոցիալական այնպիսի արմատական պրոբլեմների լուծման օրինակ, ինչպիսիք են՝ շահագործողների իշխանության տապալումը և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, բուրժուա-կալվածատիրական մասնավոր սեփականությունը հանրային, սոցիալիստական սեփականությամբ փոխարինելը, ագրարային հարցի գյուղացիության օգտին արդարացի լուծումը, կախյալ ժողովուրդներին գաղութային և ազգային ճնշումից ազատագրելը, սոցիալիզմի կառուցման քաղաքական ու տնտեսական նախադրյալների ստեղծումը» (ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներից)։

Սակայն միայն դրանցով չի սահմանափակվում Հոկտեմբերյան հեղափոխության նշանակությունը։ Այն հանդիսացավ նաև համաշխարհային սոցիալիստական հեղափոխության առաջին հաղթական ակտը, արմատապես փոխեց խոշոր տերության քաղաքական և սոցիալ-տնտեսական կերպարանքը, միջազգային ազատագրական շարժումը հասցրեց նոր, ավելի բարձր մակարդակի, «...ամբողջ աշխարհին մատնանշեց սոցիալիզմի ուղիները և բուրժուազիային ցույց տվեց, որ մոտենում է նրա տիրապետության վերջը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 37)։

Լենինիզմի դրոշով հաղթանակած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությամբ համաշխարհային պատմության նոր գլուխ սկսվեց։ Այն աշխարհի ժողովուրդներին ցույց տվեց, որ մեկընդմիշտ կարելի է վերջ տալ իմպերիալիստական պատերազմներին, մարդու կողմից մարդու շահագործմանը, անարդարությանը, թույլ ազգերի կեղեքմանն ու ճնշմանը։

Հոկտեմբերի փորձը լայնորեն տարածվեց և արտասահմանյան աշխատավորների հեղափոխական շարժումների նոր վերելք հարուցեց Ֆինլանդիայում, Հունգարիայում, Բավարիայում և Սլովակիայում աշխատավորներն իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։ Թեպետ դա կարճ տևեց, բայց վառ կերպով դրսևորեց Ռուսաստանում հաղթանակած սոցիալիստական հեղափոխության ազդեցությունը, նրա փորձի մեծ ուժը։ Ամբողջ Գերմանիան կանգնեց սոցիալիստական հեղափոխության նախադռանը, սակայն տեղի սոցիալ-դեմոկրատիայի օպորտունիստական ղեկավարությունը բացահայտ կերպով դավաճանեց բանվոր դասակարգին, օգնեց բուրժուազիային՝ իշխանությունը զավթելու։ Այդ նույն ժամանակում, 1918—1920 թվականներին, բարձրացավ նաև ազգային-ազատագրական շարժման ալիքը Չինաստանում, Հնդկաստանում, Պարսկաստանում, Թուրքիայում, Լատինական Ամերիկայի երկրներում, Հյուսիսային Աֆրիկայում։

Հոկտեմբերը ցնցեց ողջ աշխարհը։ Նրա փորձով ու ազդեցությամբ տիրող կարգերի դեմ պայքարի ելած աշխատավորական մասսաները վերջնականապես դարձան «համաշխարհային քաղաքականության և իմպերիալիզմը հեղափոխականորեն կործանող ակտիվ գործոն» (В. И. Ленин. ПСС, т. 44, стр. 5)։ Ծավալվող դասակարգային պայքարի նոր պայմաններում Լենինը կանխատեսում էր, որ սոցիալիստական հեղափոխությունների շնորհիվ համաշխարհային կապիտալիզմի սիստեմից հետագայում կանջատվեն նոր երկրներ, և պրոլետարիատի դիկտատուրան կլինի բոլոր ժողովուրդներին դեպի կոմունիզմ տանող գլխավոր ուղին։

Կյանքը, պատմության զարգացման ողջ ընթացքը հաստատեցին Լենինի՝ մեծ մտածողի ու տեսաբանի կանխատեսության ճշտությունը։ Երկրորդ



համաշխարհային իմպերիալիստական պատերազմից հետո շահագործողների լուծը թոթափեցին և սոցիալիզմի ուղին ընտրեցին Արևելյան Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներ։ Սոցիալիզմի ուղին ընտրեց նաև Կուբան՝ Լատինական Ամերիկայի առաջին սոցիալիստական պետությունը։

Այս ամենը հասցրին այն բանին, որ իմպերիալիզմն ընդմիշտ կորցրեց համաշխարհային հարցերի լուծման մենաշնորհը, որ նա ուներ մինչև 1917 թվականի հոկտեմբերը, և դադարեց համաշխարհային ասպարեզում տիրապետող ուժ լինելուց։ Այժմ միջազգային զարգացման վճռական գործոնը դարձել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Իմպերիալիզմն արդեն անզոր է վերականգնելու իր կորցրած դիրքերը, ետ շրջելու արդի աշխարհի զարգացումը։

Աշխարհի մեկ երրորդ մասում հաղթանակած սոցիալիզմը շարունակում է իր պատմական երթը, օգնում միջազգային բանվորական ու ազգային-ազատագրական շարժումների ծավալմանը, գործնականում մարմնավորում լենինիզմը, նրա՝ աշխարհը վերափոխող ու նոր կյանք կառուցող գաղափարների կենսագործումը։

* * *

Հոկտեմբերի հաղթանակից հետո սովետական հանրապետություններում առաջին պլանի վրա դրվեցին ժողովրդական տնտեսության վերականգնումն ու զարգացումը։ Կոմունիստական կուսակցությունը խնդիր դրեց ամեն կերպ զարգացնել երկրի արտադրաուժերը, նյութատեխնիկական բազա ստեղծել սոցիալիզմի համար, որը պատմության մեջ առաջին անգամ ապահովում է մարդկանց անշահախնդիր վերաբերմունքը արտադրամիջոցների նկատմամբ, վերացնում է մարդու կողմից մարդու շահագործումը, սահմանում է նյութական և հոգևոր բարիքների բաշխման նոր սիստեմ և կապիտալիզմի համեմատությամբ իրենից ներկայացնում է աշխատանքի հասարակական կազմակերպման ավելի բարձր տիպ։

Սոցիալիզմի կառուցումը չափազանց բարդ ու դժվար էր Ռուսաստանի պայմաններում. նյութա-տեխնիկական բազայի թուլությունը, կուլտուրայի համեմատաբար ցածր մակարդակը խոչընդոտում էին լենինյանների ծրագրի կենսագործմանը։ Չնայած նրան, որ Հոկտեմբերի հաղթանակով երկրում ստեղծվեց ու ամրապնդվեց առաջավոր քաղաքական կարգ, հաստատվեց արտադրության հիմնական միջոցների հանրային սեփականություն, բայց դրանց հետ միասին «գերակշռում էր մանրապրանքային գյուղատնտեսությունը, իրեն զգալ էր տալիս նաև տեխնիկա-տնտեսական հետամնացությունը, որը խորանում էր առաջին համաշխարհային ու քաղաքացիական պատերազմների, օտարերկրյա ինտերվենցիայի ավերիչ հետևանքներով» (ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներից)։ Գործը բարդացնում էին նաև կապիտալիստական շրջապատումը, ներքին դասակարգային թշնամիների բացահայտ պայքարը, տրոցկիստական օպոզիցիայի, «ձախ կոմունիստների» պառակտիչ գործունեությունը։

Կոմունիստական կուսակցությունը բոլոր ուժերը մոբիլիզացրեց միջազգային իմպերիալիզմի հարձակումը ետ մղելու, ներքին դասակարգային թշնամիների դիմադրությունը կոտրելու և երկրում եղած տնտեսական դժվարությունները հաղթահարելու համար։ ՌԿ(բ)Կ միաժամանակ սկզբունքային լուրջ պայքար ծավալեց հակակուսակցական հոսանքների ու խմբավորումների դեմ։ Հաշվի չառնելով ռեալ պայմանները և եղած հնարավորությունները, «ձախ

կոմունիստները» պահանջում էին անհապաղ անցնել բաշխման կոմունիստական սկզբունքների կիրառման՝ առանց դրա համար անհրաժեշտ տնտեսական բազայի ստեղծման։ Դա չմտածված, անհեռատես պահանջ էր, որը վճռականապես մերժվեց կուսակցության կողմից։ Կուսակցությունը վճռական հակահարված տվեց նաև տրոցկիստներին, որոնք հանդես էին գալիս իրենց կապիտուլյանտական հայացքներով և հայտարարում, որ անհուսալի է մտածել, թե իբր Ռուսաստանը կարող է դիմանալ պահպանողական Եվրոպայի դեմ հանդիման, թե միայն Արևմուտքի երկրներում սոցիալիստական հեղափոխությունից հետո Սովետական Միությունում կարող է հաղթանակել սոցիալիզմը։

Մինչև վերջ մերկացնելով նման հայացքների վնասակարությունը, Վ. Ի. Լենինն ապացուցեց, որ մեր երկիրն ունի այն ամենը, ինչ անհրաժեշտ է սոցիալիստական հասարակարգի կառուցման համար։ Նա խորապես վստահ էր նորաստեղծ բանվորագյուղացիական իշխանությանը, նրա ղեկավար ուժին՝ կոմունիստական կուսակցությանը, հեղափոխական մասսաների ստեղծագործական անսպառ եռանդին, որոնց վրա հենված և նրանց շնորհիվ հնարավոր եղավ մեր երկրում հաստատակամորեն առաջ տանելու սոցիալիզմի կառուցումը։ «Սովետական իշխանության հերթական խնդիրները», «Էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում», «Կոոպերացիայի մասին» ու այլ աշխատություններում Լենինը մշակեց նոր հասարակարգի ստեղծման հիմնական հարցերը և կուսակցությանը զինեց սոցիալիզմի կառուցման հիմնավորված պլանով։

Ձեռնամուխ լինելով այդ պլանի կենսագործմանը, սովետական ժողովուրդը, մի կողմից, լուծում էր սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը, մյուս կողմից, իր այդ օրինակով նպաստում համաշխարհային պրոլետարական հեղափոխության ծավալմանը։ Ահա թե ինչու Լենինն ասում էր, որ համաշխարհային հեղափոխության վրա սոցիալիզմի ներգործման գլխավոր լծակը նրա տնտեսական քաղաքականությունն է, կապիտալիզմի արտադրաուժերին գերազանցող նոր հասարակարգի տեխնիկա-տնտեսական հիմքի ստեղծումը։ «Կլուծենք մենք այդ խնդիրը,— նշում էր նա,— և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես» (ПСС, т. 43, стр. 341)։

Ուղեցույց ունենալով Լենինի ցուցումները, կոմունիստական կուսակցությունը բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացրեց և կազմակերպված պայքարի հանեց՝ տնտեսական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու, երկրի էկոնոմիկան համակողմանիորեն բարձրացնելու։ Դրանով էր պայմանավորված հիմնականը՝ սոցիալիզմի նյութական բազայի ապահովումը։ Իսկ սոցիալիզմի նյութական բազան,— ուսուցանում էր Լենինը,— կարող է լինել միայն բարձր զարգացած ինդուստրիալ արտադրությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում՝ հիմնված գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների վրա։ Այն բանի համեմատ, գրել է նա, թե ինչպես է լուծվում արտադրության հիմնական միջոցների հանրայնացման հարցը, «...անհրաժեշտաբար առաջին պլանն է մղվում մի արմատական խնդիր՝ ստեղծել ավելի բարձր հասարակական կացութաձև, քան կապիտալիզմն է, այսինքն՝ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իսկ դրա կապակցությամբ (և դրա համար) նրա բարձրագույն կազմակերպումը» (Երկեր, հ. 27, էջ 306)։

Երկրի ինդուստրացման և դրա հիման վրա աշխատանքի արտադրողա-



կանության բարձրացման համար պահանջվում էր ուժերի մաքսիմալ լարում, եղած ռեսուրսների լրիվ օգտագործում։ Դրա անհրաժեշտությունը թելադրվում էր նրանով, որ սովետական պետությունը ցարիզմից ժառանգել էր հետամնաց ու քայքայված արդյունաբերություն, որի վերականգնումն ու զարգացումը պետք է կատարվեր զոհողությունների գնով— միայն սեփական միջոցներով, այն էլ ամենակարճ ժամանակամիջոցում։ Այդպես էին պահանջում սոցիալիզմի կառուցման ու երկրի պաշտպանության շահերը։

Այստեղ ևս փայլեց մեծ Լենինի հանճարը, համապետական վիթխարի խնդիրների լուծման տիտանական կարողությունը։ Նրա նախաձեռնությամբ ու անմիջական ղեկավարությամբ մշակվեց Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պետական պլանը (ԳՈԷԼՌՈ), որով նախատեսված էր էլեկտրական էներգիայի, բնական հարստությունների կոմպլեքսային օգտագործման, առաջավոր տեխնիկայի, տեխնոլոգիայի արմատավորման և արտադրության ռացիոնալ կազմակերպման միջոցով ստեղծել արտադրողական նոր ուժեր։

Լենինյան այդ պլանի կենսագործումը դարձավ կուսակցության ու ժողովրդի գլխավոր խնդիրը։ Սովետական ժողովուրդը պատմականորեն կարճ ժամանակամիջոցում , առաջին հնգամյակների տարիներին կենսագործեց երկրի ինդուստրացման պլանը։ ՍՍՀՄ-ը դարձավ արդյունաբերության տեսակետից առավել զարգացած տերություն։

Արդյունաբերական արտադրության ծավալով դեռևս նախապատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Միությունը աշխարհում հինգերորդ տեղից հասավ երկրորդ տեղը։ Խաղաղ աշխատանքի տարիներին արդյունաբերական արտադրանքի տարեկան աճը կազմեց 14, իսկ սովետական ամբողջ ժամանակաշրջանում՝ 9,9 տոկոս, այդ նույն ժամանակաշրջանում ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի 2—4 տոկոսի դիմաց։ Կամ 1968 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ արդյունաբերության համախառն արտադրանքը աճել է 79 անգամ։ 1960 թվականին ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմում էր ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի 55, իսկ 1968 թվականին՝ 70 տոկոսը։ Միայն մեկ տարում, 1969 թվականին ՍՍՀՄ-ում արտադրվել է 689 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 328 միլիոն տոննա նավթ, 81,6 միլիոն տոննա չուգուն, 110 միլիոն տոննա պողպատ, 87,5 միլիոն տոննա գլանվածք, 183 միլիարդ խորանարդ մետր գազ, 608 միլիոն տոննա ածուխ և այլն։

Արդյունաբերության և գիտության արագաթափ զարգացումը ՍՍՀՄ-ին հնարավորություն տվին տեխնիկապես վերազինելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, բանակն ապահովելու ժամանակակից զենքի տեսակներով, խաղաղ նպատակներով օգտագործելու ատոմային էներգիան, տիեզերք արձակելու արհեստական արբանյակներ ու տիեզերանավեր։

Երկրի ինդուստրացման պլանի հետ միասին, Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց նաև մանրապրանքային միլիոնավոր մասսաներին սոցիալիստական ռելսերի վրա փոխադրելու անհրաժեշտությունն ու եղանակները։ Նա ասում էր, որ «մանր տնտեսությամբ կարիքից դուրս չես գա» (ПСС, т. 39, стр. 314)։

Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա կուսակցությունն իրագործեց գյուղացիական անհատական տնտեսությունների կոլեկտիվացումը։ Դա սոցիալիստական հեղափոխության ամենակարևոր խնդիրներից էր, որի լուծումը

կապված էր դարավոր սովորույթի հաղթահարման և շահագործող մեծաթիվ դասակարգի՝ կուլակության լիկվիդացման հետ։

Կոլեկտիվացման ու սովխոզների լայն զարգացման շնորհիվ գյուղում մանրապրանքային և կապիտալիստական կացութաձևերը իրենց տեղը վերջնականապես զիջեցին սոցիալիստական կացութաձևին։ Հանրային սեփականությունն իր երկու ձևերով տնտեսական հարաբերությունների հիմք դարձավ նաև գյուղատնտեսության մեջ։

Այժմ Սովետական Միությունն ունի մեքենայացված ու զարգացած խոշոր գյուղատնտեսական արտադրություն, որը բնակչությանն ապահովում է պարենով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով։ 1968 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ-ում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացել է 2,9 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 4,7 անգամ։

Մշակելով սոցիալիզմի կառուցման պլանը, Վ. Ի. Լենինը ելնում էր նրանից, որ այն վերջ կտա աղքատությանն ու հետամնացությանը, կապահովի աշխատավոր ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը, նրան կպարգևի բարեկեցիկ կյանք։ Դա հարցերի հարցն էր, սոցիալիզմի հիմնական նպատակը, որով դրսևորվում է նրա գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ։

Սովետական պետությունն անշեղորեն վարում է ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման լենինյան գլխավոր կուրսը։ Այդ կուրսի իրագործման համար Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն արել ու անում է ամեն ինչ։ Ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը, նրա հարաճուն պահանջմունքների բավարարումը եղել և մնում է կուսակցության գործունեության գլխավոր նպատակը։

Մեծ ու նշանակալից են սովետական ժողովրդի բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ ձեռք բերված հաջողությունները։ Այդ են ցույց տալիս փաստերը, իրական կյանքը։

Ներկայումս ՍՍՀՄ արդյունաբերության և շինարարության բանվորների ռեալ եկամուտները, հաշվի առնելով գործազրկության վերացումը և աշխատանքային օրվա կրճատումը, նկատի ունենալով մեկ աշխատողին ընկնող միջին եկամուտները, 1913 թվականի համեմատությամբ, մեծացել են ավելի քան 7 անգամ։ Այդ նույն ժամանակաշրջանում գյուղացու ռեալ եկամուտները ավելացել են գրեթե 11 անգամ։

Չկա տարի, որ մեզ մոտ աշխատավորների ռեալ եկամուտները չաճեն։ Բավական է ասել, որ բնակչության մեկ շնչի հաշվով աշխատավորների ռեալ եկամուտները ՍՍՀՄ-ում 1969 թվականին աճել են 5 տոկոսով (այդ թվում՝ Հայկական ՍՍՀ-ում՝ 8), իսկ հնգամյակի անցած չորս տարում՝ 26 տոկոսով (այդ թվում՝ Հայկական ՍՍՀ-ում՝ 29)։

Աշխատավարձից բացի, ՍՍՀՄ բնակչությունն զգալի վճարումներ ու արտոնություններ է ստանում նաև սպառման հանրային ֆոնդերից։ Դրանք անցած տնտեսական տարում կազմել են 59 միլիարդ ռուբլի և նախորդ տարվա համեմատությամբ ավելացել են 7 տոկոսով։

ՍՍՀՄ աշխատավորների կենսամակարդակի բարձրացման մասին են խոսում նաև ապրանքաշրջանառության աճը, մարդկանց կյանքի միջին տևողության ավելացումը, բնակարանային, կենցաղային պայմանների բարելավումը և այլն։

Ի տարբերություն կապիտալիստական երկրների, սովետական երկրում բնակչության հիմնական պահանջները բավարարվում են պետության հաշվին և դա հասկանալի է։ Չէ որ այդ պետությունը համաժողովրդական է և իր տրամադրության տակ ունեցած բոլոր միջոցներով ծառայում է միայն ժողովրդին։

Լենինը հատուկ նշանակություն էր տալիս նաև աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Կուլտուրայի բոլոր նվաճումները աշխատավորների շահերին ի սպաս դնելը համարելով սոցիալիզմի խնդիրը, նա մշակեց կուլտուրական հեղափոխության հոյակապ ծրագիրը, որն իրագործվեց փայլուն կերպով։ Այժմ մեր երկրի ազգաբնակչության ավելի քան մեկ երրորդն ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն. ուսման տարբեր ձևերի մեջ ընդգրկված են 78 միլիոն մարդ։ Ձևավորված է նոր, սոցիալիստական մտավորականություն։ 1969 թվականի վերջերին գիտական աշխատողների թիվն անցնում էր 870 հազարից։

Երկրում անցում է կատարվում դեպի ընդհանուր միջնակարգ կրթությունը, անընդհատ բարձրանում են բոլոր կատեգորիաների աշխատողների որակավորումն ու կրթական մակարդակը։

Եղբայրական սերտ միասնությամբ, ստեղծագործական աշխատանքի եռանդով լեցուն, ՍՍՀՄ աշխատավորներն ընթանում են հաղթանակից-հաղթանակ։ Նրանց առաջընթացի ճանապարհը լուսավորված է Վլադիմիր Իլյիչ Լենինի՝ սիրելի առաջնորդի և ուսուցչի գաղափարներով, որոնք «մարմնավորվում են կոմունիստների գործունեության մեջ, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների պայքարում, սոցիալիզմի և կոմունիզմի հաղթական զարգացման գործում, մարդկության անհաղթելի սոցիալական առաջադիմության մեջ» (Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներից)։









Ս. Տ. ԱԼԻԽԱՆՅԱՆ

# ԼԵՆԻՆԸ ԿԱԴՐԵՐԻ ՄԱՍԻՆ

*Սոցիալիզմի կառուցումը հասարակական կյանքի համակողմանի վերափոխում է, որի ընթացքում մեծանում է պետական ու հասարակական գործիչների, տնտեսավարների դերը։*

*Սովետական իշխանության թշնամիները քիչ ջանքեր չեն գործադրել տարածելու այն մտայնությունը թե, իբր, բոլշևիկները չեն կարող երկիր կառավարել, քանի որ պրոլետարիատը ընդունակ չէ պետություն ղեկավարելու։*

*Լենինը անողոքաբար մերկացնում էր բուրժուական վարձու գրչակների հերյուրանքները և իր համոզիչ խոսքով բանվորներին ու գյուղացիներին հավատ ներշնչում իրենց ստեղծագործական ուժերի նկատմամբ, նրանց ուսուցանում երկրի կառավարման բարդ արվեստը։ Նա ասում էր. «Ընկե՛ր-աշխատավորներ։ Հիշեցեք, որ այժմ դ ո ւ ք ի ն ք ն ե ր դ եք կառավարում պետությունը։ Ոչ ոք ձեզ չի օգնի, եթե դուք ինքներդ չմիանաք և պետության բ ո լ ո ր գ ո ր ծ ե ր ը ձ ե ր ձեռքը չվերցնեք։ Ձ ե ր սովետներն այսուհետև պետական իշխանության օրգաններ են, լիազոր, վճռող օրգաններ» (Երկեր, հ. 26, էջ 359—360)։*

*Լենինը նշում էր, որ բանվոր դասակարգի և գյուղացիության մեջ տաղանդավոր կազմակերպիչներ շատ կան, նրանք եղել են և կապիտալիզմի օրոք, սակայն ցարիզմն ու կապիտալիզմը ժողովրդական տաղանդներին հալածել են, խեղդել են, սպանել։ Այժմ անհրաժեշտ է ուսումնասիրել, փնտրել, գտնել և գործի դնել նրանց։ Իլյիչը կուսակցության, սովետների և արհմիությունների համագումարներում, ժողովներում, ժողկոմսովետի նիստերում, զրույցի պահին հանգամանորեն ուսումնասիրում էր մարդկանց, իրեն անծանոթ հռետորների և զրուցակիցների մասին տեղեկություններ հավաքում, տվյալներ գրի առնում, հանձնարարություններ տալիս, քաջալերում՝ հիշատակելով նրանց հաջող ելույթներն ու խելացի առաջարկները։*

*Լենինը ժողկոմսովետի գործերի կառավարչին պարտադրում էր կազմել առավել աչքի ընկնող բանվորների և գյուղացիների անվանական քարտեր, գրել նրանց բնութագրերը։ Նա իր տեղակալներից, ժողկոմներից և մյուս ղեկավարներից պահանջում էր անձամբ զբաղվել կադրերի, նրանց ընտրության*



*հարցով, «Ուսումնասիրել մարդկանց, որոնել ձեռնհաս աշխատողների։ Այժմ էականն այդ է, առանց դրա բոլոր հրամաններն ու որոշումները կեղտոտ թղթեր են» (Երկեր, հ. 35, էջ 582)։*

*1921 թվականի օգոստոսի 5-ին Լենինը խնդրում է հակիրճ տեղեկություններ հաղորդել մի աշխատողի մասին։ Նա ցանկանում էր իմանալ, թե այդ ընկերը արդյոք բարեխի՞ղճ է, գործիմա՞ց է, ունի՞ քաղաքական, վարչական ունակություններ (տե՛ս* Ленинский сборник, т. XXIII, стр. 164)։

*Լենինը բացառիկ նշանակություն էր տալիս կադրերի ճիշտ ընտրությանը։ Նա ասում էր, որ հարկավոր է գործն այնպիսի հիմքերի վրա դնել, որպեսզի աշխատանքում կոմունիստները ճիշտ տեղաբաշխվեն, ապարատում գրավեն բացառապես այնպիսի պաշտոններ, որոնք նրանց թույլ տան իրոք ստուգելու աշխատանքի ընթացքը, պայքարելու բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ։ Նա կուսակցական, սովետական ու տնտեսական բոլոր ղեկավարներից պահանջում էր կադրերը տեղաբաշխելիս նկատի ունենալ գործի շահը, աշխատանքի բնույթը։ Որպեսզի յուրաքանչյուր աշխատող կարողանա իր բոլոր կարողությունները ու ունակություններն ի սպաս դնել հօգուտ գործի, անհրաժեշտ է գործի դնելուց առաջ հաշվի առնել նրա հակումները, գիտելիքները, առանձնահատկությունները։ Վլադիմիր Իլյիչը նկատել է. «...կառավարելու համար հարկավոր է ձեռնհաս լինել, հարկավոր է լիովին և մանրամասնորեն գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան՝ նրա ժամանակակից բարձրությամբ, հարկավոր է ունենալ գիտական որոշ կրթություն։ Ահա այն պայմանները, որոնց մենք պետք է բավարարենք, ինչ էլ որ լինի» (Երկեր, հ. 30, էջ 547)։*

*Կադրերի ընտրության գործում, նա առանց աճապարելու պարզում էր իրեն հետաքրքրող և կասկածելի բոլոր հարցերը, նախազգուշացումներ անում կադրերին առաջադրող ղեկավար անձանց։ 1920 թ. գարնանը Լենինին ներկայացել էին արտաքին առևտրի մի խումբ աշխատողներ. նրանցից մեկը խիստ կասկածելի թվաց Լենինին, և նա արտաքին առևտրի ժողկոմ Լ. Բ. Կրասինին գրեց հետևյալ նամակը. «Ընկեր Կրասին, խիստ ուշադրություն դարձրեք։ Արդյո՞ք Կլիշկոն շաղակրատ չէ։ Դիվանագետը պետք է կարողանա լռել և խոսել այնպես, որ ոչինչ ասած չլինի։ Կարո՞ղ է արդյոք Կլիշկոն։ Հասկանում է արդյոք նա այդ բանը»։*

*Նա խիստ ափսոսանքով է արտահայտվել մի աշխատողի մասին, որը նշանակված է եղել իր համար անհամապատասխան աշխատանքի։ Լավ տղա է, լավ է որպես բանաստեղծ, ժուռնալիստ, դասախոս, բայց մենք՝ հիմարներս, նրան օրենսդրական աշխատանք ենք հանձնարարում ու դրանով փչացնում, կործանում ենք և՛ նրան, և՛ գործը։*

*Լենինը զայրույթով էր համակվում այն ղեկավար գործիչների նկատմամբ, որոնք կադրերի ընտրության հարցում շեղվում էին կուսակցության ցուցումներից, աշխատանքի էին ընդունում, առաջ մղում անարժան, անդեմ, բայց իրենց անձնապես նվիրված մարդկանց։ Աշխատանքում իրենց չարդարացնողներին, չնայած նրանց ցույց տրված ամեն տեսակ օգնության, ասում էր Իլյիչը, պետք է անմիջապես տեղափոխել համապատասխան այլ աշխատանքի։ Բյուրոկրատացած և մասսաների վստահությունը չարաշահած մարդկանց չպահել միջանկյալ օղակներում և թույլ չտալ, որ նրանք օգտվեն որևէ արտոնությունից։ Եթե մեկը պետական մի պոստում իրեն չի արդարացնում, այլևս կարիք չկա նրան տալ ուրիշ, համանման պոստ։*

Կուսակցությունը միշտ էլ դատապարտել ու դատապարտում է կադրերի ընտրության և տեղաբաշխման լենինյան սկզբունքներից ամեն մի շեղում։ Այդ հարցը պատշաճ արտացոլում է գտել ՍՄԿԿ XXIII համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ և նրա ընդունած որոշումներում։

Կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով Լենինի ուսմունքով, կռել ու կոփել է կոմունիզմի մեծ գործին նվիրված բազմամիլիոն կադրեր, որոնց բոլշևիկյան հատկությունները թրծվել ու կատարելագործվել են դասակարգային պայքարում, Հոկտեմբերյան հեղափոխության և նրա նվաճումների պաշտպանության համար մղված մարտերում, սոցիալիստական շինարարության դժվարությունների հաղթահարման տարիներին, Հայրենական պատերազմի փորձություններում և այժմ՝ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում։

Սովետական պետական ապարատի հետագա բարելավումն ու կատարելագործումը, ամենից առաջ, կախված է կադրերի գործնական ու քաղաքական հատկություններից։ Լենինի երկերում, մասնավորապես սովետական ու կուսակցական շինարարության վերաբերյալ աշխատություններում, կուսակցական ու պետական ապարատի աշխատողների բոլշևիկյան հատկությունների մասին կան բազմաթիվ դրույթներ ու ցուցումներ։

Լենինը բարձր էր գնահատում կադրերի գաղափարայնությունը։ Գաղափարական գործիչը պրակտիկ աշխատանքում հանդես է բերում դժվարությունները հաղթահարելու անխորտակ կամք, անսպառ եռանդ։ Գաղափարայնության աղբյուրը մարքսիզմ-լենինիզմն է, որը մեր կադրերին զինում է քաղաքական իմաստությամբ, նրանց գործունեությունը դարձնում մտածված, գիտակցված, նպատակասլաց ու բեղմնավոր։ Գաղափարական գործիչն իր գործունեության մեջ ղեկավարվում է մարքս-լենինյան գիտությամբ, կոմունիստական կուսակցության քաղաքականությամբ։

Լենինը կադրերից պահանջում էր բոլոր հարցերում, ամենից առաջ, լինել սկզբունքային. նա գտնում էր, որ սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է։ Բոլշևիկյան սկզբունքայնությունը ենթադրում է անհաշտ վերաբերմունք կուսակցության գաղափարախոսությունից և քաղաքականությունից բոլոր տիպի շեղումների նկատմամբ։ Միայն մարքսիզմ-լենինիզմով զինված աշխատողը կարող է լինել մարտնչող, սկզբունքային։ Սկզբունքային մոտեցումը քաղաքական մոտեցում է, իսկ քաղաքականությունը, ուսուցանում է Լենինը, սկսվում է այնտեղ, որտեղ գործը վերաբերում է ժողովրդի, կուսակցության, պետության շահերին։ Դեռևս կոմունիստական կուսակցության հիմնադրման շրջանում նա զգուշացնում էր, որ յուրաքանչյուր հեղափոխականի համար ամեն ինչից վեր են հեղափոխության, միջազգային պրոլետարիատի շահերը։ Իլյիչը գտնում էր, որ բոլշևիկների համար ընկերականությունը, առաջին հերթին բխում է ռուսական և համաշխարհային սոցիալ-դեմոկրատիայի հանդեպ ունեցած պարտքից։ Աշխատողի բոլշևիկյան սկզբունքայնությունը երևան է գալիս հանձնարարված աշխատանքի նկատմամբ ունեցած նրա վերաբերմունքից։ Լինել սկզբունքային, միաժամանակ, նշանակում է լինել համարձակ և արիաբար ասել յուրաքանչյուրի սխալը, թերությունը։ Աշխատողի սկզբունքայնությունն ստուգվում է նաև նրա ինքնաքննադատական վերաբերմունքով։ Այնտեղ, որտեղ անտեսվում է պետական շահը, որտեղ գերադասվում են անձնական, ընկերական, տեղայնական, գե-



րատեսչական շահերը, այդտեղ սկզբունքայնությունն իր տեղը զիջում է խմբակային հաշվենկատ գործարքին։

Լենինյան տիպի կուսակցական ու պետական գործչի առանձնահատուկ գծերից են՝ ճշմարտացիությունն ու ազնվությունը։ Կուսակցությունը բոլոր կադրերին ուսուցանում է լինել ճշմարտացի և ազնիվ, յուրացնել կուսակցական կյանքի լենինյան նորմերը։ Մարդկանց մասին դատել ոչ թե նրանց խոսքերի, այլ նրանց աշխատանքի արդյունքների հիման վրա։ Ո՞վ չգիտե, գրել է Լենինը, որ քաղաքականության մեջ հաշվի են առնվում ոչ թե տրամադրությունները, այլ գործերը, ոչ թե կարծեցյալը, այլ իրականը,— սա է բոլշևիկյան կանոնը։ Երբ բոլշևիկի խոսքը գործին չի բռնում, ավելացնում էր Իլյիչը, դա շատ վատ է, դա երկերեսանություն է։ Յուրաքանչյուր կոմունիստին, հատկապես պատասխանատու աշխատող կոմունիստին ներկայացվող այս պահանջը թելադրված է կուսակցության կենսական շահերից։

Վ. Ի. Լենինը պահանջում էր ամեն մի գործում հանդես բերել անհրաժեշտ ձեռներեցություն։ Նախաձեռնող աշխատողը էությամբ անհանգիստ է, նա երբեք չի բավարարվում աշխատանքային օրվա արդյունքներով, ձգտում է ավելի լավ աշխատել, ստեղծագործել։ Նախաձեռնողները դժվարությունների առջև չեն նահանջում, ընդհակառակը, ստեղծված անցանկալի վիճակը հնարամիտ է դարձնում նրանց, նրանք պատրաստ են հաղթահարել ամեն մի խոչընդոտ։ Միայն հետևողական, կազմակերպչական, փութաջան աշխատանքի շնորհիվ է հնարավոր իրականացնել նախաձեռնող ու ձեռներեց մարդկանց նորարարական առաջարկները։

Հաջողություններով տարվելը, գոռոզությունը, պարծենկոտությունը, տեղում դոփելը, հետևաբար՝ զինաթափվելը, ինքնահանգստացման մատնվելը, ինքնափառաբանմամբ զբաղվելը Լենինը չարիք էր համարում, որից հեռու պետք է լինի կոմունիստը։ Նա ուսուցանում էր, «հաղթանակով չտարվել և չպարծենալ», ամրապնդել ձեռք բերածը, խուսափել սեփական ուժերը գերագնահատելուց։

Վլադիմիր Իլյիչը բազմիցս նշել է, որ թերությունների անխնա խարազանումը անհրաժեշտ է ամեն մի կենդանի և գործուն կուսակցության։ Չկա ավելի վատ բան, քան ինքնաբավ օպտիմիզմը։

Թերությունների նկատմամբ անհանդուրժողականությունը, բնականաբար, ենթադրում է պահանջկոտություն աշխատանքում։ Ոչ ոք այնքան պահանջկոտ չի եղել աշխատանքում, որքան Լենինը։ Ղեկավարել, նշանակում է պահանջել։ Առանց զիջման, առանց տնավարության, «ընկերականության», առանց քաշվելու բոլորից աշխատանք պահանջել։ Կուսակցական ու պետական և, առհասարակ, ամեն մի ղեկավար աշխատողի պահանջկոտության ամեն մի թուլացում կարող է միայն վնասել գործին, խափանել հաջողությունը, կցել կուսակցական ու պետական կարգապահությունը, թևաթափել աշխատողներին, բթացնել նրանց պատասխանատվության զգացումը։

Լենինը ծաղրի, սպանիչ քննադատության է ենթարկել կարիերիստի, քծնողի, շողոքորթի տիպը։ Իլյիչը պահանջում էր կուսակցական և պետական ապարատում տեղ չտալ նրանց, ովքեր կուրացած են անձնական շահով, ովքեր հանուն կարիերայի պատրաստ են հրաժարվել պատվից ու ինքնասիրությունից։ Նա պահանջում էր կուսակցությունից վտարել «կուսակցությանը կպած» մորթապաշտներին։

Սովետական պետական ու հասարակական գործիչներին կուսակցությունն ու ժողովուրդը ներկայացնում են բարոյական բարձր պահանջներ։ Լինելով ժողովրդի կամքի արտահայտիչները, նրանք կոչված են բավարարելու սովետական մարդկանց կարիքներն ու պահանջմունքները։ Սոցիալիստական հասարակարգում պետական հասարակական գործիչը մարմնավորում է մարդկային բնավորության լավագույն գծերը, օրինակ ծառայում։ Այդ են վկայում փաստերը։

Սոցիալիստական հասարակարգի մարդը մեծ վստահություն է տածում հասարակական ու պետական գործիչների նկատմամբ, ըստ արժանվույն գնահատում նրանց հայրենանվեր գործունեությունը։

Հասարակական, պետական գործչի ամենամեծ նվաճումը հեղինակություն ձեռք բերելն է, որն արժեքավորվում է բարոյական չափանիշներով։ Լենինը հատուկ ընդգծում էր, որ ժողովրդի աչքում սովետական իշխանությունը ներկայացվում է կուսակցական ու պետական պաշտոնատար անձանցով, նրանց կերպարի ու գործունեության միջոցով։ Առանց հեղինակության ղեկավարն անկարող է ներգործել մասսաների վրա, համոզել, ոգևորել նրանց։

Գոյություն ունի որոշակի օրինաչափություն. որքան լայն ու խոր է ժողովրդական մասսաների շարժումը, որքան շատ մարդիկ են ընդգրկվում հասարակական կյանքում, որքան ակտիվանում է մասսաների գործունեությունը, այնքան ավելի մեծանում է փորձված ղեկավարների, խելոք ու տաղանդավոր կազմակերպիչների, իդեոլոգիայի բնագավառի աշխատողների, կուսակցական, սովետական, տնտեսական բնագավառների կադրերի պահանջը։ Ժամանակակից պայմաններում, երբ տնտեսական ու կուլտուրական շինարարությունն ընդունել է մեծ թափ ու ծավալ, կադրերին ներկայացվում են նոր, ավելի բարձր պահանջներ։

Պետական, կուսակցական, տնտեսական, կուլտուրական և մյուս բնագավառների աշխատողների կյանքն ու գործունեությունը ժողովրդի աչքի առջև են, ժողովրդի մշտական հսկողության տակ։ Հասարակական հսկողությունը, կարծիքը, մեծ ուժ են, դրանք կոմունիստական ապրելակերպի նորմերից են, որոնք կոմունիստական հասարակարգի կառուցման ներկա փուլում որոշիչ դեր են խաղում։

ՍՄԿԿ XXIII համագումարը գտավ, «...որ կոմունիստական շինարարության խնդիրների հարաճուն մասշտաբներն ու բարդությունն ավելի մեծ պահանջներ են ներկայացնում կադրերի ընտրության, առաջքաշման ու դաստիարակման նկատմամբ։ Ղեկավար պոստերում պետք է առաջ քաշվեն այն աշխատողները, որոնք նվիրված են կոմունիզմի գաղափարներին, լավ գիտեն իրենց գործը, մշտապես կապված են մասսաների հետ, կարողանում են նրանց կազմակերպել առաջադրված խնդիրները կատարելու համար» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, «Հայաստան» հրատարակչություն, Երևան, 1967 թ., էջ 311)։



Ն. Մ. ԹՈՐՈՄԱՆՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԱՏԱԽԱԶՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Վ. Ի. Լենինի անվան հետ են կապված մեր դարի կոմունիստական շարժման տեսության ու պրակտիկայի, աշխարհի կեղեքվող ժողովուրդների ազատագրական պայքարի, Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և սովետական պետության ստեղծման մեծագույն ու դարակազմիկ պրոբլեմները։ Հեղափոխական այդ մեծ գործչի հետ են առնչվում նաև նոր հասարակարգի կառուցման սովետական օրինականության ու պետականության սկզբունքների մշակման, երկրում մեկ միասնական դատախազական հսկողության սահմանման և իրականացման հարցերը։

Իրավացի էր Լենինի զինակից Բոնչ-Բրուևիչը, երբ տարիներ առաջ ասում էր. «Կգա ժամանակ, երբ նրա կյանքը կուսումնասիրեն ոչ թե տարի առ տարի, այլ օրե-օր և նրա շուրթերից դուրս եկած ամեն մի խոսք, նրա կյանքի հետ կապված յուրաքանչյուր գործ և իրադրություն, նրա կյանքի մասին յուրաքանչյուր վկայություն մարդկության համար կդառնա այնպես կարևոր ու անհրաժեշտ, ինչպես կարևոր ու անհրաժեշտ է արևի լույսը» («Знамя», 1967, № 4, стр. 146)։

Պետության և իրավունքի հարցերով Լենինն զբաղվել է դեռևս հեղափոխական գործունեության առաջին տարիներից։ Կրթությամբ լինելով իրավաբան, խոր հետաքրքրություն էր պահպանում այդ գործի նկատմամբ, նրա մոտ հարցերի իրավաբանական ձևակերպումների հակում կար. այս բնագավառում ևս նա անգերազանցելի է։ Իրավական այս կամ այն ձևակերպմանը Լենինը վերաբերվում էր խոր գիտականությամբ, որպես մտքի արգասալի հայտնագործության։ Այդպես է բնութագրել Լենինին Ա. Վ. Լունաչարսկին։

Սովետական իրավագիտությունը, խարսխված լինելով մարքսիզմ-լենինիզմի անսասան հիմքերին, հարստացել ու հիմնավորվել է ՍՄԿԿ և սովետների համագումարներում, կոմինտերնի կոնգրեսներում, Վ. Ի. Լենինի դեկուցումների, նրա բազմաթիվ ելույթների, ճառերի և այլ նյութերի գիտական համակարգմամբ։ Սովետական իրավագիտության տեսական նոր սկզբունքների համակողմանի մշակման փայլուն օրինակ է Լենինի դասական երկը՝ Պե-

տություն և հեղափոխություն, մի երկ, որի դրույթները մարմնավորված են սովետական պետության և իրավագիտության հարցերին նվիրված դասագրքերում, բազմաթիվ աշխատություններում։

Հայտնի է, որ Լենինն անմիջականորեն կազմակերպել ու ղեկավարել է այն վիթխարի գործը, որը կոչվում է սովետական շինարարություն, և նրանից բխող՝ սոցիալիստական օրինականություն։ Այսօր էլ շատ իրավահարաբերություններ, լինեն դրանք պետական կառավարման, թե օրինականության պահպանման կենսաթրթիռ հարցեր, քննվում, լուծվում են իրավագիտության լենինյան հարուստ ժառանգության մեկնակետից։

Երբ թերթում ենք Լենինի երկերի էջերը, պարզ տեսնում ենք, թե նա ինչպիսի՜ կրքոտությամբ ու խորաթափանցությամբ է սովետական պետության կազմավորման առաջին տարիներին արծարծել ու լուծել դատախազական հսկողության սահմանման և օրինականության պահպանման հարցերը։

Մինչև սովետական կարգերի հաստատումը Ռուսաստանում օրինականության պահպանման գործը բարձիթողի վիճակում էր։ Ժողովուրդների իրավազրկությունը, ազնվականության, կալվածատերերի ու կապիտալիստների անպատժելիությունը, չինովնիկների կաշառակերությունը, տեղական իշխանությունների բացարձակ կամայականությունն ու վարչարարությունը հարյուրամյակներ շարունակ թագավորել են երկրում և այդ պայմաններում տանջվել ու կեղեքվել են աշխատավորները։ Ժողովուրդը օրենքի և իրավունքի նկատմամբ ոչ մի հարգանք չի տածել։

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը, քաղաքացիական կռիվները ազատեցին ժողովուրդներին դարավոր խավարամտությունից, ու երկրի կառավարման գործը ստանձնեցին իրենք՝ աշխատավորները։

Մարդկանց ապօրինություններից զերծ պահելու նպատակով, նոր հասարակարգի իրական ամրապնդման շահերը պահանջում էին սովետական իշխանության պետական կառավարման սիստեմում ունենալ մի օրգան, որն իրականացներ օրենքի՝ անկախ տեղական որևէ ազդեցությունից, միակերպ ըմբռնման և կիրառման դժվարին գործը։ Այս դեպքում էլ նախաձեռնողը Լենինն էր։

1922 թ. մայիսին դատախազության կազմակերպման և նրա գործունեության կանոնադրության հաստատման վերաբերյալ Ռուսաստանի Արդարադատության ժողկոմատի նախագիծը լուրջ տարաձայնություններ հարուցեց Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի IX գումարման III սեսիայի հանձնաժողովում, մասնավորապես դատախազության ենթակայության հարցերը քննելիս։ Կենտգործկոմի նախաձեռնությամբ, հարցը սեսիայում քննելու նպատակով, ստեղծվեց Կենտրոնական կոմիտեի հանձնաժողով, որտեղ դատախազական մարմինների կենտրոնացված ու դրանք տեղական սովետներից անկախ լինելու սկզբունքը կրկին տարաձայնություններ հարուցեց հանձնաժողովի կազմում։ Տարաձայնություններ առաջացան նաև տեղական սովետների ապօրինի որոշումները դատախազական մարմինների կողմից բողոքարկելու հարցերի շուրջ։

Նշված հանձնաժողովներում ծագած տարաձայնությունները հանգում էին նրան, որ տեղական իշխանության մարմինները (հանձին դատախազության) «բյուրոկրատական վերնաշենք» էին համարում, որ, իբր, դատախազությունը կարգելակի սովետների նախաձեռնությունը, կվերցնի նահանգային գործկոմների իշխանությունը և դրանով իսկ կփոխարինի վերջիններին։



Համառուսաստանյան Կենտգործկոմի անդամներ Պ. Սմիդովիչը, Դ. Ռյազանովը, Լ. Կագանովիչը, Ն. Օսինսկին և ուրիշներ գտնում էին, որ կենտրոնացված դատախազական մարմինների ստեղծումը նշանակում է՝ «երկրորդ իրավաբանական պետության» կազմակերպում, որի գոյության դեպքում աշխատելն անկարելի կլինի։

Կագանովիչին և մյուսներին իրենց ելույթներում առարկեցին Մ. Կալինինը, Ն. Սկրիպնիկը և Վ. Յախոնտովը։

Մ. Ի. Կալինինն ասում էր. դատախազության կազմակերպումն այն միջոցներից և հնարավորություններից մեկն է, որն անհրաժեշտ է իշխանության մարմիններում գործող մարդկանց օրինականության ոգով դաստիարակելու համար (տե՛ս «Известия», 1922 թ., 16-ը մայիսի)։

Հիվանդության պատճառով Լենինն այդ քննարկմանը չի մասնակցել, սակայն ծանոթանալով հանձնաժողովներում առաջացած տարաձայնություններին, անմիջապես թելադրել է քաղբյուրոյին հասցեագրած «Երկակի» ենթարկման և օրինականության մասին իր հայտնի նամակը, որը դրվեց դատախազական հսկողության գործունեության հիմքում և մինչև այժմ պահպանում է իր չեղյալ կենսունակությունը։

Պատմական նշանակություն ունեցող այդ նամակով Լենինը բացահայտեց դատախազության անկախության և նրա միայն կենտրոնին ենթարկվելու սկզբունքը։ Դատախազության կազմակերպման և նրա կառուցվածքի սահմանման հարցը նա այնքան կարևոր է համարել, որ առաջարկել է այն անպայման քննել Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյում։

Ի տարբերություն տեղական բոլոր աշխատողների երկակի ենթարկման, Լենինը գտնում էր, որ դատախազական տեղական մարմինները պետք է նշանակվեն կենտրոնի կողմից և ենթարկվեն միայն կենտրոնին։

Նա գտնում էր, որ տեղական անխուսափելի տարբերությունները կիրառելի են գյուղատնտեսության, արդյունաբերության, վարչական կամ կառավարման հարցերում, որ այդ բնագավառներում հաշվի չառնել տեղական առանձնահատկություններն ու տարբերությունները՝ կնշանակի իրոք թաղվել բյուրոկրատական ցենտրալիզմի մեջ։ Օրինականության պահպանման հարցում «երկակի» ենթարկումը Լենինը համարում էր բացահայտ սխալ։

Իրեն հատուկ սկզբունքայնությամբ ու վճռականությամբ հակահարված տալով Կենտկոմի հանձնաժողովի մեծամասնության սխալ տեսակետին (որը ցանկանում էր պահպանել Կալուգայի օրինականությունից տարբերվող Կազանի օրինականությունը), Լենինն առաջարկում էր, որպեսզի մեր երկրում լինի մեկ օրինականություն։ Նա շեշտում էր, որ սովետական օրենքների միասնական կիրառման գործում դատախազն իրավունք ունի և պարտավոր է անել միայն մի բան՝ հետևել օրինականության իրապես միատեսակ ըմբռնման հաստատմանն ամբողջ երկրում, չնայելով ոչ մի տարբերության և առհասարակ տեղական որևէ ազդեցության։ Դատախազի միակ իրավունքը և պարտականությունն է՝ գործը հանձնել դատարանի վճռին (տե՛ս, Լենին, Երկեր, հ. 33, էջ 430—431)։ Դատախազական հսկողությանն այդքան բարձր նշանակություն տալը բխում էր ո՛չ միայն այդ օրգանի գործունեության յուրահատկությունից, այլև օրինականության շահերը պաշտպանելու անհրաժեշտությունից և երկրի օրենսդրության միատեսակ ըմբռնման նպատակներից։ «Դատախազը,— նկատել է Լենինը,— պատասխանատու է այն բանի համար, որ տեղական ո՛չ մի իշխանության ո՛չ մի որոշում օրենքից չշեղվի, և միայն այս

տեսակետից է, որ դատախազը պարտավոր է բողոքարկել ամեն մի անօրինական որոշում, ընդ որում դատախազն իրավունք չունի կասեցնելու որոշումը, այլ պարտավոր է միայն միջոցներ ձեռք առնել, որ ամբողջ հանրապետության մեջ հաստատվի օրինականության բացարձակապես միատեսակ ըմբռնում» (Երկեր, հ. 33, էջ 431—432)։

Այս սկզբունքների պաշտպանության տեսակետից էր, որ Լենինն առաջարկում էր դատախազական մարմինների կենտրոնացված ենթակայություն, որին դեմ արտահայտվեցին Լ. Կամենևը, Ա. Ռիկովը և ուրիշներ, որոնք կարծում էին, թե դատախազական տեղական մարմինների անկախության և նրանց միայն կենտրոնին ենթարկվելու սկզբունքը տեղերում երկիշխանություն կստեղծի։

1922 թ. մայիսի 24-ին Կենտրոնական կոմիտեի Քաղբյուրոն, քննարկելով դատախազության կազմակերպման և նրա գործունեության սկզբունքները, ընդունեց Լենինի առաջարկությունը։

Այլ կերպ հասկանալ օրինականության պահպանման նկատմամբ իրականացվող դատախազական հսկողությունը, —ընդգծել է Լենինը,— նշանակում է վիժեցնել այն և սկզբունքային սխալ կատարել։

Լենինի այս դատողությունները բխում էին կյանքի հարուստ փորձից և այդ նկատառումով, կուսակցության զտումներն անցկացնելիս, նա բերում է տեղական ստուգիչ հանձնաժողովների մեծամասնության կողմից անձնական և տեղական հաշիվներ մաքրելու բազմաթիվ երևույթների օրինակներ։

Հենց այդ երևույթների դեմ պայքարելու նպատակով, Լենինն առաջարկում էր գտնել վստահելի մեկ տասնյակ կոմունիստներ, որոնք ունակ լինեն դիմադրելու զուտ տեղական ամեն տեսակ ազդեցություններին և ամբողջ հանրապետությունում օրինականությունը միատեսակ կիրառելու։ Ընդ որում, նա ընդգծում էր, որ դատախազական հսկողությունը հսկայական իշխանություն է, որը պետք է գտնվի կուսակցական ղեկավար ապարատի ամենամոտ ու անմիջական հսկողության ներքո, սա առավելագույն երաշխիք է ընդդեմ տեղական և անձնական ազդեցությունների։

Մինչև Լենինի շարադրած վերոհիշյալ սկզբունքների քննարկումը, դատախազական հսկողություն նորաստեղծ սովետական պետության մեջ, ինչպես հարկն է, գոյություն չի ունեցել, այն իրականացվել է հեղափոխական տրիբունալների, դատարանների և մեղադրողների կոլեգիաների կողմից, որոնք զբաղված լինելով հիմնականում իրենց խնդիրներով, ի վիճակի չեն եղել բավարար չափով, առանց տեղական ազդեցությունների, օրինականության միատեսակ ըմբռնմամբ, պատժական պրակտիկա վարել։ Մինչդեռ երկրում հսկողական հատուկ իրավազորություններ ունեցող կենտրոնացված մեկ մարմին ստեղծելու պահանջ էր զգացվում։

Դեռևս 1920 թվականին, սովետական արդարադատության գործիչների III համագումարում, քննչական աշխատանքների կազմակերպման հարցի քննարկման ընթացքում, միտք ծագեց դատախազության անհրաժեշտության մասին. սակայն համագումարում այդ հարցը չլուծվեց։ Միայն 1922 թվականի մայիսի 26-ին Համառուսաստանյան Կենտրոնական գործադիր կոմիտեի IX գումարման III սեսիայում, դատախազական հսկողության մասին կանոնադրություն հաստատելուց հետո, ստեղծվեց պետական իշխանության հատուկ մարմին՝ սովետական դատախազություն։ Սակայն դատախազությունը կազմակերպվեց արդարադատության ժողկոմատի սիստեմում, որը կենտրո-



նացված ղեկավարության ֆունկցիաներ չուներ։ Դատախազը հսկողություն էր իրականացնում նախաքննության նկատմամբ քրեական գործեր հարուցելու, խափանման միջոց ընտրելու, փոստ-հեռագրական թղթակցություններն առգրավելու և այլ գործերի նկատմամբ։ Քննչական աշխատանքի դատավարական շատ հարցեր (կալանքի տակ պահելը, ժամկետը երկարացնելը, գործը կարճելը կամ կասեցնելը, քննչական մեկ ենթակայությունից մյուսին հանձնելը, բացարկը) լուծվում էին դատարանների կողմից։

1922 թվականի քրեական դատավարական օրենսդրության համաձայն, քննիչները, ինչպես առաջ, մնում էին դատարանների ենթակայության տակ։ Քննիչի և դատախազի միջև առաջացած վեճերը վերջնականապես լուծվում էին դատարանում (տե՛ս ՌՍՖՍՀ 1922 թ. քր. դատ. օր.-ի 216, 224 հհ., Ն. Վ. Ժոգին, Դատախազական հսկողությունը քրեական գործերի նախաքննության վրա, էջ 36)։

Թեպետև ժամանակին այդ հարցերի շուրջ բազմաթիվ վեճեր առաջացան, դրանք, այնուհանդերձ, վերջնական լուծում չէին ստանում։ Հետագայում քննչական աշխատանքների ղեկավարման փորձը ցույց տվեց, որ այն ամբողջովին պետք է գտնվի դատախազության անմիջական հսկողության ներքո, որն իր օրենսդրական արտահայտությունը գտավ 1923 թ. վերահրատարակված քրեական դատավարական օրենսգրքում։

Չնայած այս բոլորին, մինչև 1933 թ. միութենական կենտրոնացված դատախազության կազմակերպման հարցը չէր լուծվում։ ՍՍՀՄ գերագույն դատարանին կից կազմակերպված դատախազությունը միութենական հանրապետությունների դատախազությունների նկատմամբ հսկողության կամ ղեկավարման ֆունկցիա չուներ։

Այսպիսով, գործող երկու զուգահեռ դատախազությունների գոյությունը (ՍՍՀՄ գերագույն դատարանին կից դատախազությունը և դրանից անկախ միութենական հանրապետություններում արդարադատության ժողկոմատներին կից դատախազությունը) չէր բխում դատախազության կազմակերպման և օրինականության պահպանման լենինյան սկզբունքներից։ Կյանքը հրամայաբար պահանջեց, որպեսզի երկրում պետական իշխանության անունից ստեղծվի օրենքների ճշգրիտ կատարման վրա հսկողություն իրականացնող կենտրոնացված մի մարմին, որը ղեկավարի ու կազմակերպի նաև տեղերի դատախազական մարմինների աշխատանքը, այսինքն՝ այնպես, ինչպես Լենինն էր առաջարկում։

Եվ այդպես, ՍՍՀՄ Կենտրոնական գործադիր կոմիտեի և ժողովրդական կոմիսարների խորհրդի 1933 թ. հունիսի 20-ի որոշմամբ կազմակերպվեց ՍՍՀՄ դատախազություն, որի սիստեմում կենտրոնացվեց դատախազական մարմինների մի մասը, իսկ 1936 թ. հուլիսի 20-ին, վերը նշված վերադաս մարմինների որոշմամբ, միութենական և ավտոնոմ հանրապետությունների արդարադատության ժողովրդական կոմիսարների սիստեմից առանձնացվեցին և ՍՍՀՄ դատախազության կազմում մտցվեցին դատախազական ու քննչական բոլոր մարմինները։ Դատախազության կազմակերպման ու նրա գործունեության լենինյան այդ սկզբունքներն ամրապնդվեցին 1936 թ. ՍՍՀՄ Սահմանադրության 113—117-րդ հոդվածներով։

Լենինի կանխատեսումներն օրինականության պահպանման և դատախազական հսկողությունն (անկախ որևէ ազդեցություններից) ուժեղացնելու գործում, պատահական չէին։ Հայտնի է, թե անձի պաշտամունքի տարիներին

ինչ հետևանքներ ունեցան սոցիալիստական օրինականության խախտումներն և դատախազական հսկողության անտեսումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, սկսած 1953 թվականից, մի շարք միջոցներ ձեռնարկեց օրինականության պահպանման լենինյան նորմերը վերականգնելու նպատակով:

Սոցիալիստական դեմոկրատիայի և օրինականության զարգացման գործում հսկայական դեր խաղաց ՍՄԿԿ XX համագումարը, որը վճռականապես դատապարտեց կոլեկտիվ ղեկավարությունն անտեսելու արատավոր ոճը և սոցիալիստական օրինականության կոպիտ խախտման փաստերը (անձի պաշտամունքի տարիներին):

Սոցիալիստական օրինականության պահպանման ամրապնդումն իր հետագա զարգացումը գտավ կուսակցության նոր ծրագրում: Այնտեղ նշվեց, որ սովետական ժողովրդի պարտքն է՝ պահպանել օրինականությունը և իրավակարգը, անհանդուրժողականություն ցուցաբերել չարաշահումների նկատմամբ և պայքարել դրանց դեմ:

Սոցիալիստական օրինականության պահպանման հարցերին հատկապես մեծ նշանակություն տվեց ՍՄԿԿ XXIII համագումարը: «Զարգացնելով պետական շինարարության դեմոկրատական սկզբունքները, կուսակցությունը ելնում է այն բանից, որ սովետական մարմինների ամբողջ գործունեությունը և երկրի գործերի կառավարմանը քաղաքացիների լայն մասնակցությունը պետք է հենված լինի սոցիալիստական օրինականության խստագույն պահպանման վրա:

Սովետական օրենքները, մարմնավորելով կյանքում ստուգված սոցիալիստական իրավակարգի նորմերը, բոլոր աշխատավորների կամքի արտահայտությունն են: Դրանք տոգորված են ժողովրդի մասին հոգատարությամբ և հուսալիորեն պաշտպանում են մեր հասարակարգը, սովետական քաղաքացիների շահերն ու իրավունքները» (Լ. Ի. Բրեժնև. ՍՄԿԿ XXIII համագումարին տված ՍՄԿԿ ԿԿ հաշվետու զեկուցում, Երևան, 1966, էջ 120):

Սրանք են մեր երկրում օրինականության պահպանման նպատակով ՍՍՀՄ դատախազության կազմակերպման և նրա գործունեության լենինյան այն սկզբունքները, որոնք մշակվել են 50 տարի առաջ և զարգացել ու օրենսդրական կատարելագործման են ենթարկվել սովետական կարգերի ամրապնդմանն համընթաց:

Սակայն կարևորը ոչ միայն օրինականության պահպանման կենսունակ սկզբունքներն են, այլև դրանց կատարումը:

Հանրապետության դատախազական մարմիններն անում են ամեն ինչ լենինյան այդ սկզբունքները իրականացնելու նպատակով, համոզված լինելով, որ իրենց հետ միասին այդ նպատակի իրագործմանն են ծառայում նաև պետական մարմինները, պաշտոնատար անձինք, հասարակական կազմակերպությունները և մեր քաղաքացիները:



Ա. Մ. ՆԱԶԻՆՅԱՆ

# ԼԵՆԻՆԻ ԿԵՐՊԱՐԸ ՍՈՎԵՏԱՀԱՅ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ԼԵՆԻՆԻ կերպարի գեղարվեստական անդրադարձման ասպարեզում յուրահատուկ տեղ է գրավում նոր ժամանակների ժողովրդական, այդ թվում նաև սովետահայ բանահյուսությունը, որը հայ ժողովրդի ավանդական բանահյուսության տրամաբանական շարունակությունն է:

Սովետահայ բանահյուսության մեջ ամենաբազմազան եղանակներով, անմիջական և անկեղծ ելևէջներով ղողանջել է ժողովրդի ձայնը. հաճախ դա անբռնազբոսիկ ու անպաճույճ զրույց է, իղձ ու բարեմաղթանք, հրճվանքի ու խանդավառության պոռթկում այն բոլոր բարիքների համար, որ պարգևել է Իլյիչը ժողովրդին: Ժողովուրդը կյանքի բոլոր բնագավառներում տեսել է Լենինին, զգացել նրա հովանավոր ձեռքն ու մշտական հոգատարությունը: «Լենինը շատ սերտ կերպով կապված էր աշխատավորների հետ, ելնում էր նրանց արմատական շահերից, մշտապես զգում ժողովրդի կյանքի զարկերակը, ուշադիր ուսումնասիրում բանվորների և գյուղացիների, հասարակության բոլոր խավերի սոցիալական հոգեբանությունը, այս ամենը հաշվի առնելով քաղաքական որոշումներ մշակելիս» (Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները: «Սովետական Հայաստան», 23 դեկտեմբերի, 1969 թ.):

Սովետահայ բանահյուսության մեջ Լենինին նվիրված ստեղծագործությունները բավական շատ են ու լայնորեն տարածված: Դրանց մի մասը հրապարակված և ուսումնասիրված է (**Լենինը հայ ֆոլկլորի մեջ:** Երևան, 1936):

Բազմաժանր ու բազմատեսակ են Լենինին նվիրված բանահյուսական այն ստեղծագործությունները, որոնց մեջ մեծ տեղ են գրավում բանահյուսության քնարական տեսակները— երգերը, պարերգերը, խաղիկներ-քառյակները, ողբերգերը (Լենինի մահվան առթիվ) և այլն: Քնարական այդ ստեղծագործությունները ժամանակին երգվել և ունեցել են իրենց հատուկ երաժշտական մեղեդիները, որոնք, ցավոք, չեն ձայնագրվել ու պահպանվել:

Լենինի մասին հյուսված երգերում ամբողջ ուժով հնչում է շահագործման դարավոր լծից ազատագրված աշխատավոր մարդկանց հրճվանքն ու խանդավառությունը. Նրանցում փառաբանվում է աշխարհի նոր «սարք ու կարգը», որի հաստատողը և ժողովրդին «դարդ ու ցավից» ազատողը Լենինն է: Ժողովրդական երգերում բազմիցս վերհիշվում է անցյալը: **Բատրակը** երգում, օրինակ, ներկայացված է աշխատավոր մարդու ողբերգությունը.

**Սովից մեռան հերըս, մերըս,**
**Էլ աշխարհում ո՞վ է տերըս...**

Նույն երգում պատկերվում է աշխատավորի չարքաշ կյանքը. «...ամեն հասնող ինձ կզարկեր. չկար մեկը, որ ինձ փրկեր»: Երգի մոտիվն ու տրամադրությունը զարգանում են որպես մի անհատի կյանքի պատմություն, բայց ըստ էության, դա արտացոլում է շահագործվող մարդու կյանքը՝ դառն ու տանջալից, որը հեղաշրջվում է միայն այն ժամանակ, երբ գալիս է սովետը՝ «փրկությունն էլ բերելով հետը»: Աշխատավոր, ճնշված ժողովրդին հովանավոր ու պահապան է կանգնում «բոլշևիկը»:

**Զոռքս-զոռությունը վերջացավ, գնաց,**
**Աշխարքի տերը, հոգի ջան, քասիբը մնաց:**

Ժողովրդական քնարական երգերում փոռաքանվում են նոր կարգերը, շահագործման իսպառ վերացումը և հարստահարիչներին ունեզրկելը— «զրկվողին փրկեցիր, զրկողին զրկեցիր», ազգային խտրականության վերացումը— «թշնամի ազգերը ընկեր շինեցիր», կանանց և տղամարդկանց իրավահավասարության հռչակումը— «Լենու մասամբ մի ազատեց, կնիկ մարթերաց խավըրեց» և այլն:

Քնարական երգերից բացի սովետահայ բանահյուսության մեջ աչքի են ընկնում նաև Լենինին նվիրված վիպական ստեղծագործությունները: Պահպանվել են նաև մի քանի հեքիաթներ **(Լենու խաքաթ, Լենինի խեքաթը)**: Այդ կարգի ժամանակակից հեքիաթի ուշագրավ մի նմուշ է նաև Ա. Բակունցի **Մուրոյի զրույցը** գողտրիկ ստեղծագործությունը: Հեղափոխությունն իր էությամբ ու մասշտաբներով մի աննախընթաց երևույթ էր, որի մեծությունն ու բացառիկ նշանակությունը գեղարվեստորեն վերարտադրելու համար ժողովուրդ-ստեղծագործողը դիմում է նաև հեքիաթին ու ավանդավեպին: Հայկական ժողովըրդական ժամանակակից հեքիաթներում, օրինակ, Լենինը պատկերվում է որպես գերբնական ուժի և կարողության տեր դյուցազն: Նա պայթեցնում է ցարի ապարանքն ու փախչում Չին-Մաչին, ապա վերադառնալով կըռվում ու հաղթում է ցարին: Հեքիաթներում պահպանվել է կախարդական հեքիաթներին բնորոշ՝ երազով կանխազգալու միջադեպը: Ռուսաց թագավորի կինը երազում տեսնում է, որ Սիբիրում ծնվել է մի կրակ-կարմիր հերոս: Լենինի մայրն էլ երազում կանխազգում է վերահաս վտանգը և որդուն վերցըրած՝ փախչում, հեռանում է այլ երկիր: Հեքիաթային-առասպելական գույներով են նկարագրվում Լենինի կյանքի դրվագները, նրա մահը **Մուրոյի զրույցում**: «Լենին մեռավ… յոթ օր, յոթ գիշեր սուգ արին, տարան մի բարձր տեղ թաղին, որ արևուց մոտ էղնի»:

Ժողովուրդը հրաշապատում պատկերներին ու արտահայտչական միջոցներին միշտ դիմել է Լենինի վեհությունը ցուցադրելու և նրա նըկատմամբ ունեցած երախտագիտության, բացառիկ սիրո զգացմունքներն արտահայտելու համար: Մաքսիմ Գորկին մի առիթով նշել է. «…ֆոլկլորը մեր օրերին Վլադիմիր Լենինին բարձրացրեց հնության առասպելական հերոսի՝ Պրոմեթևոսին հավասար բարձրության»:

ՍՈՎԵՏԱՀԱՅ բանահյուսության մեջ Լենինին ու Հոկտեմբերյան հեղափոխությանը նվիրված ամենանշանավոր ստեղծագործությունը **Լենին փաշա** հերոսական վիպերգն է: Այն ժամանակին թարգմանվել է ռուսերեն և տպագրվել **Творчество народов СССР** ժողովածուում, դառնալով սովետական ժողովուրդների բանահյուսության նանաչված երկերից մեկը:

Համաժողովրդական բուռն ցնծությունն ու ոգևորությունն են ստեղծել **Լենին փաշան**: Դա վիպական հարուստ գույներով հյուսված մի հերոսապատում է, որտեղ արտացոլված են հեղափոխության պատմական դերն ու իրադարձությունների աշխարհացունց էությունը: **Լենին փաշա** վիպերգը աշխատավոր ժողովըրդի սոցիալական-ազատագրական դարավոր պայքարի խորհրդանշանն է: Վիպերգում, նախքան բուն հեղափոխական իրադարձություններին անցնելը, տրվում է հասարակության դասակարգային երկփեղկվածության իրական պատկերը, ներկայացվում հասարակությանը երկու մասի բաժանող սոցիալ-դասակարգային անջրպետը.

**Հաշխըրի մալ, դովլաթ գո զըմմեն**
**զանգինաց.**
**Կայք, զկարողութեն, գո զըմմեն զանգինաց.**
**Վուսկի, զըմուլք, գո զըմմեն մոտ**
**զանգինաց.**
**Ֆաղիրն ի, ըզո̈ւր էրկու տարտակ ծեռնիր…**

Վիպերգերում ներկայացված է նաև այն ճշմարտությունը, որ անցյալում պետական իշխանությունը միշտ պաշտպանել է շահագործողների շահերը և, թեև շահագործողները հասարակության փոքրամասնությունն են կազմել, բայց ուժն ու զորությունը նրանց կողմն են եղել: Սոցիալական այդ անարդարությունն ու անհավասարությունն անմիջական ու հըստակ պատկերներով են ներկայացված **Լենին փաշա** վիպերգում.

**Զանգինաց ը սոլթանաց խոսք մեկ ի.**
**Ամմա դ'արի վուր անունք քիչ ին,**
**հախկատ շատ ի.**
**Քիչ զըշատ կըտանջա, զանու նաֆ կուտի.**
**Սիյահը կուվաթ անու ծեռին ի:**

Ծահագործող այդ հասարակարգը պահպանվում է դաժան բռնապետության միջոցով: Դաժանությունը շահագործող վերնախավին բնութագրող հատկանիշ է. «Զանգին տըփի նոքրու կլխուն, անել տա ըզո̈ւր պան», իսկ շահագործվողներին վիճակված էր տառապանք ու հալածանք— «Հախկատ չարչըրվի, չալշի, չուր տո̈ւս կա ուր ջան»:

**Լենին փաշա** վիպերգում այնքան տիպիկ ու բնորոշ գծերով է բնութագրված ցարական ինքնակալությունը, որ այն դառնում է ամեն մի բռնակալական սիստեմի գեղարվեստական, վիպական ընդհանրացում:

Ինքնակալության էությունը բացահայտող գործողությունների թվարկմամբ վիպերգում արտացոլված է աշխատավոր հասարակ ժողովրդի տառապալից վիճակը.

**Քանի՛-քանի արունքտեր էր էրի էնի,**
**Քանի՛-քանի օջախներ էր մարե էնի,**
**Քանի՛-քանի ճժուկներ էր թողե**
**խեղճ-վուրփ,**
**Քանի՛-քանի մերեր-քուրեր սևիր խաքած,**
**Քանի՛ ջահել-ջիվան կնքտեր որփեվարի,**
**Քանի՛-քանի կը մխկըտին մըչ զնդանաց,**
**Քանի՛ կռիվ, զըշամաթա սարքեց էնի,**
**Կուզեր զաշխարհ-ալամ զավթի,**
**իրմով էնի…:**

Պատկերավոր ձևով մերկացնելով շահագործման ու ճնշման դաժան ռեժիմը՝ ժողովուրդը նշավակել է նաև ցարիզմի վարած քաղաքական հալածանքն ու իմպերիալիստական զավթողական քաղաքականությունը:

Սոցիալական անհավասարության ու անարդարության մերկացման հետ միասին **Լենին փաշա** հերոսական վիպերգում միաժամանակ պատկերվում է մասսաների անողոք դասակարգային պայքարը: Պատմական իրականության համապատասխան ժողովրդական վիպերգն արտացոլում է դասակարգային հակասությունների հասունացումն ու սրումը: Այստեղ դա ներկայացված է ժողովրդական մի պատկերավոր արտահայտությամբ. «Տանակ ոսկոռաց խասեր ի չխո…»:

Մասսաների հեղափոխական բողոքն ու ըմբոստությունը գլխավորում և դասակարգային անողոք պայքարը ղեկավարում է պատմական ասպարեզ բարձրացած բոլշևիկների կուսակցությունը: Վիպերգում յուրահատուկ եղանակով են ցույց տրված աշխատավոր ժողովրդի ըմբռնումն ու պատկերացումը բոլշևիկների կուսակցության մասին.

**Մասաք ըմ կեր, անուն ուր մալշուրիկ.**
**Վով անունց խետ ի, զո̈ւր մալ կես կ'էնի**
**խըտ ուրիշաց:**

Պարզ ու հասարակ այս պատկերի միջոցով ներկայացված է բոլշևիկների դավանած հավասարության սկզբունքը: Այդ գաղափարն արտահայտվել է «բոլշևիկ» բառի ժողովրդական ստուգաբանությամբ: «Բոլշևիկը» տառադարձված է՝ «մալշուրիկ», որը նշանակում է **մալ** (ունեցվածք)— **շուրիկ** կամ **շիրիգ** (հավասար կիսող): Լենինին հանդես բերելով որպես բոլշևիկների գլխավոր (դինբաշի), ժողովուրդն արտացոլել է պատմական ճշմարտությունն այն մասին, որ Լենինն է եղել բոլշևիկյան կուսակցության հիմնադիրը: Նա հանդես է գալիս որպես վիպերգում զարգացող գործողությունների առաջնորդ ու ղեկավար ուժ: Լենինն է արտահայտում ժողովրդի սոցիալական ու դասակարգային պայքարի կամքը.

**Էնիկ թռավ ըզո̈ւր սոլթան ը հուքմաթի**
**հիրես.**
**Ես տը կռվիմ, ասից, տ'ազատիմ զհախկատ:**

**Լենին փաշա** հերոսական վիպերգում դեպքերի ընթացքն ու վախճանը որոշող հիմնական գործող ուժը ժողովուրդն է, ազատագրական մեծ կռվի ելած շահագործվող մասսաներն են: Ովքե՞ր են դրանք. «Հախկատ փուղարաքտիր, պանվուր, քասըբ, խեղճ խզմաթքարքիր»: Լենինը, որպես կուսակցությունը մարմնավորող հավաքական կերպար, գլխավորում է մասսաների այդ պայքարը:

Հետաքրքրական է նաև **հերոսի** սոցիալական ծագման մասին եղած պատկերացումը: Անցյալի բանահյուսության մեջ հաճախ դրական հերոսներն իշխանական ծագմամբ ու տիտղոսներով են ներկայացվում, թեև, ըստ էության, նրանք իրենց գործունեությամբ ու վերաբերմունքով ժողովրդի շահերի արտահայտիչ են: Նոր ստեղծագործության մեջ, հասարակական-քաղաքական գործունեության ասպարեզ դուրս գալով, ժողովուրդը գընահատում է իր ուժն ու արժանիքները և նրա գիտակցական աշխարհում փոխվում են հին պատկերացումները: Ահա թե ինչու վիպերգի հերոսը՝ «Լենին փաշեն հախկտի մ'տղե մ'էր»:

Հոկտեմբերյան հեղափոխության և քաղաքացիական կռիվների պատկերումը **Լենին փաշա** վիպերգում արմատապես տարբերվում է այն կռիվներից ու պատերազմներից, որոնք արտացոլվել են մինչհոկտեմբերյան բանահյուսական ստեղծագործություններում: Անցյալի բանահյուսության բնորոշ միջուկը մեծ մասամբ ազգային անկախության, ինքնուրույնության համար մղվող ազատագրական պայքարն է: **Լենին փաշայում** պատկերված է դասակարգային կռիվը: Այստեղ գործում են, անկախ ազգային պատկանելության, երկու կողմ՝ ճնշողներ ու ճնշվողներ՝ «մի կողմ հուքմաթ, մի կողմ՝ ըռյաթ»: Վիպերգում համոզիչ ու ճշմարտացի են բնութագրված դասակարգային այդ մեծ կռվի մասնակից երկու կողմերը, նրանց ուժերն ու նպատակները, սոցիալական կազմն ու պատկերը:

Ահա շահագործվողների բանակը.

**Զըմմեն լէ գրկված պանվորքտեր ին**
**հախկատ.**
**Զըմմեն լէ գրկված ըռշպարքիր ին**
**հախկատ.**
**Զըմմեն լէ գրկված անկուռծ, խեղճ,**
**ճախկատ...**

Դրանք բոլորն էլ «Հաշխրի զուրկ, սիրտը վառած մարթեր են»՝ «մեկ սիրտ, մեկ խոքի»: Միանգամայն այլ պատկեր ունի շահագործողների բանակը. «Հուքմաթը» (իշխանությունը) քաշեց իր զորքն ու զորապետին. «զանգիյքտեր» (հարուստները), բեկերն ու աղաները իրենց կարողությամբ են օգնության գալիս, իսկ օտարերկրյա իմպերիալիստները իրենց ռազմական ուժերն են տրամադրում միապետությանը: Այստեղ չի պահպանված դեպքերի ժամանակագրական, հաջորդական զարգացումը: Օտարերկրյա ռազմական ինտերվենցիան զուգակցված է հեղափոխության բուն իրադարձություններին: Բանահյուսական երանգավորմամբ է տրված ինտերվենտների անվանումը, ինչպես, օրինակ, Ինգլիզը (Անգլիան), Ֆռանգզըզը (Ֆրանսիան), Ամրքյան (Ամերիկան), Ճայփունը (Ճապոնիան), Օսման-տաճիկը (Թուրքիան): Պատմական, իրական ինտերվենտների այս անուններին միացել են նաև ավանդական թշնամիների անունները՝ Մըսր-Հիսար, Աջամ-Պարսիկ, Հաբաշ-Ալման, որոնք դարերով ասպատակել են Հայաստանը:

Եթե լենինյան բանակն իր սոցիալական շահերով ու կազմով միասնական է, ապա իմպերիալիստների բանակը՝ աններդաշնակ է ու խայտաբղետ. դրանց մի մասը փողով վարձված, մի մասը՝ «վախկոտ-ջանպախ», մի մասն էլ «օտար-անծանոթ մարթեր» են:

Զնայած հեղափոխական մասսաները զուրկ էին նաև կենսական անհրաժեշտ միջոցներից, այնուամենայնիվ, շահագործվողների, զրկվածների պայքարը հաղթական ավարտի է հասնում: Ժողովրդական այս վիպերգում հետաքրքրական է պատկերված երկու հակառակորդ դասակարգերի սուր բախումը: Դա տիտանական կռիվ էր, որ աշխարհում առաջին անգամ մղվում էր հանուն աշխատավոր մարդկանց ազատագրության: Եվ ժողովուրդն էլ այդ մեծ պայքարի համար արտահայտչական համապատասխան միջոցներ է ընտրել: Վիպական հանդիսավոր ոճով է նկարագրված աշխատավորների բանակի մարտական երթը.

**Ասավ, քշեց հառեչ՝ ըզո̈ւր կարմիր բայրաղ**
**պռնած.**
**Անու էտվեն պանվոր կնաց**
**խազա՛ր-խազա՛ր,**
**Անու էտվեն ռըշպար կնաց**
**խազա՛ր-խազա՛ր...**



Հեղափոխական մասսաները տարածվում են ամեն կողմ. «սոնին զաշխարհ, զըսար, զըքար, զըմմեն դեխեն»: Այնուհետև հաջորդում է զորքերի բախման պատկերը.

**Զարկին զարկվան, Լենին փաշի զուրքը**
**զոռից,**
**Զո՛ւ քաշեցին, աչքը խփուկ հառեչ վազին.**
**Էլ չիրիշկին թոփ ը թվանք, զպուլըմիտ.**
**Դոշով պացին հիրանց ճամփան մըչ էն**
**զորաց.**
**Վուտքի տակ լա̈շ տապակ-տապակ կոխին**
**անցան.**
**Յոթ խատ զարնվեր, ընգներ, մեկը անցներ**
**հառեչ.**
**Զամդաք թափեր, քանց փայիզու**
**խռիվ-խազալ:**

Երկու կողմերի այդ ահեղ կոտորածի ուժն ու մեծությունը ժողովրդական վիպերգում ներկայացված են սիմվոլիկ մի պատկերով.

**Մեկ դիյամաթ փռթավ, զաշխար դիպավ**
**իրուր:**

Հարստահարված ժողովրդի հուժկու հարվածին չեն դիմանում ինքնակալության և ինտերվենտների զորքերը.

**Հուքմաթաց զուրք վուր մեկն ընգավ, վուր**
**մեկ փախավ,**
**Մըչ հաշխրին կորան գացին, թոզեր կտրավ:**

Աշխատավոր, շահագործվող ժողովրդի պայքարի այս միասնությունը, մասսաների հեղափոխական խանդավառությունն ու բարձր մարտունակությունը բխում են այն հստակ ու խոր գիտակցությունից, որ պայքարում են իրենց ազատ կյանքի ու երջանկության համար:

Իր ժամանակին, խոսելով արթնացած մասսաների հեղափոխական խանդավառության մասին, Լենինը գրել է. «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիները իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակն իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորություն» (Երկեր, հ. 29, էջ 386):

**Լենին փաշա** վիպերգում ցույց է տրված նաև աշխատավոր մասսաների անողոքությունը հեղափոխության թշնամիների հանդեպ: Այդ տեսակետից շատ բնորոշ է և ուշագրավ ցարի նկատմամբ կայացրած դատաստանի միջադեպը:

Հեղափոխության հաղթանակով չի սահմանափակվում Հոկտեմբերյան հեղափոխության իրադարձությունների վիպական վերարտադրությունը **Լենին փաշա** վիպերգում. այնտեղ ներկայացված է նաև հեղափոխության շնորհիվ ստեղծված նոր կարգը: Աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր Լենինի անվան հետ է կապված այդ նոր կարգի ստեղծումը:

**Լենին փաշեն մալշուրիկի տրից զակուն.**
**Երկրի կարք վերուց, էրից կլո̈խն ի վեր:**
**...Երկիր զըմմեն կլո̈խ էտու ըռշպարաց,**
**Երկիր զըմմեն կլո̈խ էտու խեղճ նոքարաց:**

«Մալշուրիկի» դրած «զակունը» սոցիալիստական իրավակարգն է, որտեղ իշխանության գլուխ են կանգնած բանվորներն ու գյուղացիները: Մեծ Լենինի կերպարի միջոցով անձնավորելով հեղափոխության բուն էությունը՝ վիպերգում ժողովրդական պատկերավոր ոճով բնութագրված է աշխատավոր մարդու ճակատագրի մեջ կատարված հեղաշրջումը.

**Երկիր հիստկեց Լենին փաշեն,**
**Թողից զըմմեն ուրան մարթեր.**
**Աշխատավո̈ր առից ուր թևի տակ...**

**Լենին փաշայում** առանձնապես ուժեղ է արտահայտվել **Սասունցի Դավիթ** ժողովրդական դյուցազնավեպի ստեղծագործական ավանդների ազդեցությունը: Վիպերգի բնորոշ հատկանիշներից մեկը դյուցազնավեպին հատուկ վիպական կրկնությունն ու չափազանցումն է: Վերջիններս ինչպես էպոսում, այնպես էլ **Լենին փաշայի** մեջ հանդիսավոր տրամադրություն են ստեղծում: Վիպերգի լեզուն արևմտյան և արևելյան Հայաստանի մի շարք շրջանների բարբառներից ձուլված կենդանի խոսվածքն է, որը նույնպես անդրադարձնում է ժամանակի իրականության բնորոշ պատկերը:

Նկատելի է, սակայն, որ սովետահայ բանահյուսության մի շարք ստեղծագործություններ չունեն ավանդական բանահյուսության գեղարվեստական կատարելությունն ու հղկվածությունը: Ստեղծվելով ժամանակի իրադարձությունների տպավորության տակ՝ դրանք գրի են առնվել անմիջապես հորինողների բերանից, դրանով իսկ զրկվելով բանավոր շրջանառությունից, հետագա հղկումից: Ահա թե ինչու այդ ստեղծագործություններում զգալի են անհատական ստեղծագործության ոճն ու եղանակները:

* * *

Սովետական Միության, ինչպես և աշխարհի բոլոր ժողովուրդները, Լենինի կերպարի մեջ ընդգծել են աշխատավոր մարդու, հարստահարված ու տանջված մարդու իսկական պաշտպանի, հովանավորի բնավորությունը: Եվ այդ բնավորությունն ամբողջական է: Չկա ոչ մի հակասություն Լենինի խոսքի ու





գործի միջև: Իր մեծ գաղափարներով ու մտքերով նա լուսավորել է աշխատավոր մարդկանց ուղին և, միաժամանակ, ղեկավարել մասսաների հեղափոխական կռիվը՝ հանուն ազատագրության ու երջանիկ կյանքի:

Լենինի կերպարը սովետական ժողովուրդների բանահյուսության մեջ կերտված է ազգային որոշակի գույներով: Այդ բազմազան գույները երբեք հակասություն չեն ստեղծում, այլ ներդաշնակելով լրացնում և ամբողջացնում են աշխարհի աշխատավորության սիրելի առաջնորդ Լենինի տիտանական կերպարը, սիմվոլիկ այլաբանական պատկերներով ընդհանրացնելով լենինյան վեհ գաղափարները, Լենինի մեծ գործը:

Ժողովրդական բանահյուսության մեջ Լենինի կերպարն աչքի է ընկնում ընդգծված գեղարվեստական արտահայտչական երկու կողմով— դյուցազնական, հերոսական, նույնիսկ առասպելական-հեքիաթային և սովորական մարդկային-առօրեական բնավորությամբ: **Լենին փաշա** վիպերգում Լենինը հսկա դյուցազն է, որ ահ ու սարսափ է պատճառում թշնամուն: Ժողովրդական մի երգի մեջ նա պատկերված է որպես «քաջ իգիթ», որին օգնական է կանգնած ամբողջ բանակը. հրեղեն ձին հեծած՝ նա ջարդ ու փշուր է անում թշնամուն.

**Լենին խեծավ ուրան Ղռաթ,**
**Սաղ հաշխար էնու մնաց մաթ.**
**Նիկոլի, բուրջըվի մեչը,**
**Էցկեց զուլում ը դիամաթ:**

Ժողովրդական ստեղծագործության մեջ Լենինի կերպարի դյուցազնահերոսական բնավորությունն ընդգծելու համար նրան համեմատում են պատմավիպական այնպիսի հերոսների հետ, ինչպիսիք են՝ Ռուստամ Զալն ու Ալեքսանդր Մակեդոնացին.

**Ու Ռուստամի Զալ Լենի,**
**Ըսկանդար-զուլղար Լենի,**
**Հաշխարի փրկիչ Լենի,**
**Մեզի ազատիչ Լենի:**

Լենինի կերպարի այս դյուցազնական-հերոսական բնավորության գիծը պատահական չէ, ոչ էլ արտաքին տպավորության համար ստեղծված: Ժողովուրդը խորապես գիտակցում է Լենինի և բոլշևիկների գործի վեհությունն ու վիթխարի նշանակությունը: «Լենին խին հաշխարհ շուռ իպե»— ասվում է ժողովրդական երգում: Ժողովրդական տրամաբանությամբ, ժողովրդի երևակայությամբ «աշխարհի փրկիչ» Լենինը չի կարող լինել սովորական մահկանացու: Նա մի արտասովոր հսկադյուցազն է ո՛չ միայն իր ֆիզիկական ուժով ու արտաքինով, այլև խելքով ու էությամբ: Լենինը ժողովրդական բանահյուսության մեջ

ներկայացված է որպես իմաստուն մարգարե՝ «Տու ես մեծ մարգարե, փրկող ամենքին», «Ինչ ասեց Լենին, պըլոր կատարվեց»:

Ժողովուրդը միաժամանակ Լենինին պատկերացնում է պարզ ու հասարակ, մարդկային սովորական բնավորության գծերով: Նրա կերպարում հատկապես ընդգծված է մի հանգամանք, որ չենք տեսնում անցյալի բանահյուսության մեջ: Դա ղեկավարի, առաջնորդի ու շարքային մարդու հատկանիշների ներդաշնակությունն է: Ժողովրդական բանահյուսության մեջ հարազատորեն է անդրադարձել Լենինի խորապես մարդկային էությունը: Լենինը հոգեբանությամբ ու ողջ էությամբ ժողովրդի մարդ է. ժողովրդասեր է բառիս ամենախոր ու լայն իմաստով: Բոլոր հանգամանքներում նրա ուշադրության կենտրոնում աշխատավոր ժողովուրդն է, հետաքրքրության, մտահոգության առարկան աշխատավոր մարդը՝ իր առօրյայով ու ապագայով: Լենինի կերպարի ամենաբնորոշ գիծը խոր մարդասիրությունն է.

**Բարի, մարթասեր, անկեղծ էր,**
**Էհտիբարով էր Լենինը...**

Լենինը «շատ հոգսեր քաշեց անհամար», «խավար աշխարհին լույս դուռ բացեց», «Լենին հաշխարհ շինեց դրախտ». ամենուրեք Լենինը աշխատավոր ժողովրդի շահերի պաշտպանն է— «չքավորի պաշտպան», «խեղճի պախապան», «քասիբ-քուսուբի խամխար»:

Լենինի կերպարի գեղարվեստական մարմնավորումն ամբողջանում է նրա մարդկային հոգեբանության ու բնավորության բարեմասնությունների մանրակրկիտ ցուցադրմամբ: Ժողովրդի իմաստուն միտքն ու ամենատես աչքը չի վրիպել ամենափոքր մանրամասներն անգամ: Ժողովրդական դիպուկ արտահայտություններով ներկայացված են Լենինի բնավորության պարզությունն ու շիտակությունը, խիզախությունն ու անմիջականությունը: Ժողովրդական մի երգում նա համեմատվում է բազեի հետ՝ «Լենի էկավ ինչըխ պազե...»:

Ժողովրդական երգերում ներկայացվում են նաև առաջնորդի բնավորության մյուս գծերը՝ արդարադատությունը, գթասրտությունը, բարեսրտությունը, նուրբ ու զգայուն վերաբերմունքը՝ «Մեծ հոգի էր, խղճով բարի...»: «Արև ծաթեց ամբի ծերեն, Լենին մեզի էկավ տերեն», «Մեր փրկիչ Լենին, ազատիչ Լենին», «Էնիկ մեզի հույս ու ճար ի», «Մեր Լենինն էր ոսկի պերան», «Լենինի խոսքերը մեկ-մեկ անգին քար...» և այլն: Ժողովրդական ստեղծագործության մեջ արտացոլվել է նաև Լենինի խոր համեստությունը. մի երգում նա համեմատված է լուսատու ճրագի հետ:

Լենինի գեղարվեստական կերպարը ժողովրդական ստեղծագործության մեջ մի այլ կարևոր առանձնահատկություն ունի: Դա Իլյիչի հանդեպ լայն մասսաների, ժողովրդական զանգվածների սիրո ու համակրանքի արտակարգ ջերմությունն ու քնքշությունն է, որը հասնում է անձնազոհության: Այդ ամենը մենք տեսնում ենք նաև նրա մահվան առթիվ ստեղծված երգերում: Անհուն ու խոր է մասսաների վիշտը:

Ուշագրավ են Լենինի կերպարը բնութագրող համեմատություններն ու մակդիրները. **փրկիչ, ազատիչ, մեծ, անկեղծ, անուշ, կարմիր** և այլն, որոնք պատահական չեն և ոչ էլ միայն մեծարանքի խոսքեր: Դրանց միջոցով ժողովուրդը բնութագրում է Լենինի էությունը, խորհրդանշում նրան բնության այնպիսի երևույթների միջոցով, որոնք մարդկության համար գերագույն առավելություն են ու բարիք: Նա համեմատվում է **լույսի, արևի, լուսավոր աստղի** հետ՝ «Մեր Լենինը մեկ լույս ի...», «Լենինի շափաղ քանց արև...», «Քանց լուսավոր աստղ...» և այլն: Արտահայտչական այս միջոցներով ժողովուրդը հավերժացնում է Լենինին:

* * *

ՍՈՎԵՏԱՀԱՅ բանավոր ստեղծագործության մեջ դրսևորված է հայ ժողովրդի ջերմ համակրանքն ու սերը բոլշևիկների, ռուս մեծ ազգի, Լենինի ուղարկած զորքի՝ կարմիր բանակի նկատմամբ, որոնց օգնությամբ. նա փրկվեց օրհասական ծանր վիճակից:

**Լենին ղրկեց իրա զորքը,**
**Կտրեցին դաշնակի քոքը,**
**Ցավից ազատվեց աշխարքը.**
**Ես Լենինի բախտին մեռնեմ:**

Ժողովրդական այս երգերում կարմիր բանակի հանդիսավոր մուտքը նկարագրված է բուռն ցնծությամբ ու ոգևորությամբ: **Օրդուն եկավ սարի փեշեն, Աղստաֆայից բերեցին լուրը, Չախմախլվից անցավ զորքը...՝, Թոփերը կապեցին Էյլարա դուզը...** և մի շարք այլ երգերում որոշակի գծված են հեղափոխականմարտական գործողությունների կոնկրետ դեպքերը՝ պատմական տեղերի ու դեմքերի հիշատակությամբ:

Սովետահայ ժողովրդական ստեղծագործության մեջ սովետական կարգերի հաստատումը Հայաստանում ներկայացվում է որպես իսկական ազատագրություն՝ մղձավանջային անցյալից, և այդ առթիվ երախտագիտություն է հայտնվում բոլշևիկներին, հերոսական կարմիր բանակին և մեծ Լենինին, ներբողվում Հոկտեմբերյան հեղափոխությունը, որը հայ ժողովրդին բերեց քաղաքական-սոցիալական ազատագրություն, անկախ պետականություն, բացեց նրա առջև ազգային վերածննդի դռները:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՍՈՒՆՈՒԹՅԱՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

### (ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ)

Ա. Հ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ

*Սովետական Հայաստանի աշխատավորները, սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին, պարտքի կատարման գիտակցությամբ հրաժեշտ տվեցին 1969 թվականին: Հաջողությամբ կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, նրանք իրենց արժանի ավանդը ներդրեցին կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: Հնգամյակի չորրորդ տարում հանրապետությունն էլ ավելի խոշոր առաջընթաց քայլ կատարեց էկոնոմիկայի և կուլտուրական շինարարության զարգացման ասպարեզում:*

*Անցած տարին հարուստ էր մեծ նշանակություն ունեցող իրադարձություններով: Այն անցավ տնտեսական գործունեության հետագա զարգացման ու կատարելագործման, հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության ու կուլտուրայի նոր աճի նշանաբանով: Երկրի քաղաքական կյանքում հսկայական նշանակություն ունեցավ կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը, որն ամփոփեց սովետական գյուղացիության ձեռք բերած մեծ հաջողությունները և ընդունեց կոլտնտեսության նոր կանոնադրությունը:*

*1969 թվականը եղելություններով հագեցած տարի էր նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունների համար: Կարևոր իրադարձություն էին կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, որոնք անցկացվեցին Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի նախօրյակին, այդ նշանավոր հոբելյանի նախապատրաստման հարուցած քաղաքական և աշխատանքային պատշաճ վերելքի պայմաններում: Հաշվետու-ընտրական ժողովներն ակնառու կերպով ցուցադրեցին Հայաստանի*

կոմկուսի ձեռք բերած նշանակալից նվաճումները, որն իր առօրյա պրակտիկայում ղեկավարվում է ՍՄԿԿ XXIII համագումարի, Կենտկոմի մարտյան, սեպտեմբերյան (1965) ու մայիսյան (1966) պլենումների ընդունած որոշումներով, պայքարում դրանք անշեղորեն կենսագործելու համար։

Միաժամանակ հաշվետու-ընտրական ժողովներն ամենայն ակներևությամբ ցույց տվեցին, որ բարձրացել է սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, աճել է նրանց դերը քաղաքական ու տնտեսական հրատապ խնդիրները լուծելու գործում, ուժեղացել է կոմունիստների ակտիվությունը և նրանց ազդեցությունը ձեռնարկությունների, հիմնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և ստեղծագործական կազմակերպությունների գործունեության վրա։

Ժողովների ճնշող մեծամասնությունն անցավ գաղափարական և կազմակերպական բարձր մակարդակով, ծավալուն քննադատության ու ինքնաքննադատության, կուսակցական սկզբունքայնության, կոմունիստների փոխադարձ պահանջկոտության բարձրացման պայմաններում։ Ժողովներն աչքի էին ընկնում նրանով, որ չափազանց բարձր էր ներկաների տոկոսը, մեծ էր հաշվետու զեկուցումների քննարկմանը մասնակցել ցանկացողների թիվը։ Դա վկայում է, որ կոմունիստները ձգտում էին ավելի խոր թափանցել իրենց կոլեկտիվների գործունեության մեջ, ավելի բազմակողմանի ու օբյեկտիվ վերլուծել թերությունները, կոնկրետ միջոցառումներ նշել դրանք վերացնելու համար։

Ժողովներ տեղի ունեցան 4484 սկզբնական կուսկազմակերպություններում։ Ժողովներին ներկա էին 114510 կոմունիստ կամ ՍՄԿԿ անդամների 91,1 տոկոսը։ Մտքերի փոխանակությանը մասնակցեցին 28609 մարդ կամ ժողովների գրեթե յուրաքանչյուր չորրորդ մասնակիցը։

Արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական ու տրանսպորտային կազմակերպությունների կոմունիստները հիմնական ուշադրությունը դարձնում էին հասարակական արտադրության զարգացման այնպիսի արմատական հարցերին, ինչպես՝ դրա արդյունավետության ու եկամտաբերության բարձրացումը, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումն ու որակի բարելավումը, աշխատանքի գիտական կազմակերպումը, տնտհաշվարկի արմատավորումը, ներարտադրական ռեզերվների հայտնաբերումն ու ավելի լրիվ օգտագործումը, նյութական խթանումը և այլն։

Ինչպես հայտնի է, 1969 թվականին հանրապետության արդյունաբերությունը կատարեց կարևորագույն ապրանքների մեծ մասի արտադրանքի իրացման պլանը։ Բարձր տեմպերով զարգացան մեքենաշինությունը, սև և գունավոր մետալուրգիան, սննդարդյունաբերությունը, ինչպես նաև կուլտուր-կենցաղային գործածության ապրանքների արտադրությունը։ Տարվա վերջերին պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմով աշխատում էին ավելի քան 340 արդյունաբերական ձեռնարկություն, որոնց բաժինը կազմում էր ամբողջ արտադրանքի 80 տոկոսից ավելին և շահույթի գրեթե 90 տոկոսը։ Տնտեսական ռեֆորմը զգալիորեն նպաստեց աշխատավորների ստեղծագործական ակտիվության զարգացմանը, օգնեց լրջորեն կատարելագործելու ղեկավարման ոճն ու մեթոդները, բարձրացնելու կուսկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունն արտադրության ոլորտում։

Արտադրության վրա կուսակցական ներգործուն ազդեցության հետաքրքրական փաստեր բերվեցին, օրինակ, Երևանի կաբելի գործարանի կոմունիստների ժողովում։ Ձեռնարկության կուսկազմակերպությունը հիմնական



ուշադրությունը հատկացնում է բոլոր աշխատողների աշխատանքային ակտիվության բարձրացմանը, հմտորեն նպաստում բանվորների լայն ներգրավմանը արտադրությունը կառավարելու, արտադրական պլանները կազմելու, տեխնիկական նորմաները վերանայելու գործում։ Կուսկոմիտեն աջակցում է կադրերի տնտեսական ուսուցման կազմակերպմանը, պատասխանատվության բարձր զգացումով համակում աշխատավորներին ոչ միայն իրենց աշխատանքի արդյունքների, այլև բրիգադայի, հերթափոխության և ամբողջ ձեռնարկության ընդհանուր հաջողությունների համար։

Շատ ժողովներում նշվեց, որ ՍՄԿԿ XXIII համագումարի առաջ քաշած՝ էկոնոմիկայի զարգացման տեմպերի արագացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրը լուծելու միջոցներից մեկը գիտատեխնիկական առաջադիմությունն է։ Ժողովին զեկուցելով կոլեկտիվի արտադրական հաջողությունների մասին՝ Լենինականի երկաթուղային դեպոյի կուսկոմիտեի քարտուղար ընկ. Բաբայանը նշեց այն դերը, որ կատարել է կուսկազմակերպությունը տեխնիկական առաջադիմության արմատավորման գործում։ Այսպես, կոմունիստների նախաձեռնությամբ նորոգման արտադրամասում մոնտաժվեց բարձր արտադրողական հինգ տոննանոց կռունկ, էլեկտրաքարշների վրա տեղակայվեցին նոր կառուցվածքի հաշվիչներ։ Դեպոյում արմատավորվել են 85 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնց շնորհիվ տարեկան ստացվում է 5286 ռ. պայմանական օգուտ։ Տեխնիկական առաջադիմությունը շատ բանով պայմանավորեց ձեռնարկության հաջողությունները, և այն 1969 թվականին երկու անգամ առաջնություն նվաճեց անդրկովկասյան երկաթուղում ծավալված մրցության մեջ։

Հաշվետու-ընտրական ժողովներում մեծ ուշադրություն հատկացվեց քաղաքական ու կազմակերպական աշխատանքի կատարելագործման հարցերին՝ նպատակ ունենալով առավել լրիվ օգտագործել արտադրության ռեզերվները։ Մեր հանրապետությունում լայն արձագանք գտավ Շչեկինի քիմիական կոմբինատի փորձը, որտեղ, կազմակերպական մի շարք միջոցառումների շնորհիվ, խիստ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը՝ աշխատողների թիվը կրճատելով հանդերձ։ Այդ ասպարեզում լավ հաջողությունների հասան Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի բանվորները։ Այդ առաջավոր ձեռնարկության կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում բերվեցին այսպիսի փաստեր. տեխնոլոգիան կատարելագործելու և աշխատանքի կազմակերպումը բարելավելու, շատ բանվորների հարակից մասնագիտություններ սովորեցնելու շնորհիվ՝ այստեղ մի շարք տեղամասերում հաջողվեց կազմակերպել երկհերթ աշխատանք՝ երեքի փոխարեն, մի բան, որը հնարավորություն տվեց գիշերային աշխատանքից ազատելու 160 մարդ, որոնցից 120-ը՝ կանայք։ Այդ տեղամասերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 12—20 տոկոսով։

Ընդհանրապես արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում աշխատանքի արտադրողականության աճը կախված է գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներն արտադրության մեջ հմտորեն օգտագործելուց։ Ահա թե ինչու կոմունիստներից շատերն ընդգծում էին, որ մեր օրերում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքն անիմաստ է առանց աշխատողների որակավորումն ու տեխնիկական կուլտուրան մշտապես բարձրացնելու։ Աշխատել կոմունիստաբար՝ նշանակում է աշխատել ոչ միայն ուժերն ամբողջովին նվիրաբերելով, այլև հմտորեն, գործի բոլոր նրբություն-

ների իմացությամբ ամեն կերպ նպաստել արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման։

Հաշվետու ժամանակաշրջանում նկատելիորեն բարելավվել է կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեությունը։ Հանրապետության գյուղատնտեսության աշխատողները, հաղթահարելով անբարենպաստ եղանակի հետևանքով առաջացած մի շարք լուրջ դժվարություններ, 1969 թվականին որոշակի հաջողությունների հասան գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու գործում։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը կազմեց 384 միլիոն ռուբլի կամ 2,4 տոկոսով ավելի նախորդ չորս տարիների տարեկան միջին արտադրությունից։ Ժամկետից շուտ կատարվեց հացահատիկի, բանջարեղենի, խաղողի, մսի մթերումների պլանը։

Գյուղական շրջաններում հաշվետու-ընտրական ժողովները զուգադիպեցին կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրության լայն քննարկման հետ։ Կոլտնտեսային կյանքի օրենքի նկատմամբ հանրապետության գյուղատնտեսության աշխատողների ցուցաբերած հսկայական հետաքրքրության մասին է վկայում այն, որ կանոնադրության նախագծի քննարկմանը մասնակցել են 215 հազար մարդ, որոնցից ավելի քան չորս հազարը արել են կոնկրետ առաջարկություններ։

Կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում էր գտնվում գյուղի աշխատավորների հետագա մոբիլիզացման և նրանց պայքարի հանելու հարցը՝ ՍՄԿԿ XXIII համագումարի, Կենտկոմի պլենումների որոշումները կենսագործելու, մեծ առաջնորդի ծննդյան հոբելյանն արժանավայել դիմավորելու համար։ Ամենուրեք կոմունիստների ուշադրությունը բևեռված էր այնպիսի անհետաձգելի խնդիրների վրա, ինչպես՝ հողագործության կուլտուրայի բարձրացումը և հողօգտագործման բնագավառում պատշաճ կարգ ու կանոնի հաստատումը, տեխնիկայի օգտագործման արդյունավետության բարձրացումը, պարարտանյութերի ճիշտ կիրառումը, ոռոգման աշխատանքների ընդլայնումը, գյուղատնտեսական կուլտուրաների բարձր ու կայուն բերքի ստացումը և անասնաբուծության մթերատվության բարձրացումը։ Բնորոշ է, որ ժողովների մասնակիցները, որպես կանոն, հաշվետու շրջանում կատարված աշխատանքի արդյունքների քննարկումը սերտորեն շաղկապում էին ընթացիկ տնտեսական տարին հաջողությամբ ավարտելու, անասունների օրինակելի ձմեռումն ապահովելու, առաջիկա գարնանացանին նախապատրաստվելու հարցերի հետ։

Պրակտիկան ցույց է տալիս, որ հաջողությունը, առաջին հերթին, ուղեկցում է այն տնտեսություններին, որտեղ կուսակցական-կազմակերպական աշխատանքն անխզելիորեն կապված է այսօրվա հրատապ պահանջների հետ, որտեղ լիովին օգտագործվում են կոլեկտիվի ստեղծագործական հնարավորությունները։ Այսպես, օրինակ, կադրերի ընտրությունն ու տեղաբաշխմանը լրջմիտ մոտեցում ցույց տալու, աշխատանքի հանձնարարված տեղամասի համար կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի մոտ պատասխանատվության զգացում դաստիարակելու շնորհիվ, Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսությունը շարունակ ավելացնում է գյուղատնտեսական արտադրանքը։ Այստեղ 1969 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացել են 200 ցենտներ խաղող։ Միանգամայն հասկանալի է, որ կոլտնտեսության էկոնոմիկայի բոլոր հաջողությունները քաղցրաշենցիները կապում են կուսբյուրոյի գործունեու-



թյան հետ, որը մի քանի տարի է, ինչ գլխավորում է փորձված կազմակերպիչ, դաշտավարական բրիգադայի բրիգադավար Ս. Սարգսյանը։

Կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման, նրանց օգտակար նախաձեռնությունների հմտորեն հաշվառման ու տարածման առումով, աշխատանքի դրական փորձ են կուտակել Վարդենիսի շրջանի կոլտնտեսությունների մի շարք կուսկազմակերպություններ։ Գլխավորելով սոցիալիստական մրցությունը՝ այստեղ կուսակցության բոլոր անդամներն աշխատում են արտադրության վճռական տեղամասերում, իրենց անձնական օրինակով ներգործում կոլեկտիվի մնացած անդամների վրա։ Դրա շնորհիվ էր, որ Ծովակ գյուղի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 24,6 ցենտներ հացահատիկ, զգալիորեն գերակատարեց մսի, կաթի, բրդի արտադրության և պետությանը վաճառելու պլանները։ Բարձր եկամտի շնորհիվ գյուղում կառուցվում են կուլտուր-կենցաղային օբյեկտներ, նոր դպրոց՝ 560 աշակերտի համար, ուսուցիչների տուն և այլ բնակելի շենքեր։

Դրա հետ մեկտեղ, հանրապետությունում քիչ չեն այն կուսկազմակերպությունները, որոնք դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումների ոգով, բավականաչափ ուշադրություն չեն հատկացնում կոնկրետ էկոնոմիկայի պրոբլեմներին, արտադրության կատարելագործման հարցերին։ Դրա հետևանքով մի շարք ձեռնարկություններում ցածր է աշխատանքի արտադրողականությունը, վատ է արմատավորվում նոր տեխնիկան, կան անտնտեսվարության փաստեր, սիստեմատիկաբար թերակատարվում են արտադրական պլանները։ Խոսելով այդ թերությունների մասին՝ կոմունիստներն ամբողջ սրությամբ պահանջեցին ավելի վճռականորեն ու հաստատակամորեն պայքարել անփութության ու անպատասխանատվության դեմ, խստորեն պատժել կուսակցական ու պետական կարգապահությունը խախտողներին։

Գրեթե բոլոր ժողովներում լուրջ ուշադրություն նվիրվեց սոցիալիստական սեփականության պահպանումն ապահովելու հարցին։ Այդ կապակցությամբ կոմունիստները վերլուծեցին այն աշխատանքը, որ կատարել էին կուսակցական օրգանները՝ ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թվականի մարտի 18-ի «Սոցիալիստական սեփականության պահպանումն ապահովելու և վատնումներն ու հափշտակումներն արմատախիլ անելու գործում կուսկազմակերպությունների աշխատանքն ուժեղացնելու մասին» որոշումից, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի XII պլենումի (1969 թվականի փետրվարի 28) որոշումից։ Կոմունիստները նշում էին, որ հանրապետությունում զգալի աշխատանք է կատարված հիշատակված փաստաթղթերում նշված բացասական երևույթները վերացնելու համար։ Կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեներն զգալիորեն ուժեղացրին պայքարը ժողովրդական բարիքը հափշտակողների դեմ, ֆինանսական կարգապահությունը խախտելու, աչքակապության և պետությանը խաբելու երևույթների դեմ։ Դրա հետ միասին ժողովներում խոսք բացվեց այն մասին, որ այդ ուղղությամբ դեռևս շատ աշխատանք կա կատարելու։ Ելույթ ունեցողներն ընդգծում էին, որ անհրաժեշտ է ամենավճռական կերպով բացահայտել և վերացնել սոցիալիստական սեփականության շռայլումներին ու հափշտակումներին նպաստող պատճառները, կանխել օրենքները խախտելու, բյուրոկրատիզմի, քաշքշուկի, կաշառակերության ու գոփողականության ամեն տեսակի դրսևորումները, որոնք կարող են տնտեսական ու բարոյական լուրջ վնաս հասցնել մեր հասարակությանը։

Հարկ է նշել, որ հաշվետու-ընտրական ժողովներին նախապատրաստվելու ընթացքում Հայաստանի կոմկուսի Կենտկոմում հրավիրված քաղկոմ-շրջկոմների քարտուղարների խորհրդակցությունում, քաղաքային ու շրջանային կոմիտեներում տեղի ունեցած հրահանգչական խորհրդակցություններում մատնանշվեց, որ անհրաժեշտ է ամենայն սրությամբ դնել սոցիալիստական սեփականությունը պահպանելու հարցերը, է՛լ ավելի ուժեղացնել պայքարը ժողովրդական բարիքը հափշտակելու և դրանում մեղավոր անձանց դեմ, անշեղորեն կատարել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի XII պլենումի որոշումները։

Հաշվետու-ընտրական ժողովներում զգալի տեղ հատկացվեց կուսկազմակերպությունների գործունեության կարևորագույն բնագավառներից մեկին՝ գաղափարախոսական աշխատանքին։ Կոմունիստները մատնանշում էին, որ վերջին ժամանակներս գաղափարական աշխատանքը կատարվում է ավելի կենտրոնացված, նոր ձևերով ու մեթոդներով։ Կուսկոմիտեների մեծ մասը մշտապես ուշադրության կենտրոնում է պահում գաղափարական-դաստիարակչական, քաղաքական-մասսայական աշխատանքի հարցերը։ Զգալիորեն բարելավվել է քաղաքական ինֆորմացիան, բարձրացել ագիտկոլեկտիվների աշխատանքի մակարդակը։

Ժողովներին տրված զեկուցումներում և նրա մասնակիցների ելույթներում հանգամանորեն վերլուծվեց կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումը, որն ամենուրեք ընթանում է Վ. Ի. Լենինի տեսական ժառանգությունն ուսումնասիրելու նշանաբանով։ Կուսակցական լուսավորության ցանցի ունկնդիրների համար կազմակերպվել են դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, տեսական կոնֆերանսներ, հարց ու պատասխանի երեկոներ։ Ներկայումս մարքս-լենինյան տեսությունն անհատական պլաններով ուսումնասիրում են մոտ 10 հազար կոմունիստ։ Կուսկոմիտեները և սկզբնական կազմակերպությունները տեսական ու մեթոդական ակտիվ օգնություն են ցույց տալիս նրանց, կազմակերպում դասախոսություններ ու կոնսուլտացիաներ։ Դրա հետ միասին նշվեց, որ մի շարք կուսկազմակերպություններում, պատշաճ վերահսկողության բացակայության հետևանքով, շատ կոմունիստներ ինչպես հարկն է չեն զբաղվում իրենց տեսական մակարդակի բարձրացմամբ։ Դաստիարակչական աշխատանքի անբավարար վիճակի, ինքնուրույն ուսուցման վատ կազմակերպման, դասախոսական պրոպագանդայի ցածր մակարդակի մասին խոսվեց Երևանի, Լենինականի, Սևանի, Ախուրյանի և մյուս շրջանների կուսկազմակերպությունների ժողովներում։ Նշվեց, որ քաղուսուցման վիճակը հատկապես անբավարար է տրանսպորտային ու շինարարական մի շարք կազմակերպություններում, ինչպես նաև գիշերային հերթափոխություն ունեցող ձեռնարկություններում։

Շատ կոմունիստներ ընդգծում էին, որ հանրապետության կուսկազմակերպություններն իրենց գաղափարական աշխատանքում զգալիորեն ուժեղացրել են հակահարվածը թշնամական պրոպագանդայի ոտնձգությունների դեմ, սկսել են ավելի մեծ ուշադրություն դարձնել կոմունիստական կուսակցության գաղափարների նկատմամբ սովետական մարդկանց մեջ անսասան վստահություն, կոմունիզմի գործի նկատմամբ անսահման նվիրվածություն, սովետական հայրենասիրության զգացմունք դաստիարակելու հարցերին։ Հանրապետությունում մեծ աշխատանք կատարվեց աշխատավորների կոմունիստական դաստիարակության ասպարեզում, որին նպաստեց այնպիսի միջոց-



առումների կենսագործումը, ինչպես եղբայրական հանրապետությունների կուլտուրայի և արվեստի օրերը, բարեկամության երեկոները, նույնատիպ ձեռնարկությունների փորձի փոխանակումը, եղբայր քաղաքների սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփումը և այլն։

Ինչպես և անցյալ հաշվետու-ընտրական ժողովներում, կարևոր տեղ հատկացվեց ներկուսակցական աշխատանքի հարցերին։ Ժողովներում գոհունակությամբ էր նշվում, որ ղեկավարման լենինյան նորմերի պահպանումը, ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացումն ու կատարելագործումը, ՍՄԿԿ կանոնադրության անշեղ կիրառումը դարձան կուսկազմակերպությունների կյանքի օրենքը։ Կուսակցական աշխատանքը բարելավելու, նրա բովանդակությունը հարստացնելու և ձևերն ու մեթոդները կատարելագործելու վրա բարերար ազդեցություն է գործում կուսկազմակերպությունների քարտուղարների և կուսակտիվի մշտական ուսուցման կազմակերպումը։ Միաժամանակ կոմունիստներն ընդգծում էին, որ անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը ՍՄԿԿ բոլոր անդամների նկատմամբ, ամրապնդել կուսակցական ու պետական կարգապահությունը, խոսում էին լենինյան կուսակցության անդամի բարձր կոչման, աշխատանքում ու կենցաղում նրա անձնական օրինակի նշանակության մասին։ Ցավոք, դեռ պատահում են մարդիկ, որոնց արարքներն արատավորում են կոմունիստի կոչումը, անհամատեղելի են կուսակցության մեջ նրանց մնալու հետ։ Շատերը պահանջեցին ՍՄԿԿ շարքերը մաքրել անարժան ու պատահական մարդկանցից, խիստ տույժի ենթարկել բոլոր նրանց, ովքեր իրենց գործողություններով վնաս են հասցնում կուսակցության հեղինակությանը։ Այդ կապակցությամբ հարց դրվեց ավելի հոգատարությամբ վերաբերվել կուսակցության շարքերի աճին և երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործին։ 1969 թվականին հանրապետության կուսկազմակերպությունն աճեց 4261 մարդով։ Կուսակցության նոր անդամների ճնշող մեծամասնությունն առաջավոր բանվորներ են, կոլտնտեսականներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։ Հաշվետու ժամանակաշրջանում կուսակցության մեջ ընդունվածների 23,4 տոկոսը կանայք են։ Կուսակցության մեջ ընդունելության գործը բարելավելու, երիտասարդ կոմունիստներին դաստիարակելու ասպարեզում դրական աշխատանք են կատարել Երևանի, Լենինականի, Իջևանի, Դիլիջանի կուսկազմակերպությունները, հատկապես Երևանի Կիրովի անվան քիմկոմբինատի, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի սկզբնական կուսկազմակերպությունները։ Սակայն որոշ քաղկոմներ ու շրջկոմներ, մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ կուսակցության շարքերը համալրելու գործում դեռևս անբավարար են վերակառուցել իրենց աշխատանքը ՍՄԿԿ XXIII համագումարի պահանջներին համապատասխան։ Մի քանի ժողովներում փաստեր բերվեցին, թե ինչպես որոշ կազմակերպություններում իջել է պահանջկոտությունը ՍՄԿԿ շարքերն ընդունվողների նկատմամբ, այդ գործում ցուցաբերվել է անթույլատրելի հապճեպություն, խոր ու բազմակողմանի չեն ուսումնասիրվել ընդունվողների քաղաքական ու գործարար հատկությունները։

Իրենց ժողովներում կոմունիստները շատ կոնկրետ առաջարկություններ ու քննադատական դիտողություններ արեցին կուսակցական ու սովետական օրգանների, հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների հասցեին։ Առանձնապես սուր քննադատության ենթարկվեցին շինարարական կազմակերպությունները՝ կառույցներն անհրաժեշտ նյութերով ու մեխանիզմ-

ներով վատ ապահովելու, ցածրորակ աշխատանքի, օբյեկտները և, հատկապես, բնակելի տները շահագործման հանձնելու ժամկետները խախտելու համար։ Արդարացի կշտամբանքի ենթարկվեցին նաև առողջապահության, լուսավորության, կենցաղային սպասարկման, առևտրի, տրանսպորտի և այլ մինիստրությունների գործունեության առանձին կողմեր։

Կազմակերպված, ՍՄԿԿ Կենտկոմի «Ղեկավար կուսակցական օրգանների ընտրությունների անցկացման մասին» հրահանգին լիովին համապատասխան, անցան ղեկավար օրգանների ընտրությունները կուսկազմակերպությունների ճնշող մեծամասնությունում։ Ժողովների մասնակիցները բարձր պատասխանատվություն ցուցաբերեցին՝ բյուրոների ու կոմիտեների նոր կազմում ընտրելով առավել հեղինակավոր և ակտիվ կոմունիստների։ Անցյալ տարվա համեմատությամբ կին քարտուղարների թիվն ավելացավ և կազմեց 26 տոկոս։ Քարտուղարների 46,4 տոկոսն ունի բարձրագույն, 7,6 տոկոսը՝ թերի բարձրագույն և 39,8 տոկոսը՝ միջնակարգ կրթություն։ Այդ թվերը պերճախոս կերպով վկայում են հանրապետության կուսկազմակերպությունում տեղի ունեցած որակական խոր փոփոխությունների, կուսակցության անդամների հանրակրթական մակարդակի զգալի բարձրացման մասին։

Ներկայումս քաղաքային ու շրջանային կոմիտեներն ընդհանրացնում են հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, ուսումնասիրում կոմունիստների առաջարկությունները, կոնկրետ միջոցառումներ մշակում դրանք իրականացնելու համար։ Քննադատական դիտողությունների մանրակրկիտ վերլուծությունը պետք է ընկած լինի սկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեների ու բյուրոների աշխատանքի հիմքում։ Նրանց հիմնական ուշադրությունը պետք է բևեռել հնգամյակի ավարտական տարում մեր առջև ծառացած մեծ ու պատասխանատու խնդիրների վրա։

Դրանցից ամենակարևորը, ինչպես ընդգծեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումը, արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է։ Հնգամյակը հաջողությամբ և ժամկետից շուտ կատարելու համար մենք ունենք բոլոր անհրաժեշտ պայմաններն ու ռեզերվները։ Կուսկազմակերպությունների պարտքն է՝ հմտորեն օգտագործել դրանք, ամեն կերպ նպաստել արտադրության կազմակերպման ու կառավարման սիստեմի կատարելագործմանը, բարձր կազմակերպվածություն ու կարգապահություն ապահովել կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։

Հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները ցուցադրեցին կուսակցական աշխատանքի նոր վերելքը, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը՝ ամենաբարդ խնդիրները լուծելու գործում։ Այդ ժողովները նպաստեցին Հայաստանի աշխատավորների ուժերի հետագա մոբիլիզացմանը՝ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները հաջողությամբ կենսագործելու, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյա տարելիցները արժանավայել դիմավորելու համար։

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԱՌԱՋԱՄԱՐՏԻԿԸ

ՄԻՐՈՅԵ ԱՍԱԴ

«Ռյա թազա» թերթի խմբագիր

Լրացավ ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և Մինիստրների սովետի օրգան «Ռյա թազա» («Նոր ուղի») թերթի առաջին համարի լույսընծայման 40 տարին։

1920 թվականի նոյեմբերի 29-ին հոկտեմբերի ազատարար դրոշը ծածանվեց նաև Հայաստանի վրա։ Բազմաչարչար հայ ժողովրդի հետ միասին ֆիզիկական բնաջնջման վտանգից մեկընդմիշտ փրկվեցին նաև Հայաստանում ապրող քրդերը։ Նրանք ևս ստացան լիակատար ազատություն, ազգային վերածննդի լայն հնարավորություններ։

Հայաստանում սովետական կարգերի հաղթանակից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և կառավարությունը գործնական միջոցներ ձեռնարկեցին՝ վերացնելու քուրդ աշխատավորների տնտեսական ու կուլտուրական դարավոր հետամնացությունը։ Սովետական իշխանության վարած քաղաքականության շնորհիվ քուրդ աշխատավորն սկսեց նստակյաց կյանք վարել, խաշնարածի իր վրանը փոխարինեց քարաշեն բնակարանով։ Քուրդ աշխատավորը վստահ, հաստատակամորեն ոտք դրեց նոր, երջանիկ կյանքի ուղին։

Հանրապետությունում լայն աշխատանք ծավալվեց՝ վերացնելու անգրագիտությունը— սոցիալական այդ մեծ չարիքը։ Այդ ուղղությամբ առանձնապես զգալի գործ կատարվեց ազգային փոքրամասնությունների շրջանում։

РЙА ТӘЗӘ

ОРГАНА КОММӘРК'ӘЗИПА ПКӘ, СОВЕТА Т'ӘWРӘБЛЬНД У СОВЕТА МИНИСТРЕД Р'СС ӘРМӘНИСТАНЕ

«ՌՅԱ ԹԱԶԱ» ՕՐԳԱՆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ

«РЯА ТАЗА» ОРГАН ЦК КПА, ВЕРХОВНОГО СОВЕТА И СОВЕТА МИНИСТРОВ АРМ. ССР

Սովետական Հայաստանում 1921 թվականին, հայերեն տառագրության հիման վրա, ստեղծվեց քրդական այբուբեն, և լույս տեսավ քրդերեն առաջին դասագիրքը *(Շամս)*, որը կազմել էր Լազոն (Հակոբ Ղազարյանը)՝ քուրդ երեխաների կրթության գործի առաջին կազմակերպիչներից մեկը։ Հետագայում, 1929 թ., Սովետական Միությունում ապրող բոլոր քրդերի համար ընտեղծվեց նոր այբուբեն՝ լատինականի հիման վրա, իսկ 1945 թ. այն փոխարինվեց ռուսական այբուբենով։ Այսպիսով, սովետական հողի վրա, քուրդ ժողովուրդն իր բազմադարյան պատմության մեջ առաջին անգամ ունեցավ իր այբուբենը։ Պատմական խոշոր իրադարձություն էր այդ քուրդ աշխատավորների կյանքում։

1921 թվականին, քրդերեն դասագրքի հրապարակումից հետո, հանրապետության համապատասխան օրգան-

ների առջև կանգնեց մեկ ուրիշ, ոչ պակաս կարևոր խնդիր: Քրդական գյուղերում ինչպե՞ս և ո՞ւմ միջոցով կազմակերպել անգրագիտության վերացումը, չէ՞ որ, քրդերի շրջանում չկային շատ թե քիչ գրագետ մարդիկ, որոնց միջոցով հնարավոր լիներ ձեռնամուխ լինել այդ կարևոր խնդրի լուծմանը: Եվ, ահա, այս դժվարին ու շնորհակալ գործն իրենց վրա վերցրին հայ մտավորականության այն ներկայացուցիչները, որոնք տիրապետում էին քրդերենին: Քուրդ աշխատավորները երբեք չեն մոռանա Նշան Ռշտունու, Արամ Մուրադյանի և այլ երախտավորների անունները, որոնք թողնելով քաղաքային կյանքը, մեկնեցին քրդաբնակ շրջանները և քուրդ երեխաների ուսուցման սկիզբը դրին, քրդական գյուղերում մնալով այնքան ժամանակ, մինչև քրդերից իրենց փոխարինողներ պատրաստեցին:

Ձեռնարկված միջոցների շնորհիվ մեկ տասնամյակից էլ պակաս ժամանակամիջոցում քուրդ ժողովրդի տնտեսական և մշակութային կյանքում տեղի ունեցան արմատական փոփոխություններ: 1929 թ. Երևանում քրդերեն լույս տեսան Ի. Մարոգուլովի և Արաբ Շամիլովի *Քրդերեն լեզվի ինքնուսուցում* և Ի. Մարոգուլովի ու Ռ. Դրամբյանի *Լույս*՝ քրդերեն դասագրքերը:

Այս պայմաններում, երբ ստեղծված էր քրդական այբուբենը, առաջին լուրջ քայլերն էին արվել անգրագիտության վերացման ուղղությամբ. կյանքը նոր պահանջներ առաջադրեց: Ժամանակն էր, որ քուրդ աշխատավորներն ունենան իրենց տպագիր օրգանը՝ թերթը: Եվ ահա մեր հանրապետության մայրաքաղաք Երևանում, որ դարձել է քրդական ազգային կադրերի պատրաստման, քրդական մշակույթի զարգացման և քրդագիտության խոշորագույն կենտրոն, 1930 թ. մարտի 25-ին լույս տեսավ «Ռյա թազայի»՝ սովետական քրդերի առաջին թերթի անդրանիկ համարը:

Քուրդ աշխատավորների նորաստեղծ տպագիր օրգանի հրատարակմանը մեծ աջակցություն ցույց տվին քրդերենին տիրապետող հայ մտավորականության լավագույն ներկայացուցիչները (չէ՞ որ դեռևս քուրդ կադրերին մատների վրա կարելի էր հաշվել): Դրա վառ վկայությունն է հենց այն փաստը, որ թերթի առաջին խմբագիրները եղել են հայեր— Հարություն Մկրտչյանը, Գևորգ Պարիսը, Հրաչյա Քոչարը: Թերթին աշխատակցել և թարգմանչական գործում մեծ ջանքեր է ներդրել Ռ. Դրամբյանը: Թերթի պատասխանատու քարտուղարն է եղել շնորհալի լրագրող Բենո Մուրադյանը, որը քաջի մահով ընկավ Մեծ Հայրենականում:

Թերթի առաջին խմբագիրներից է 1918 թվականից կոմունիստական կուսակցության անդամ, սովետական քուրդ գրականության նահապետ, հասարակական-քաղաքական ակտիվ գործիչ, հանրապետության կուլտուրայի վաստակավոր գործիչ՝ Արաբ Շամիլովը:

Շուրջ հինգ տարի թերթի պատասխանատու խմբագիրն է եղել հասարակական ակտիվ գործիչ, կուսակցության հավատարիմ զավակ, գրող, հանգուցյալ Ջարդոյե Գենջոն, որը լուրջ դեր խաղաց քրդական մշակույթի ու գրականության զարգացման գործում: Թերթի պատասխանատու քարտուղարն էր այդ տարիներին տակավին երիտասարդ Ամինե Ավդալը. լինելով սովետական քուրդ գրականության հիմնադիրներից մեկը՝ հետագայում նա դարձավ անվանի գրող, սովետական նշանավոր քրդագետ, գիտական արժեք ներկայացնող մի շարք աշխատությունների, քրդերեն դասագրքերի ու առաջին քրդերեն ուղղագրական բառարանի հեղինակը, արժանացավ հանրապետության վաստակավոր ուսուցչի պատվավոր կոչման. Նրա անունով է այսօր կոչվում Ապարանի շրջանի Ղոնդախսազ գյուղի ութամյա դպրոցը:

1930—1938 թթ. ընթացքում «Ռյա թազան» քաղաքական, լուսավորական, մշակութային լայն գործունեություն ծավալեց հանրապետության քուրդ աշխատավորության շրջանում, կարևոր դեր խաղաց անգրագիտության վերացման, ինչպես նաև գյուղացիներին կոլտնտեսություններում միավորելու գործում:

* * *

Թերթի հրատարակումը լենինյան ազգային քաղաքականության վառ արտահայտություններից մեկն է, Սովետական Միության բազմազգ ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական մշակույթի զարգացման, ժողովուրդների եղբայրական բարեկամության արգասիքը: Այն կարևոր իրադարձություն է ոչ միայն սովետական, այլև մյուս երկրներում ապրող միլիոնավոր քուրդ աշխատավորների կյանքում:

Քուրդ աշխատավորները հրճվանքով ընդունեցին իրենց թերթի՝ «Ռյա թազայի» հրատարակումը և խմբագրությանը հղած բազմաթիվ նամակներում ջերմագին շնորհակալություն էին հայտնում մեծ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությանը և հարազատ սովետական կառավարությանը՝ իրենց նկատմամբ ցուցաբերած հոգատարության համար:

«Ռյա թազայի» հրատարակումը ջերմ խանդավառությամբ ընդունեց նաև եղբայրական հայ ժողովուրդը: Մեծ բանաստեղծ Ավետիք Իսահակյանն այդ առթիվ գրել է. «...Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը քուրդ ժողովրդի համար սարթոնքի նոր ուղի բացեց, քրդերն ունեցան իրենց դպրոցները, իրենց նոր գրականությունը: Ինձ շատ ուրախացնում է քրդերի ամեն մի կուլտուրական և տնտեսական նվաճումը, առաջադիմությունը... «Ռյա թազայի» հրատարակության առիթով մաղթում եմ ձեզ տոկունություն և հաջողություն, մեր եղբայրական քուրդ ժողովրդին մաղթում եմ բարեկեցություն և բախտավորություն»: «...Ինձ միշտ ուրախացրել է քրդական կյանքի ամեն մի հաջողությունը» գրում է Դերենիկ Դեմիրճյանը:

«Ռյա թազայի» հրատարակումը լուրջ արձագանք գտավ արտասահմանի քուրդ աշխատավորության շրջանում: Տարբեր ժամանակներում արտասահմանում հրատարակված քրդերեն թերթերն ու ամսագրերը մեր թերթից բազմիցս արտատպում են սովետական քրդերի կյանքն արտացոլող նյութեր, ինչպես նաև քուրդ գրողների առանձին ստեղծագործություններ: Արտասահմանի քրդերը մեր թերթի միջոցով ծանոթանում են սոցիալիզմի հայրենիքի նվաճումներին, տեղեկանում, թե կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության շնորհիվ զարգացման ինչպիսի մակարդակի են հասել մեր բազմազգ երկրի մեծ ու փոքր բոլոր ժողովուրդները, ինչպես և քուրդ ժողովուրդը:

«Ռյա թազան», շարունակելով մեր մամուլի լենինյան ավանդույթները, լուրջ աշխատանք է կատարում քուրդ աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության, սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու ասպարեզում: Այն իր էջերում ցույց է տալիս սովետական տարիներին քուրդ ժողովրդի կյանքում տեղի ունեցած վիթխարի փոփոխությունները, իր հազարավոր ընթերցողներին պարզաբանում, թե ինչպես քուրդ աշխատավորները, օգտվելով սոցիալիզմի ընձեռած մեծ հնարավորություններից, ռուս, հայ և մեր երկրի մյուս ժողովուրդների եղբայրական օգնությամբ մեծ նվաճումների հասան տնտեսության ու կուլտուրայի մարզերում: Վաղուց անճանաչելի է դարձել քրդական գյուղը, ուր գործում են մասսայական դպրոցներ, ակումբներ, գրադարաններ, մանկական ու բուժհիմնարկներ և այլն: Բազմաթիվ քրդեր ու քրդուհիներ ստացել են բարձրագույն ու միջնակարգ կրթություն, դարձել ուսուցիչ, գյուղատնտես, անասնաբույժ, ինժեներ ու գիտնական: Ներկայումս հարյուրավոր քուրդ տղաներ ու աղջիկներ սովորում են Երևանի ու երկրի այլ քաղաքների բարձրագույն ուսումնական հաստատություններում: Առաջին անգամ Երևանի պետական համալսարանում քրդագիտությունը դարձավ ուսուցման առարկա, արևելագիտության ֆակուլտետում ստեղծվեց քրդագիտության առանձին բաժին:

Հայաստանի գիտությունների ակադեմիայի արևելագիտության սեկտորում ստեղծված է քրդագիտության բաժին, որտեղ յոթ քուրդ գիտնականներ զբաղվում են մեր ժողովրդի պատմության, ազգագրության, լեզվի, ժողովրդական բանահյուսության պրոբլեմային հարցերի ուսումնասիրությամբ և իրենց արժանի ավանդը ներդնում սովետական քրդագիտության զարգացման գործում:

Սովետական իշխանության տարիներին հրապարակ եկավ քուրդ գրողների մի ստվար ջոկատ, որը ոգեշնչված մեր երկրի պատմական հաղթանակներով՝ գովերգում է նորոգ կյանքը, ժողովուրդների լենինյան բարեկամությունը, քուրդ ժողովրդին ազատություն ու երջանկություն պարգևող կոմունիստական կուսակցությունը և նրա հիմ-

նադիր, բոլոր աշխատավորների մեծ առաջնորդ, անմահ Լենինին: Սովետական քուրդ գրողների ճնշող մեծամասնությունն իր առաջին գրական քայլերը կատարել է «Ռյա թազա» թերթում: Թերթը հետագայում էլ նպաստել է նրանց ստեղծագործական կատարելագործմանը, ոգևորել, օգնել:

Մեր հանրապետությունում ամեն տարի քրդերեն լույս են տեսնում գեղարվեստական, քաղաքական գրքեր ու դասագրքեր: Քուրդ աշխատավորների համար երևանյան ռադիոն ամեն օր մեկուկես ժամ տևողությամբ քրդերեն հաղորդումներ է կազմակերպում, հնչում են քրդական երգն ու երաժշտությունը:

Քուրդ ժողովրդի անուրանալի նվաճումն են մեր նորաստեղծ կադրերը, որոնք անձնվեր աշխատանք են կատարում արտադրության, գիտության ու կուլտուրայի բնագավառներում, կուսակցական ու պետական հիմնարկություններում: Շատ քրդեր ու քրդուհիներ ընտրվել են տեղական սովետների, իսկ երկուսը՝ հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ: Ապարանի շրջանի Ջամշլուի սովխոզի առաջավոր կթվորուհի Մըսրիյա Ալին հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ է և հասարակական ակտիվ աշխատանք է կատարում իր օկրուգի ընտրողների շրջանում:

Մեր ժողովրդի մեծ նվաճումների, նոր, երջանիկ կյանքի լուսաբանումը «Ռյա թազան» իր սրբազան գործն է համարում:

* * *

Օգտագործելով մամուլի բազմազան ժանրերը՝ «Ռյա թազան» իր ընթերցողներին ծանոթացնում է մեր մեծ հայրենիքի, մեր ծաղկուն հանրապետության բազմաբովանդակ առօրյային, ինչպես նաև միջազգային կարևոր իրադարձություններին: Թերթն իր հիմնական խնդիրն է համարում ՍՄԿԿ XXIII, Հայաստանի կոմկուսի XXIV համագումարների որոշումների լայն պրոպագանդան: Այն օգնում է կուսակցական կազմակերպություններին՝ մոբիլիզացնելու աշխատավորներին՝ հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության խնդիրները:

Թերթի էջերում մեծ տեղ է տրվում գիտության նոր նվաճումների, արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորների փորձի պրոպագանդմանն ու արմատավորմանը: Ընթերցողների կողմից լավ ընդունելություն գըտան մեխանիզատոր Ալե Խուդոյի (Ապարանի շրջան), ճանաչված կթվորուհիներ Աշխեն Ավետիսյանի, Գուլչա Սմոյի (Շահումյանի շրջան), ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Մաջիտե Մահմադի (Արարատի շրջան) աշխատանքի առաջավոր փորձին նվիրված նյութերը, հանրապետության համաժողովրդական կառույցի՝ Արփա—Սևան շինարարության ինտերնացիոնալ կոլեկտիվի հայրենանվեր աշխատանքն արտացոլող էջերը:

*Խոստացել ես՝ կատարիր, Պատվով կատարենք մեր պարտավորությունները* և այլ վերտառություններով թերթը լուսաբանում է հանրապետության աշխատավորների սոցիալիստական մըրցության ընթացքն ու արդյունքները: Արդեն մի քանի տարի է, ինչ խըմբագրության նախաձեռնությամբ Ապարանի շրջանի Ալագյազի և Սպիտակի շրջանի Գեղարոտի անասնապահական սովխոզների կոլեկտիվները մրցում են իրար հետ: Այդ մրցության ընթացքը պարբերաբար լուսաբանվում է թերթում և, ինչպես նշում են ալագյազցիներն ու գեղարոտցիները, այն օգնում է տնտեսությունների հարստացմանն ու զարգացմանը, ավելի ամրապնդում երկու սովխոզների հայ և քուրդ աշխատավորների եղբայրական բարեկամությունը:

«Ռյա թազայի» էջերում հանդես են գալիս բանվորներ, կոլտնտեսականներ, մտավորականներ, որոնք արծարծում են կարևոր նշանակություն ունեցող, մեր առաջընթացին օգնող հետաքրքրական հարցեր: Թերթում հաճախ հանդես են գալիս հանրապետության մինիստրներ, պետական կոմիտեների նախագահներ, կուսակցության քաղկոմ-շրջկոմների քարտուղարներ, շրջսովետների ու քաղսովետների գործկոմների նախագահներ և ղեկավար այլ աշխատողներ:

*Բրդուհին կոմունիզմի ակտիվ կառուցող է* վերտառությամբ կույզ էջերը համոզիչ ու հետաքրքրական փաստերով ներկայացնում են այն մեծ փոփոխությունները, որ սովետական կարգերի շնորհիվ տեղի են ունեցել նախկինում բոլորի կողմից արհամարհված, նահապետական սովորություններին կոհ դարձած քրդուհու կյանքում: Այդ էջերը պատրաստել էին խմբագրության արտահաստիքային կին բաժնի աշխատողները՝ ուսուցչուհի Սվետլանա Բայլովի ղեկավարությամբ: Երևանի պրոֆտեխնիկական ուսումնարանի վիետնամցի ուսանողներին ռուսաց լեզու է ավանդում սովետական այդ քրդուհին:

Կարելի է մի շարք օրինակներ բերել, թե թերթն ինչպես է օգնել առանձին տնտեսությունների և կազմակերպությունների աշխատանքի բարելավմանը, թերությունների վերացմանը: Թալինի շրջանի Բառոժ գյուղի կոլտնտեսությունում ծանր էր անասնապահական ֆերմայի վիճակը, փչանում էր գյուղատնտեսական տեխնիկան, ընկած էր աշխատանքային կարգապահությունը: Թերթի արտահաստիքային թղթակից Արամե Չաչանը ուսումնասիրեց գործերի վիճակը և հանդես եկավ քննադական հոդվածով: Թալինի շրջանի համապատասխան կազմակերպությունները, կարդալով այն, ավելի ուշադիր հետևեցին հիշյալ տնտեսության գործունեությանը, օգնեցին նրան՝ վերացնելու թերությունները, դուրս գալու այդ վիճակից:

Դրությունը լավ չէր Ապարանի շրջանի Սանգյառ գյուղի 8-ամյա դպրոցում: Ցածր էր ուսման որակը, շրջանավարտները դժվարությամբ էին կարողանում ուսումը շարունակել մյուս դպրոցներում: Խմբագրության աշխատողը եղավ տեղում, ուսումնասիրեց գործերի վիճակը: Պարզվեց, որ մանկավարժական կոլեկտիվում տիրում է ընտանեվարություն, որոշ ուսուցիչներ իրենց պատրաստականությամբ չեն համապատասխանում ներկայացվող պահանջներին: Թերթը բարձրացրեց այս դպրոցի հարցը և դրանից հետո շրջանի ժողովրդական կրթության բաժինը կատարեց կադրերի որոշ փոփոխություն, և դրությունը մասամբ բարելավվեց:

Խմբագրությունն Ապարանի շրջանի քրդական գյուղերի դպրոցներում ուսումնասիրեց քրդերենի ավանդման վիճակը: Շատ թերություններ բացահայտելու հետ մետեղ պարզվեց, որ աշակերտների զգալի մասն ապահովված չէ քրդերեն դասագրքերով, և դա այն ժամանակ, երբ մեծ քանակությամբ դասագրքեր կան «Լույս» հրատարակչության պահեստներում և Ապարանի շրջկենտրոնի գրախանութում: Միաժամանակ պարզվեց, որ ժողովրդական կրթության օրգանները քիչ բան են անում այդ առարկան որակյալ ուսուցիչներով ապահովելու, նրանց մեթոդական և այլ օգնություն ցույց տալու գործում: Թերթի ելույթից հետո հանրապետության լուսավորության մինիստրությունը մի շարք միջոցառումներ իրագործեց՝ բացահայտված թերությունները վերացնելու և ուսումնա-դաստիարակչական աշխատանքն իր արժանի բարձրության վրա դնելու նպատակով:

Թերթն իր շուրջն է համախմբել բազմաթիվ բանգյուղ թղթակիցների, որոնցից աչքի են ընկնում՝ Մամե Սիաբանդը, Գյոզալե Մուսան (Էջմիածին), Զամալե Զորբան, Հակմե Ֆարզը (Ապարան), Աֆոյե Ադեն, Շարիյե Ամըրը (Թալին), Ազիտե Ահմադը (Մասիս), Ազիտե Մնջոն, Սիանոս Հովհաննիսյանը (Աշտարակ) և շատ ուրիշներ. նրանք արծարծում են հետաքրքրական հարցեր, բացահայտում առանձին օղակներում տեղ գտած թերությունները, անտնտեսվարության, աշխատավորների կարիքների ու պահանջների հանդեպ նկատվող անտարբեր, բյուրոկրատական վերաբերմունքը: Բանգյուղթղթակիցների և ակտիվիստների մասնակցությամբ առանձին գյուղական շրջաններում խմբագրությունը կազմակերպել է ստուգայցեր, բացահայտվել են առանձին տնտեսությունների ու կազմակերպությունների աշխատանքներում տեղ գտած թերությունները, օգնել տնտեսությունների ղեկավարներին՝ վերացնելու դրանք:

Խմբագրության աշխատանքում լավ ավանդույթ են դարձել թերթի ընթերցողների խորհրդակցությունները՝ տեղերում: Այդ խորհրդակցություններում ընթերցողները բարձրացնում են կարևոր հարցեր և իրենց խորհուրդներով ու առաջարկություններով օգնում թերթի աշխատանքի հետագա բարելավմանը:

* * *

Թերթի հիմնական թեմաներից է Սովետական Միության ժողովուրդների լենինյան բարեկամությունը՝ մեր ուժի ու հզորության անսպառ աղբյուրը: Մենք ջանում ենք այդ բարեկամությունը լուսաբանել ոչ թե ընդհանուր, դեկլարատիվ բնույթի նյութերով, այլ կյանքից վերցված, ամեն քայլափոխում հանդիպող, ուրախացնող փաստերով:

Իսկ այդպիսիք շատ են ու բազմազան: Առանձնահատուկ տեղ է տրվում Անդրկովկասյան ժողովուրդների եղբայրական բարեկամությանը, մեր երկրի բոլոր ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական զարգացման, նրանց լենինյան բարեկամության կոփման ու ամրապնդման գործում ռուս ժողովրդի պատմական մեծ դերին: Թերթի մի ամբողջ համար է նվիրվել Սովետական Վրաստանին: Վերջերս լույս էջեր նվիրվեցին եղբայրական Ադրբեջանի մայրաքաղաք Բաքվին: Թերթում տպագրվում են նաև Միության մյուս հանրապետություններում ապրող քրդերի կյանքը, կոմունիստական շինարարությանը նրանց մասնակցությունն արտացոլող նյութեր, ցույց է տրվում, թե ինչպես եղբայրական ժողովուրդների օգնությամբ նրանք բարգավաճել ու քայլում են մեր զարգացող կյանքին համընթաց: Հատուկ տեղ է տրվում նաև ռուս, հայ և մյուս ժողովուրդների գրականությունից կատարված թարգմանություններին: Քուրդ ընթերցողն իր մայրենի լեզվով է կարդում Պուշկինի ու Թումանյանի, Մայակովսկու ու Չարենցի, Շևչենկոյի ու Սամեդ Վուրղունի և անվանի շատ այլ գրողների ստեղծագործությունները:

«Ռյա թազա» ունի իր մշտական *Գրական բաժինը, Պոեզիայի անկյունը,* ուր տպագրվում են սովետական քուրդ գրողների ու բանաստեղծների լավագույն գործերը: Թերթը մեծ չափով նպաստում է սովետական քուրդ գրականության զարգացմանը, առանձնահատուկ ուշադրություն նվիրում երիտասարդ ստեղծագործողներին: Ընթերցողը թերթի միջոցով ծանոթացել է քրդական գրականության կլասիկներին՝ Ֆաղիե Տայրանին, Սալայե Ջզիրիին, Ահմադե Խանիին, որին ականավոր գիտնական Հովսեփ Օրբելին իրավամբ դասել է Արևելքի երկու հսկա բանաստեղծների՝ Ֆիրդուսու և Շոթա Ռուսթավելու շարքը:

Թերթի էջերում հաճախակի կարելի է հանդիպել մեր հարուստ բանահյուսության լավագույն նմուշներին: Հետաքրքրական նյութեր են տպագրվում մեր ժողովրդական էպոսի մասին, որն ստեղծվելով դարերի խորքում, արտահայտելով մեր ժողովրդի հոգևոր հարստությունը, այսօր էլ գեղարվեստական մեծ հաճույք է պատճառում մեզ: Թերթը մեծ ծառայություններ ունի գրական քրդերենի զարգացման, քրդերեն տերմինների ստեղծման, ուղղագրության մշակման գործում: Այս բնագավառում մեծ են թերթի, առավել ևս մեր լեզվաբանների անելիքները:

Հայրենական մեծ պատերազմը, որի հաղթական ավարտի 25-ամյակը կտոնենք շուտով, հանդիսացավ մեր երկրի բոլոր ժողովուրդների մեծ քննությունը: Մեր Միության մյուս ժողովուրդների հետ միասին, հայրենիքի պաշտպանությանն ակտիվ մասնակցեցին նաև քուրդ ժողովրդի լավագույն զավակները, որոնցից շատերն ընկան հերոսի մահով: Շատ քուրդ վինվորներ ու ըսպաներ իրենց սխրագործությունների համար ստացան կառավարական պարգևներ, իսկ փոխգնդապետ Սամանդ Սիաբանդովն արժանացավ Սովետական Միության հերոսի պատվավոր կոչման: Հաճախակի անդրադառնալով այդ թեմային՝ թերթը ջանում է վառ պահել մեր հայրենիքի պաշտպանության համար ընկածների հիշատակը: Պարբերաբար նյութեր են տպագրվում Հայրենական պատերազմի մասնակիցների մարտական ու աշխատանքային սխրագործությունների, ինչպես նաև այն քուրդ երիտասարդների մասին, որոնք այսօր ծառայում են սովետական բանակում և իրենց պարտականությունները բարեխղճորեն կատարելու համար արժանանում հրամանատարության խրախուսանքին: Վերոհիշյալ թեմաներով նյութեր հրապարակելու գործում խմբագրությանը մեծ աջակցություն է ցույց տալիս Հայաստանի գիտությունների ակադեմիայի արևելագիտության սեկտորի քրդագիտության բաժնի վարիչ, պատմական գիտությունների թեկնածու Խ. Չատոևը, որը շնորհակալ աշխատանք է կատարում՝ պատրաստելու *Քրդերի մասնակցությունը Հայրենական մեծ պատերազմին* աշխատությունը:

* * *

Սամուլի յուրաքանչյուր օրգանի աշխատանքային հաջողության գրավականը նրա կադրերն են, ստեղծագործական կոլեկտիվը, նրանց տեսական ու մասնագիտական պատրաստությունը: Ուրախությամբ պետք է նշել, որ խմբագրության ստեղծագործական կոլեկտիվի բոլոր անդամներն ունեն բարձրագույն կրթություն: Մենք չենք մոռանում և ըստ արժանվույն գնահատում ենք այն բեղմնավոր ու շնորհակալ գործունեությունը, որ ծավալեցին խմբագրության նախկին աշխատողները, հատկապես թերթի պատասխանատու քարտուղար, անվանի գրող և քրդագետ, գիտությունների դոկտոր, Երևանի պետական համալսարանի պրոֆեսոր Հաջիե Ջնդին: Խմբագրության աշխատողներին մեծ ուրախություն է պատճառում, որ մեր կոլեկտիվի նախկին անդամներ Շաքրոյե Խուդոն, Կառլենե Չաչանին և Շարաֆե Աշիրը դարձել են գիտության թեկնածուներ և ուսումնասիրում են մեր ժողովրդի պատմությունը: Խմբագրության ներկա աշխատողներից շատերն ունեն հրատարակված գրքեր:

* * *

Մենք քաջ գիտակցում ենք, որ դեռևս մեր առջև ծառացած են բարդ խնդիրներ: Անասնաբուծության և գյուղատնտեսության բնագավառում խոշոր անելիքներ ունեն նաև քուրդ աշխատավորները: Բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը, իջեցնել ապրանքի ինքնարժեքը և մեքենայացնել աշխատատար պրոցեսները: Սրանցից բացի, լուրջ են մեր անելիքները նոր սերնդի դաստիարակության ասպարեզում: Սա նշանակում է՝ ուժեղացնել պայքարն այն նախապաշարումների դեմ, որոնք խանգարում են քուրդ աշխատավորության բոլոր խավերին, հատկապես կանանց, ակտիվորեն մասնակցելու հասարակական-քաղաքական կյանքին: Մեր նպատակն է մնում՝ սովորեցնել երիտասարդ սերնդին կոմունիզմի կառուցումը, որով և կատարած կլինենք մեծ Լենինի պատգամը:

«Ռյա թազայի» առաջին համարի լույսընծայման 40-ամյակը մենք նշում ենք մեծ հոբելյանի՝ Վլադիմիր Իլյիչի ծննդյան 100-ամյակի նախօրյակին: Հայ ժողովրդի հետ միասին, քուրդ աշխատավորները եռանդուն նախապատրաստվում են՝ աշխատանքային նորանոր հաղթանակներով նշելու այդ մեծ տոնը:

Լենինյան թեման մեզ համար ամենագլխավորն է այժմ: Թերթը տեսական ու պրոպագանդիստական բազմաթիվ հոդվածներ է տպագրել մեծ առաջնորդի կյանքի ու հեղափոխական գործունեության վերաբերյալ: Հրապարակվել են հետաքրքրական շատ նյութեր նաև այն մասին, թե ինչ է տվել սովետական մարդկանց լենինյան գաղափարների կենսագործումը: Քուրդ բանվորը, կոլտնտեսականը, մտավորականն իր երջանիկ ներկայի, ավելի պայծառ ապագայի համար խորապես երախտապարտ է մեր փառապանծ կոմունիստական կուսակցությանը, որն անշեղորեն կենսագործելով անմահ Լենինի գաղափարները՝ սովետական ժողովրդին տանում է դեպի կոմունիզմ:

Զինված մեծ Լենինի ամենահաղթ գաղափարներով, «Ռյա թազա» թերթի խմբագրության կոլեկտիվը կանի ամեն ինչ, որպեսզի թերթն այսուհետև էլ պատվով կատարի կոլեկտիվ ագիտատորի, պրոպագանդիստի ու կազմակերպչի իր դերը:



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՔԱՐՏՈՒՂԱՐՆԵՐԻՆ

# ԻՆՉՊԵՍ ՎԱՐԵԼ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ

*Կուսակցական տնտեսությունը կուսկազմակերպության հայելին է։ Դրա ճիշտ և օրինակելի վարումը կարևոր նշանակություն ունի կուսակցության կյանքում ընդհանրապես, կուսակցական-կազմակերպական աշխատանքում՝ մասնավորապես։ Այն հնարավորություն է ընձեռում տեսնելու կուսկազմակերպության կյանքում տեղի ունեցած քանակական և որակական փոփոխությունները, ուսումնասիրելու և ընդհանրացնելու դրա գործունեության դրական երևույթները, ճանաչելու կոմունիստներին և նրանց ճիշտ տեղաբաշխելու արտադրության տարբեր ճյուղերում։ Կուսակցական տնտեսությունը նպաստում է կուսակցական աշխատանքի բովանդակության հարստացման, կոմունիստների դաստիարակության, կուսակցական կարգապահության ամրապնդմանը, օգնում կարգավորելու ՍՄԿԿ շարքերի աճը, կանխում պատահական տարրերի ներթափանցումը կուսակցության մեջ։*

*Կուսակցական տնտեսությունն իր մեջ ներառնում է սկզբնական կուսկազմակերպության, կուսկոմիտեի, կուսբյուրոյի աշխատանքի պլանները, կուսակցական ընդհանուր ժողովների, կուսկոմիտեի և կուսբյուրոյի նիստերի արձանագրությունները, ՍՄԿԿ շարքերի ընդունելության ու անձնական քննարկման (բողոքարկման) գործերը, կոմունիստների հաշվառման ցուցակներն ու անձնական հաշվառման քարտերը, վերադաս կուսակցական օրգաններից ստացված փաստաթղթերը, անդամավճարների մուծման տեղեկագրերը, հաշվետվությունները, դրամական փաստաթղթերը, աշխատավորներից ստացված դիմումները և այլն։ Կուսկազմակերպության գործերի քանակը պայմանավորված է նրա աշխատանքի ծավալով ու բնույթով։ Չի բացառվում, որ կուսկազմակերպության քարտուղարը, բացի հիշատակված, բոլորի համար պարտադիր գործերից, անհրաժեշտության դեպքում, ունենա նաև ուրիշ գործեր։*

*Այսպիսով, կուսակցական տնտեսության մեջ մտնում են սկզբնական կուսկազմակերպության բոլոր փաստաթղթերը։ Դրանք պատշաճ ձևակերպելու և պահպանելու, կուսակցական տնտեսությունը ճիշտ վարելու համար անմի-*



*ջականորեն պատասխանատու են սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, իսկ քաղկոմ-շրջկոմներում՝ առաջին քարտուղարները։*

**Կուսժողովների, կուսկոմիտեների և կուսբյուրոների նիստերի արձանագրություններ։** *Արձանագրություններն արտացոլում են ժողովներում, կոմիտեի և բյուրոյի նիստերում քննարկված հարցերի ամբողջ պատկերը։ Դրանք ինֆորմացիայի կարևոր աղբյուր են վերադաս օրգանների համար և ակնառու ցույց են տալիս, թե ինչ հարցերով են զբաղվում կուսկազմակերպությունները, արդյոք ճի՞շտ են վճռում իրենց առջև դրված խնդիրները և այլն։ Արձանագրությունը շատ կարևոր փաստաթուղթ է, որը պետք է ձևակերպել օբյեկտիվ ու ճիշտ, հակիրճ ու գրագետ։ Այնտեղ հարկավոր է պարզորոշ ու լրիվ արտահայտել կոմունիստների ելույթները, առաջարկությունները, դիտողությունները, կարծիքները, ժողովի, կոմիտեի ու բյուրոյի նիստերի կողմից ընդունված որոշումները։*

*Կուսժողովների արձանագրությունների ձևակերպման միասնական ձևը գոյություն չունի, բայց կան տվյալներ, որոնք պետք է անպայման լինեն յուրաքանչյուր ժողովի ու նիստի արձանագրության մեջ։ Այսպես, պահանջվում է արձանագրության մեջ նշել հերթական համարը (ընդ որում, առաջին համարը կրում է հաշվետու-ընտրական ժողովից հետո կայացած ժողովի արձանագրությունը), կուսկազմակերպության անունը, ժողովի օրը, ամիսը և տարեթիվը, հիշատակել, թե կուսկազմակերպությունում հաշվառման մեջ գտնվող ՍՄԿԿ անդամներից և անդամության թեկնածուներից քանիսն են մասնակցում ժողովին։ Այնուհետև գրվում է օրակարգը, զեկուցողի անուն-ազգանունը, պաշտոնը, շարադրվում են ժողովում հարցի քննարկմանը մասնակցած կոմունիստների ելույթների կարճ բովանդակությունը, նրանց առաջարկությունները և որոշումը։ Արձանագրությունը վավերացվում է նախագահի, իսկ եթե նախագահություն է ընտրված, ապա՝ նրա անդամների և քարտուղարի ստորագրությամբ։ Կուսկոմիտեի, բյուրոյի նիստերի արձանագրությունները ձևակերպվում են նույն ձևով, միայն այն տարբերությամբ, որ այստեղ նշվում են կոմիտեի կամ բյուրոյի նիստին ներկա գտնվող անդամների անուն-ազգանունները և արձանագրությունը վավերացվում է կոմիտեի կամ բյուրոյի քարտուղարի ստորագրությամբ։*

*Կուսակցական ժողովի, կոմիտեի և բյուրոյի նիստերի որոշման մեջ պետք է իրենց արտահայտությունը գտնեն կոմունիստների կոլեկտիվ կամքը, կազմակերպության վերաբերմունքը այս կամ այն փաստի, իրադարձության նկատմամբ, ինչպես նաև այն կոնկրետ միջոցառումները, որոնք անհրաժեշտ են կոմունիստների առջև ծառացած խնդիրներն իրականացնելու համար։ Որոշման ձևը, անշուշտ, որոշ նշանակություն ունի, բայց կարևորն այն է, որ պարզ լինի, թե ինչից է բխում որոշումն ընդունելու անհրաժեշտությունը, ինչի՞ է ուզում հասնել կուսկազմակերպությունը, ինչպիսի՞ խնդիրներ է ցանկանում լուծել։*

*Կուսկազմակերպությունների կողմից ուսումնասիրվող, քննարկվող հարցերը շատ բազմազան են, հետևաբար, ընդունված որոշումները ևս կարող են բազմազան լինել։ Այդ տեսակետից ձևակերպման միասնական ձև չկա և չի կարող լինել։ Բոլորովին էլ անհրաժեշտ չէ, որ ամեն մի որոշման մեջ անպայման լինի, այսպես կոչված, արձանագրական մաս։ Կամ, եթե ժողովում քննարկվում է վերադաս կուսօրգանի որոշումը, պարտադիր չէ ընդունվող որոշ-*

*ման մեջ կրկնել այն, ինչ արդեն ասված է։ Բավական է որոշման մեջ արտահայտել կուսկազմակերպության վերաբերմունքը տվյալ հարցի նկատմամբ և կոնկրետ նշել, թե ինչ է անհրաժեշտ անել առաջադրված խնդիրները իրոք լուծելու համար։*

*Ելնելով քննարկվող հարցի բնույթից, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում, որոշման մեջ արձանագրական մասի անհրաժեշտությունը կարող է որոշել կուսժողովը։ Կան առանձին հարցեր, որոնց կապակցությամբ անհրաժեշտ է որոշման մեջ նշել ո՛չ միայն կազմակերպության հետագա խնդիրները, այլև համառոտակի հանրագումարի բերել կատարած աշխատանքը, արձանագրել դրականն ու թերությունները։ Այսպիսով, որոշման մեջ կարելի է ունենալ նաև համառոտ արձանագրական մաս։ Օրինակ, սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի արձանագրության որոշման մեջ անհրաժեշտ է գրանցել զեկուցման համառոտ բովանդակությունը, աշխատանքի ինչպես դրական ցուցանիշները, այնպես էլ թերությունները, քանի որ հանրագումարի են բերվում կուսկազմակերպության գործունեության մեկ տարվա արդյունքները։*

*ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցերը քննարկելիս ժողովի արձանագրության մեջ հարկավոր է նշել ինչպես կուսակցության մեջ ընդունվողների, այնպես էլ նրանց երաշխավորողների անկետային համառոտ տվյալները։*

*Կուսժողովի որոշումները պետք է լինեն կարճ, կոնկրետ և գործարար, ցույց տան պատասխանատու անձանց որոշակի խնդիրները և կատարման ժամկետները։ Միշտ պետք է խուսափել ընդհանուր դրույթներից, ցանկություններից և առանձին ֆրազներից, որոնք ոչ մի բան չեն պարտավորեցնում և ոչ մի օգուտ չեն բերում։*

**Կուսկազմակերպության աշխատանքային պլանը։** *Յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպություն անցկացնում է բազմաթիվ միջոցառումներ, որոնք կարող են տալ լավ արդյունքներ, եթե նախապես պլանավորվել են խելացի։ Դրա համար անհրաժեշտ է, որ բոլոր կուսկազմակերպությունները գործեն նախօրոք կազմած, կազմակերպության բյուրոյի նիստում կամ ընդհանուր ժողովում հաստատված աշխատանքային պլանով։ Պլանում պետք է արտացոլվեն առաջիկա ամսվա կամ ամիսների համար ամենակարևոր և գլխավոր հարցերը, որոնք կուսկազմակերպությունից անհապաղ լուծում են պահանջում։ Աշխատանքի պլանը կազմելիս հարկավոր է հաշվի առնել կազմակերպության առանձնահատկությունը։ Տարբեր սկզբնական կուսկազմակերպությունների համար չի կարելի աշխատանքի միատեսակ պլան կազմել, քանի որ յուրաքանչյուր կոլեկտիվ ունի իր ուրույն խնդիրներն ու անելիքները։ Պլանը պետք է լինի կոնկրետ ու ռեալ, հետապնդի որոշակի նպատակ։*

*Կուսկազմակերպության աշխատանքը պլանավորելիս, կանոնադրական պահանջներին համապատասխան, պետք է նախատեսել և առնվազն ամիսը մեկ անգամ հրավիրել կուսակցական ընդհանուր ժողով և 1—2 անգամ՝ կոմիտեի կամ բյուրոյի նիստ. պլանում նշել ժողովի հրավիրման ժամկետը, օրակարգը, զեկուցողի անուն-ազգանունը, քննարկվելիք հարցը նախապատրաստող հանձնաժողովի կազմը կամ առանձին ընկերների ազգանունները։ Այդպես նշել նաև բյուրոյի նիստերում քննարկվող հարցերը։*

*Պլանում նախատեսվում են նաև այն բոլոր միջոցառումները, որոնք կուսկազմակերպությունը կամ բյուրոն պետք է իրագործեն առաջիկայում։ Այդ միջոցառումներն են՝ զեկուցում-դասախոսությունները, արտադրական խոր-*



*հրդակցությունները, էքսկուրսիաները, կինոնկարների, ներկայացումների կոլեկտիվ դիտումները և այլն։*

**ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների հաշվառման փաստաթղթերն ու հաշվառման միասնական սիստեմը։** *ՍՄԿԿ Կենտկոմի՝ «ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների հաշվառման մասին» նոր հրահանգով սահմանվել է կոմունիստների հաշվառման միասնական սիստեմ։ Կուսկազմակերպության կազմի հաշվառման հիմնական փաստաթուղթը ՍՄԿԿ անդամ-թեկնածուի հաշվառման քարտն է, որն ունի կուսակցական տոմսի կամ թեկնածուական քարտի համարը։ ՍՄԿԿ անդամ-թեկնածուների անհատական հաշվառումը կատարում են կուսակցության քաղկոմ-շրջկոմները՝ ըստ կոմունիստների հաշվառման քարտերի, որոնք պահպանվում են քաղկոմ-շրջկոմներում։ Իսկ սկզբնական կուսկազմակերպություններում կոմունիստների հաշվառումը կատարվում է ցուցակով կամ անհատական հաշվառման քարտերով (մինչև 100 կոմունիստ ունեցող սկզբնական կուսկազմակերպություններում ցուցակով, 100-ից ավելի ունեցողներինը՝ անհատական հաշվառման քարտերով)։*

*Կոմունիստներին հաշվառման վերցնելիս և հաշվառումից հանելիս քաղկոմ-շրջկոմների քարտուղարները պետք է անձամբ ընդունեն նրանց, ստուգեն կուսփաստաթղթերը, կուստոմսը համեմատեն հաշվառման քարտի հետ, պարզեն գրանցումների ճշտությունը, որից հետո միայն լուծեն կոմունիստին հաշվառման վերցնելու կամ հաշվառումից հանելու հարցը։ Ընդ որում, կուսանդամը կամ թեկնածուն հաշվառումից դուրս գալու համար նախապես դիմում է սկզբնական կուսկազմակերպությանը։ Դիմումը կուսկոմիտեի, կուսբյուրոյի կամ սկզբնական կուսկազմակերպության ժողովի եզրակացությամբ ներկայացվում է շրջկոմ-քաղկոմ, որտեղ այն 10 օրվա ընթացքում իր դրական կամ բացասական լուծումն է ստանում։ Հաշվառումից դուրս եկող կոմունիստին տրվում է դուրսգրման կտրոն՝ ստորագրված կուսշրջկոմի քարտուղարի կողմից։ Կոմունիստն այդ կտրոնը գալու երկրորդ օրը հանձնում է մյուս քաղկոմ-շրջկոմի քարտուղարին։ Վերջինս ստուգում է այն և թույլատրում հաշվառման վերցնել համապատասխան սկզբնական կուսկազմակերպությունում։*

*Կազմակերպություն եկած կոմունիստին հաշվառման է վերցնում սկզբնական կուսկազմակերպության քարտուղարը կամ նրա տեղակալը՝ կուստոմսի կամ թեկնածուական քարտի ու կցման կտրոնի հիման վրա։ Հաշվառման վերցնելիս նրանք համեմատում են կուստոմսը կամ թեկնածուական քարտը կցման կտրոնի տվյալների հետ, պարզում նախորդ աշխատանքի բնույթը, կատարած կուսակցական հանձնարարությունները։ Այնուհետև հաշվառման տվյալները գրանցվում են ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների հաշվառման ցուցակում, իսկ եթե կազմակերպությունը մեծ է, նրա համար լրացվում է անհատական հաշվառման քարտ։ Կազմակերպության քարտուղարը կոմունիստի ներկայացրած կցման կտրոնը ետ է վերադարձնում քաղկոմ-շրջկոմին, նշում կոմունիստին հաշվառման վերցնելու մասին և ցույց տալիս զբաղեցրած պաշտոնը կամ աշխատանքի բնույթը։*

*ՍՄԿԿ շարքերը նոր ընդունված անդամ-թեկնածուներն սկզբնական կուսկազմակերպությունում հաշվառման են վերցվում քաղկոմ-շրջկոմների հաստատումից անմիջապես հետո, անկախ նրանից՝ կուսակցական փաստաթղթերն ստացվել են, թե ոչ։*

*Կազմակերպությունից մեկնած կոմունիստներին հաշվառումից հանելու*

մասին նշում է արվում ցուցակում կամ անհատական հաշվառման քարտում։ Իսկ կուսակցությունից վտարվածները և դուրս մնացածները հաշվառումից հանվում են միմիայն քաղկոմ-շրջկոմից համապատասխան տեղեկություն ստանալուց հետո։ Կոմունիստի մահվան դեպքում սկզբնական կուսկազմակերպության քարտուղարը հայտնում է քաղկոմ-շրջկոմ և հանձնում մահացածի կուստոմսը կամ թեկնածուական քարտը։

Կուսկազմակերպության քարտուղարը ժողովի ժամանակ կոմունիստներին տեղյակ է պահում, թե ով երբ է հաշվառման վերցվել և ինչ պատճառով է հաշվառումից հանվել։

Կոմունիստի կյանքում տեղի ունեցած ամեն մի փոփոխություն պետք է արտացոլվի նրա հաշվառման քարտում։ Դրա համար հարկավոր է, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ-թեկնածու իր կյանքում տեղի ունեցած փոփոխությունների մասին ժամանակին հայտնի կուսկազմակերպության քարտուղարին, իսկ վերջինս բոլոր փոփոխությունները, որոնք վերաբերում են աշխատանքային գործունեությանը, կրթությանը, գիտական կոչման ստացմանը, գիտական աշխատությունների հրատարակմանը, գյուտերին և հայտնագործություններին, նոր լեզուների տիրապետմանը, պատվավոր և հերթական զինվորական կոչումներ, կառավարական պարգևներ ստանալուն, կուսակցական տույժի ենթարկմանը կամ տույժը հանելուն և այլն, սիստեմատիկաբար և սահմանված ձևով հաղորդի քաղկոմ-շրջկոմին։ Քաղկոմ-շրջկոմն էլ պետք է դրանք գրանցի կոմունիստների անձնական քարտերում և, նոր հրահանգի համաձայն, ոչ պակաս կես տարին մեկ անգամ, համեմատի շրջկոմի հաշվառման տվյալները սկզբնական կուսկազմակերպությունների տվյալների հետ։

Բացառիկ կարևոր նշանակություն ունի կոմունիստների հաշվառման ճիշտ դրվածքը։ ՍՄԿԿ յուրաքանչյուր անդամ-թեկնածու, կազմակերպության քարտուղար պետք է խստորեն պահպանեն կանոնադրական պահանջները, իմանան իրենց պարտականությունները կուսակցական հաշվառման ասպարեզում և անշեղորեն կատարեն դրանք։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները պարտավոր են կոմունիստներին սիստեմատիկաբար պարզաբանել կուսակցական տնտեսության նկատմամբ նրանց ունեցած պարտականությունները, որպեսզի կազմակերպություն եկածները շրջկոմում ժամանակին հաշվառման ենթարկվեն, կազմակերպությունից մեկնածները դուրս գան հաշվառումից։ Իսկ կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է պարբերաբար ստուգեն հաշվառման վիճակը սկզբնական կուսկազմակերպություններում, օգնեն քարտուղարներին՝ հաշվառման միասնական սիստեմի պահանջները ըստ պատշաճի կատարելու գործում։

**Կուսակցական անդամավճարը:** ՍՄԿԿ կանոնադրությամբ կուսանդամավճարի ժամանակին մուծումը կուսակցության հետ ունեցած կոմունիստի կապի արտահայտություններից մեկն է։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, կոմունիստներից կուսակցական անդամավճար գանձելիս, պետք է խստորեն ղեկավարվեն ՍՄԿԿ Կենտկոմի համապատասխան հրահանգով, անդամավճար ընդունեն միմիայն այն կոմունիստներից, որոնք կազմակերպության հաշվառման մեջ են։

Կուսանդամավճարը գանձում է անձամբ սկզբնական կուսկազմակերպության քարտուղարը կամ նրա տեղակալը, իսկ 50-ից ավելի կոմունիստ ունե-



ցող կազմակերպություններում, քաղկոմ-շրջկոմների թույլտվությամբ՝ արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարները։

Անդամավճարների մուծման տեղեկագիրը բացվում է յուրաքանչյուր ամսվա առաջին օրը և փակվում վերջին օրը։ Հաշվետու ամսվա սկզբում, այբբենական կարգով գրանցվում են տվյալ կուսկազմակերպությունում հաշվառման մեջ գտնվող ՍՄԿԿ բոլոր անդամ-թեկնածուները, նշվում է վերջին այն ամիսը, որի համար կոմունիստը մուծել է անդամավճար, իսկ հաջորդ սյունակները լրացվում են անդամավճարները մուծելիս։ Կուսկազմակերպության քարտուղարը պետք է ընդունած գումարը գրանցի կոմունիստի կուսակցական տոմսում կամ թեկնածուական քարտում և համապատասխան տեղեկագրում (ձև № 1)։

Անդամավճարների մուծման տեղեկագրում պարտք է նշվում այն կոմունիստների անվան դիմաց, որոնք հաշվետու ամսում անդամավճար չեն մուծել անցած ամիսների համար։ Օրինակ, եթե հաշվետու ամիսը հունիսն է, ապա մայիսի պարտքը կհաշվվի մեկ ամիս, ապրիլինը և մայիսինը՝ 2 ամիս և այլն։

Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները մուտք եղած անդամավճարը լրիվ մուծում են խնայդրամարկղ, հաշվետու ամսվա համար կազմում ընդհանուր հաշվետվություն և այն ներկայացնում կուսակցության շրջկոմ կամ քաղկոմ հաջորդ ամսվա 10-ից ոչ ուշ, իսկ վերջիններս եռամսյակը մեկ անգամ՝ Կենտկոմ, ոչ ուշ հաշվետու եռամսյակին հաջորդող ամսվա 15-ին։

Ցանկալի է, որ անդամավճարների գանձման արդյունքները պարբերաբար քննարկվեն և հաստատվեն սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, կուսկոմիտեների և բյուրոների նիստերում, ինչպես նաև կուսշրջկոմների և քաղկոմների բյուրոների նիստերում։

Կուսակցական կազմակերպության քարտուղարն առանձին գործ պետք է ունենա աշխատավորների դիմումների, նամակների և բողոքների համար, որոնք հասցեագրված են իրեն, բյուրոյին կամ ուղարկված են վերադաս կուսօրգանների, խմբագրությունների և մյուս կազմակերպությունների կողմից։

Կուսակցական տնտեսությունը կուսակցական աշխատանքի կարևոր բնագավառ է։ Դրանով կարելի է ճիշտ գնահատել յուրաքանչյուր սկզբնական կազմակերպության գործունեությունը։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների, քաղկոմ-շրջկոմների ղեկավար աշխատողների խնդիրն է՝ առանձնակի ուշադրություն նվիրել կուսակցական տնտեսության կարգավորմանը, հետևողականորեն կատարել կոմունիստների հաշվառման, կուսակցական փաստաթղթերը ձևակերպելու և պահպանելու, անդամավճարները գանձելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգների պահանջները։ Կուսակցական տնտեսության ճիշտ վարումը կուսակցական-կազմակերպական աշխատանքը բարելավելու կարևոր պայման է։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԽԹԱՆՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Մարքսը, Էնգելսը, Լենինը ուսուցանում են, որ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում մարդկանց գործունեության շարժառիթը նրանց շահերն են։ Ուստի, նյութական և բարոյական շահագրգռվածության հարցերի ճիշտ լուծումը ինչպես գործնական, այնպես էլ քաղաքական խոշոր նշանակություն ունի, որովհետև դրանից է կախված ո՛չ միայն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը, այլև ամբողջ սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացումը։

Ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններում, որտեղ բազմաթիվ աշխատողներ միմյանց հետ կապված են արտադրության միասնական տեխնոլոգիական պրոցեսով, անհատի աշխատանքի արդյունքը շատ բանով պայմանավորված է կոլեկտիվի աշխատանքով, արտադրապրոցեսի կազմակերպման մակարդակով։ Արտադրաուժերի զարգացման հետ միասին, աշխատանքի արդյունքը վերածվում է ողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքի։

Առանձին աշխատողի աշխատանքի ներդրումը հասարակական արտադրության մեջ, ավելի ու ավելի է կախման մեջ դրվում ուրիշների աշխատանքային ներդրումից, որոնց հետ նա կապված է արտադրության պրոցեսի միասնությամբ։ Առանձին կոլեկտիվում անձնական շահերը միահյուսվում և դրսևորվում են որպես կոլեկտիվի շահ։ Այստեղից էլ առաջ է գալիս կոլեկտիվ նյութական շահը սոցիալիզմի ժամանակ։ Այդ շահը հանդես է գալիս բրիգադայի, արտադրամասի, ձեռնարկության մասշտաբով։ Այլ կերպ, կոլեկտիվ նյութական շահի հիմքում ընկած է նաև անձնական նյութական շահը։

Սոցիալիստական հասարակության զարգացման ամբողջ շրջանում աշխատանքի նյութական խթանման անձնական, կոլեկտիվ և հասարակական ձևերը գործել և գործում են իրենց փոխադարձ կապի ու միասնության մեջ, սակայն դրա տարբեր փուլերում այդ ձևերից որևէ մեկը գերակշռող դեր է ունենում։ Այսպես, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման շրջանում, առանց թուլացնելու աշխատանքի նյութական խթանման անձնական և հասարակական ձևերը, լայն չափով տարածվել է աշխատանքի նյութական խթանման կոլեկտիվ ձևը։ Այն համապատասխանում է արդի պայմաններին, որովհետև առավելագույն չափով շահագրգռում է աշխատավորներին նախաձեռնություն հանդես բերելու արտադրության զարգացման մեջ, խթանում նրանց



ավելի շատ աշխատել ընդհանուրի բարօրության համար և ծառայում անհատի ու հասարակության շահերի զարգացմանը։

Վ. Ի. Լենինն իր բազմաթիվ երկերում, անդրադառնալով աշխատանքի նկատմամբ նյութական խթանների նշանակությանը, ցույց տվեց, թե որքան մեծ ու կարևոր է դրանց ազդեցությունը նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում։

Ինչպես կազմակերպել մրցությունը աշխատության մեջ Լենինը նշում է, որ սոցիալիզմը հնարավորություն է ընձեռում աշխատավորներին «...ծավալել իրենց ունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անըսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հ. 26, էջ 494)։ Մի այլ առիթով անդրադառնալով այդ հարցին, Վլադիմիր Իլյիչն ընդգծել է, որ սոցիալիզմի ժամանակ անձնական նյութական շահագրգռվածությունը ձեռք է բերում իսկական ուժ միայն այն դեպքում, երբ այն զուգակցվում է մասսաների հեղափոխական խանդավառության հետ, նպաստում նրանց ստեղծագործական նախաձեռնության ծավալմանը, արտադրության կատարելագործմանը։

Մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման շնորհիվ Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրամեքենաշինական գործարանում լայն չափով ծավալվել է ռացիոնալիզատորական և գյուտարարական շարժումը, ուր ընդգրկված են մոտ 1700 բանվոր, ինժեներա-տեխնիկական աշխատող։ Իրենց արած օգտավետ առաջարկություններով առավելապես աչքի են ընկնում Սերգեյ Համամչյանը, Անատոլի Թովմասյանը, Սերգեյ Ավետիսյանը, Ռաֆիկ Մովսիսյանը, Սերոբ Թեփելիկյանը, Հրաչիկ Մովսիսյանը և ուրիշներ։ Միայն անցյալ տարի ձեռնարկությունում արվել են 1140 ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկություններ, որոնցից 440-ը ներդրվել են արտադրության մեջ։ Դրանց տարեկան պայմանական օգուտը մոտ 800 հազար ռուբլի է։ Անցյալ տարի մոտ 50 հազար ռուբլի հատկացվել է գյուտարարներին, ռացիոնալիզատորներին և նրանց աջակցողներին պարգևատրելու համար։ Շատերն ստացել են 300—400 և նույնիսկ 500 ռուբլի։ Նյութական շահագրգռվածությունը, ինչպես և բարոյական խրախուսանքները խթանում են գյուտարարական և ռացիոնալիզատորական շարժման է՛լ ավելի ծավալմանը։

Սոցիալիստական ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքների բարելավման գործում արտադրական կոլեկտիվի և յուրաքանչյուր աշխատողի նյութական շահագրգռվածության հարցերի ճիշտ ու բազմակողմանի լուծումը խոշոր ազդեցություն է ունենում արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշների, պլանների կատարման վրա։

Սոցիալիստական տնտեսավարության անցած ուղու փորձը ցույց է տալիս, որ արտադրության զարգացման ու աշխատանքի պրոցեսների կատարելագործման վրա ազդում է ոչ միայն վարչական միջոցառումը, այլև արտադրության աշխատողների նյութական և բարոյական շահագրգռվածության բարձրացման մեթոդի կատարելագործումը և իրականացումը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 47-րդ տարեդարձի առթիվ արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ այժմ, ինչպես երբեք, երևում է մեզանում արտադրության զարգացման տնտեսական ազդակների լայն կիրառման անհրաժեշտությունը։ Տնտեսական լծակները պետք է ձեռնարկությանը մղեն՝ ավելի լավ օգտագործելու արտադրաֆոնդերը, ավելի խնայողաբար ծախսելու հումքը և

նյութերը, ավելի արագ արմատավորելու նոր տեխնիկան, կատարելագործելու թողարկվող իրերը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը յուրաքանչյուր ձեռնարկությունում:

Իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ աշխատողների նյութական շահագրգռվածությունը սոցիալիզմի ժամանակ տնտեսական կարևորագույն սկզբունքներից մեկն է, առանց որի անհնար է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բարելավել թողարկվող արտադրանքի որակն ու հուսալիությունը, ռացիոնալ օգտագործել հիմնական ֆոնդերն ու շրջանառու միջոցները, խնայել նյութական և աշխատանքային ծախսումները: Ավելի շատ նյութական բարիքներ արտադրելու և, հետևաբար, ավելի շատ վարձատրվելու համար աշխատողը ձգտում է բարձրացնել իր որակավորումը, տիրապետել նոր տեխնիկային ու տեխնոլոգիային, կատարել ավելի բարդ ու պատասխանատու գործողություններ և առաջադրանքներ, իր աշխատանքով նպաստել արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշների բարելավմանը, արտադրանքի որակի բարձրացմանը:

Այստեղից էլ՝ միջնակարգ և բարձրագույն մասնագիտական կրթություն ստանալու բանվորների ձգտման ուժեղացումը: Այդ բանի վկայությունն է այն փաստը, որ Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանի բանվորներից 1000 հոգի, առանց արտադրությունից կտրվելու, սովորում են տարբեր ուսումնական հաստատություններում: Այդ թվում՝ 409-ը՝ բուհերում, 357-ը՝ տեխնիկումներում, մոտ 300-ը՝ բաներիտ դպրոցներում: Ձեռնարկության կից գործում են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ֆիլիալը, էլեկտրատեխնիկումի ֆիլիալը, բաներիտ դպրոցը:

Նյութական շահագրգռվածության սկզբունքը նպաստում է ձեռնարկությունը մշտական կադրերով ապահովելու և աշխատանքային ուժի հոսունության դեմ պայքարելու գործին: Նյութական շահագրգռվածության անբավարար կազմակերպման, ինչպես և բնակարանային-կենցաղային վատ պայմանների հետևանքով, հաճախ մարդիկ թողնում են աշխատանքը և գնում այլ տեղ: Փոխելով աշխատանքի տեղը, զբաղմունքը և մասնագիտությունը, նրանք նոր տեղում երկար ժամանակ չեն կարողանում յուրացնել տեխնիկան, բարձրացնել որակավորումը: Դրա հետևանքով իջնում է նրանց աշխատանքի արտադրողականությունը:

Որքան լայնորեն և առավել խոր է կիրառվում նյութական շահագրգռվածության սկզբունքը, այնքան ավելի բարձր է լինում աշխատավորական մասսաների ակտիվությունը՝ արտադրության տեխնիկան և տեխնոլոգիան կատարելագործելու, նորագույն մեքենաներ ու սարքեր տեղակայելու գործում: Հայէլեկտրամեքենաշինական գործարանում վերջին տարիներս գործարկվել են բազմաթիվ նորագույն, ավելի կատարյալ հաստոցներ, հոսքային գծեր, որոնք նպաստում են արտադրական առաջադրանքների կատարմանը:

Սոցիալիզմի պայմաններում ձեռնարկության աշխատողների նյութական խրախուսումը տեղի է ունենում աշխատավարձի բարձրացման (աշխատանքի արտադրողականության աճին զուգընթաց) և պարգևատրման տարբեր սիստեմների միջոցով:

Աշխատանքի վճարումը բանվորների և ծառայողների կյանքի մակարդակի բարձրացման հիմնական աղբյուրն է, տնտեսական այն ամենակարևոր խթանը, որն անմիջականորեն հանգեցնում է արտադրական կոլեկտիվների



աշխատանքային ցուցանիշների լավացմանը: Այս տեսակետից կարևոր նշանակություն ունի բանվորների և ծառայողների աշխատավարձի անընդհատ կարգավորումը և մինիմում աշխատավարձի բարձրացումը: Մեր երկրում մինիմում աշխատավարձը 1968 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, ավելացել է գրեթե 3 անգամ, իսկ բացարձակ գումարը մեկ ամսում՝ 35 ռուբլով, կամ մեկ տարում ավելի քան 450 ռուբլով: Այդ նպատակների համար պետությունը 1968 թ. յուրաքանչյուր ամսում ծախսել է ավելի քան 6 միլիարդ ռուբլի: Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանում միայն մեկ տարում (1968 թ.) բարձրացվել է 4332 բանվոր-ծառայողների մինիմում աշխատավարձը, որի բացարձակ գումարը կազմել է տարեկան 335500 ռուբլի: Սակայն, մեր կարծիքով, մինիմում աշխատավարձի բարձրացման հիմքը աշխատանքի արտադրողականության բարձրացումն ու արտադրության անընդհատ կատարելագործումն է:

Տարիներ շարունակ Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանում արտադրությունը մեծ չափերով տուժում էր կռունկավարների, բեռնակիրների և բեռնակիր-ավտոսայլակավարների վատ աշխատանքի հետևանքով: Նրանք շահագրգռված չէին իրենց աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, պարապուրդները հետևում էին մեկը-մյուսին, դժվարություններ էր առաջանում հատկապես պատրաստի արտադրանքի բարձման, ուղարկման և նյութական արժեքների բեռնաթափման գործում: Այդ կատեգորիայի աշխատողները լավագույն դեպքում փոխում էին իրենց պրոֆեսիան, իսկ մեծ մասամբ՝ ազատվում գործարանից: Տարվա ընթացքում բանվորական ուժի հոսունության մեջ այդ կատեգորիայի բանվորների հոսունությունը կազմում էր 80—85 տոկոս: Մեր կատարած ուսումնասիրությունները ցույց տվին, որ անհրաժեշտ է գործարանում աշխատող կռունկավարների, բեռնակիրների, բեռնակիր-ավտոսայլակավարների աշխատանքի վարձատրությունը ժամանակավարձայինից դարձնել անուղղակի գործարքային, նրանց վարձատրումը կապելով տեղամասի, բրիգադայի ու բաժանմունքի աշխատանքների ծավալի և պլանների կատարման հետ: Այդ միջոցառումը փորձնական կիրառվեց գեներատորների հավաքման № 9, պատրաստի արտադրանքի իրացման № 45 և երկաթուղային տրանսպորտի № 32 արտադրամասերում: Ինչպես այդ, այնպես էլ աշխատանքային պայմանները բարելավելու շնորհիվ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 28 տոկոսով: Իսկ այդ հնարավորություն ընձեռեց հիշյալ կատեգորիայի բանվորների միջին աշխատավարձը 80—90 ռուբլուց հասցնել 120—130 ռուբլու: Այդ երեք արտադրամասերում աշխատող 75 բեռնակիրներից, կռունկավարներից և բեռնակիր-ավտոսայլակավարներից 28 հոգի փոխադրվեցին այլ աշխատանքի, քանի որ 47 հոգին բավական են ապահովելու վերը նշված արտադրամասերի տվյալ կատեգորիաների աշխատանքային պահանջները: Այդ միջոցառման շնորհիվ տարեկան տնտեսվում է 6000 ռուբլի: Հետագայում վարձատրության այդ սիստեմը կիրառվեց նաև գործարանի գրեթե բոլոր արտադրամասերում:

Բացի աշխատավարձի բարձրացումից, սոցիալիզմի պայմաններում արտադրության մեջ աշխատողների նյութական խրախուսումը կատարվում է նաև պարգևատրման տարբեր սիստեմների միջոցով: Դրանց մեջ են մտնում արտադրության աշխատողների պարգևատրումը արտադրական պլանների կատարման և գերակատարման, նոր տեխնիկայի մշակման և ներդրման, արտահանվող արտադրանքի առաջադրանքի կատարման, սոցիալիստական մրցու-

*թյամբ ստանձնած պարտավորությունների կատարման և առաջնություն շահելու համար։ Հայէլեկտրամեքենաշինական գործարանում անցյալ տարի 1 միլիոն 300 հազար ռուբլի հատկացվել է այն բանվորների պարգևատրմանը, որոնք կատարել և գերակատարել են իրենց պլանային առաջադրանքները։ Անձնական խրախուսանքի համար հատկացված այս գումարից բացի, մեծ միջոցներ են ծախսված կոլեկտիվ նպատակների համար, որը ևս բոլոր բանվոր ծառայողներին շահագրգռում է ավելի շատ բարիքներ ստեղծելու։ Այսպես՝ 1969 թվականին, գործարանի հաշվին 261 հոգի բուժվել են սանատորիաներում և հանգստյան տներում։ Ձեռնարկությունում գործող հասարակական սննդի ցանցի վիճակը բարելավելու համար ընդհանուր առմամբ ծախսվել է ավելի քան 130 հազար ռուբլի, որից 73 հազարը հատկացվել է տաք և վնասակար արտադրամասերում աշխատողներին անվճար սնունդ տալու նպատակին։*

*Արտադրության տեխնիկական կատարելագործումը կարևոր նշանակություն ունի մեր էկոնոմիկայի, ձեռնարկությունների շահութաբերության և տնտեսական արդյունավետության բարձր տեմպերի ապահովման գործում։ ՍՄԿԿ XXIII համագումարը հատուկ ուշադրություն է նվիրել տեխնիկական առաջընթացի նյութական խթանման հարցերի ճիշտ ու նպատակային լուծմանը։ Որպեսզի խրախուսվի ձեռնարկության կոլեկտիվի նյութական շահագրգռվածությունը նոր տեխնիկայի ներդրման, նոր արտադրատեսակների յուրացման և դրանց որակի բարձրացման գործում, ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը 1969 թ. ապրիլ ամսին մշակել և ձեռնարկություններին է իջեցրել նոր տեխնիկայի ստեղծման-ներդրման և օգտագործման համար աշխատողների պարգևատրման տիպային նոր կանոնադրությունը։ Ըստ դրա, նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման համար պարգևատրման գումարները հատկացվում են փաստացի այն տնտեսումից, որն անմիջականորեն արտահայտվում է ինքնարժեքի իջեցման, օգուտի ավելացման և տվյալ արտադրատեսակների գնի մեջ։*

*Տեխնիկական առաջընթացի նյութական խթանման շնորհիվ տարեցտարի կատարելագործվում են նոր մեքենաները, արտադրությունից հանվում հնացած, ցածր արտադրողականություն ունեցողները, կառուցվում հոսքային գծեր, մեքենայացվում և ավտոմատացվում արտադրապրոցեսները և այլն։*

*Միայն Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանում վերջին տասը տարում յուրացվել և արտադրության մեջ են ներդրվել 160-ից ավելի նոր տեսակի էլեկտրական մեքենաներ ու շինվածքներ, տրանսֆորմատորներ ու գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, «ԴԱՋՕ» տիպի խոշոր էլեկտրական մեքենաներ, որոնք իրենց հզորությամբ, տնտեսական արդյունավետությամբ գերազանցում են նախկին էլեկտրական մեքենաներին։*

Ա. Դ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ
ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի ասպիրանտ



# ՆԵՐԳՈՐԾԱՐԱՆԱՅԻՆ ՏՆՏՀԱՇՎԱՐԿԸ

*Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցած ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ առավելագույն արդյունք է ստացվում այն ժամանակ, երբ նոր սիստեմի բոլոր սկզբունքները կիրառվում են տնտեսական կյանքի բոլոր օղակներում։ Այդ սկզբունքներից կարևորը՝ ներգործարանային տնտհաշվարկի կիրառումն է։*

*Հատկապես կարևոր է, երբ այն կիրառվում է արտադրամասերի և տեղամասերի գործունեության հիմքում, քանի որ այդտեղ է իրականացվում արտադրության պրոցեսը, հիմք է դրվում դրանց շահութաբեր աշխատանքին, հիմնականում այստեղ են օգտագործվում աշխատանքային, նյութական, ֆինանսական ռեսուրսներն ու արտադրական հզորությունները։*

*Ներգործարանային տնտհաշվարկի հաջող իրականացման հիմնական պայմանը ձեռնարկության աշխատողների նյութական խրախուսման ճիշտ սիստեմի մշակումն ու իրականացումն է։ Մինչ ռեֆորմը արտադրական օպտիմալ պլանների ընդունումն ու կատարումը պատշաճ չափով չէր խրախուսվում, հիմնական և շրջանառու ֆոնդերի օգտագործման ասպարեզում շատ թույլ էր տնտեսական շահագրգռվածությունը։ Մինչև օրս հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում ըստ արժանվույն չի գնահատված խրախուսման ֆոնդերի և պարգևատրումների դերը՝ ինչպես տնտհաշվարկային օղակների, այնպես էլ ամբողջ ձեռնարկության մասշտաբով։ Անբավարար էր խրախուսվում նաև արտադրանքի որակի բարձրացումը, համեմատաբար լավ աշխատող տնտեսական հաշվարկային ստորաբաժանումներում բացակայում էին նյութական խրախուսման կոլեկտիվ ձևերը։ Դրությունը արմատապես փոխվում է տնտեսական նոր ռեֆորմից հետո։ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու նախապատրաստական աշխատանքներն սկսվում էին ձեռնարկություններում գործող ներարտադրական տնտհաշվարկի դրույթների վերանայմամբ և նորի արմատավորմամբ։*

*Ներգործարանային տնտհաշվարկը հաջողությամբ իրականացվում է մեր հանրապետության բազմաթիվ ձեռնարկություններում (Երևանի Հիդրոհաղորդակ, էլեկտրատեխնիկական գործարաններում, տրիկոտաժի № 1 ֆաբրիկայում և այլն)։*

*Այդ տեսակետից որոշակի փորձ ունի Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանը, որը շահագործման է հանձնվել 1958 թ.։ Սկզբում այն արտադրում էր ճշգրիտ տեխնիկական քարեր՝ ժամացույցի և ավտոմատացման սարքերի համար, իսկ հետագայում նաև մետաղահատ հաստոցներ, լուսատեխնիկական սարքավորումներ, կուլտ-կենցաղային ապրանքներ և տեխնոլոգիական այլ հարմարանքներ։*

*Արտադրության այս բազմատեսակությունը մասամբ բարդացնում է արտադրության հաջող կազմակերպումը։ Սակայն տվյալ ձեռնարկությունը ֆինանսատնտեսական և կազմակերպչական գործունեությամբ իր բարձրության*

վրա է։ Լավացել են գործարանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ 1965 թ. համեմատությամբ 1969 թ. համախառն արտադրանքն աճել է 79 տոկոսով։

Դեռևս 1962 թ. ձեռնարկությունը մշակել և կիրառել էր ներգործարանային տնտհաշվարկի հիմնական սկզբունքները։ Պետք է ասել, որ դրան մասամբ նպաստել են տվյալ արտադրության առանձնահատկությունները՝ առանձին արտադրատեսակների արտադրության տեխնոլոգիական փակ ցիկլը, արտադրանքի բազմատեսակությունը և տերիտորիայով բաժանվածությունը։

Բոլոր արտադրամասերն ունեն էներգիայի և ջրի հաշվիչներ, յուրաքանչյուր արտադրամասի, տեղամասի պետ, վարպետ լավ գիտե, թե ինչ է պլանավորված, ինչքան ծախսեր են կատարվում և հետագայում ինչ արդյունք պետք է ստացվի։

Արտադրամասերը պլանավորվում են ըստ արտադրանքի թողարկման (բնա-իրային արտահայտությամբ, ըստ ծավալի և որակի), աշխատանքի պլանի (աշխատավարձի ֆոնդ, միջին աշխատավարձ, աշխատանքի արտադրողականություն) և արտադրանքի ինքնարժեքի։

Արտադրության պլանը (ըստ արտադրամասերի) մշակվում է տարեկան՝ եռամսյակային առումով, հիմնվելով սարքավորումների և ագրեգատների բեռնվածության հաշվարկների, ինչպես նաև հումքի, նյութերի, կիսաֆաբրիկատների պահանջի հաշվառման վրա։ Հետագայում, աշխատանքի ընթացքում, մշակվում են եռամսյակային արտադրական պլաններ՝ ամսական առումով։ Պլանի հիմքում ընկած է արտադրվող արտադրանքի անվանացանկը՝ բնա-իրային արտահայտությամբ։ Այդ պատճառով գործարանում հատուկ ուշադրություն են նվիրում այդ պլանների կազմմանը։

Յուրաքանչյուր արտադրամաս թողարկում է որոշակի տեսակի արտադրանք, որի համապատասխան կազմվում են օրացուցային գրաֆիկներ, անվանացանկային պլան և դրանք հասցնում բանվորական տեղերը։ Նախապատրաստող և օժանդակ արտադրամասերի պլանները կազմվում են ելնելով հիմնական արտադրամասերի արտադրության ծավալից և նկատի ունենալով անհրաժեշտ կուտակումները։ Գործարանի արտադրամասերում սահմանվում է որակի ցուցանիշ՝ ըստ արտադրանքի պիտանի ելքի տոկոսի։

Ճիշտ ներդրած ներգործարանային տնտեսական հաշվարկի շնորհիվ ձեռնարկությունը բավականաչափ օգուտ է ստանում։ Տարեցտարի բարձրանում է արտադրանքի պիտանի ելքի տոկոսը, պահպանվում նյութերի խնայողության ռեժիմը և այլն։ Օրինակ, եթե 1965 թ. պիտանի ելքի միջինը 87 տոկոս էր, ապա 1968-ին այն հասել է 95-ի։ Միայն խոտանի պակասեցման և նյութերի խնայողության ռեժիմի պահպանման շնորհիվ գործարանը 1965 թ. տնտեսել է 19 հազար, 1968-ին՝ 64 հազար ռուբլի։

1966 թվականի երկրորդ եռամսյակից Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի գործարանն անցել է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին. տնտեսավարման աշխատանքներն ուժեղացնելու համար կազմակերպել են տնտեսագիտական լաբորատորիա և աշխատանքի գիտական կազմակերպման բաժին։

Սակայն պետք է նշել, որ տնտեսական նոր ռեֆորմից հետո լրիվ չկատարելագործվեցին ներգործարանային տնտհաշվարկի ձևերը։ Նոր պայմաններում ներգործարանային տնտհաշվարկի միջոցով պետք է ճիշտ որոշել յուրաքանչյուր արտադրամասի և տեղամասի խնդիրներն ու ստացվող շահույթի մեջ դրանց բաժինը։ Մինչև այժմ չեն պլանավորված ֆոնդերի օգտագործման ցուցանիշները, այն դեպքում, երբ տնտեսական նոր ռեֆորմի հիմնական խնդիրներից մեկը արտադրաֆոնդերի լրիվ օգտագործումն է։

Մեր կարծիքով, առանց բացահայտելու յուրաքանչյուր ստորաբաժանման համապատասխան լուման գործարանի ընդհանուր շահույթի և շահութաբերության մեջ, ներգործարանային տնտհաշվարկը չի կարող լրիվ լինել։ Գործարանի աշխատողների ուշադրությունը պետք է հրավիրել այս հարցի վրա։

Այս տեսակետից ուսանելի է Դոնի-Ռոստովի էլեկտրագործիք գործարանի փորձը, որտեղ արտադրամասերին, տեղամասերին բաշխվում են շահույթի ու



շահութաբերության ցուցանիշները. այստեղ նյութական խրախուսման ֆոնդը գոյանում է շահույթից։ Խրախուսման ֆոնդերը կազմվում են նորմատիվների հիման վրա, որոնք սահմանված են՝ ելնելով ամբողջ անձնակազմի աշխատավարձի ֆոնդից։ Հիմնական արտադրամասերի համար նորմատիվները սահմանվում են՝ տարեկան պլանով նախատեսված շահութաբերության և աշխատանքի արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոսի նկատմամբ։

Տրանսպորտային, էներգետիկ, շինարարական տեղամասերի տեխնիկական վերահսկողության բաժնի համար նյութական խրախուսման ֆոնդը որոշվում է ընդհանուր գործարանային ցուցանիշների (իրացման, շահութաբերության) նորմատիվների հիման վրա, եթե կատարված են պլանային տնտհաշվարկային ցուցանիշները։ Այստեղ նյութական խրախուսման ֆոնդն օգտագործվում է՝

ա) բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին, ծառայողներին պարգևատրելու համար՝ համաձայն պարգևատրման դրույթների. բ) աշխատողներին միանվագ խրախուսման, հատկապես կարևոր արտադրական առաջադրանքների կատարման համար (միանվագ պարգևատրման ընդհանուր գումարը չպետք է գերազանցի աշխատավարձի պլանային ֆոնդի մեկ տոկոսը), գ) տեղամասերին, բրիգադներին և առանձին աշխատողների՝ արտադրամասային սոցիալիստական մրցման արդյունքների համար։ Տարվա վերջին պարգևատրումները և միանվագ օգնության միջոցները հատկացվում են կենտրոնացված, ամբողջ գործարանի մասշտաբով և արտադրամասերի ֆոնդերի մեջ չեն մտցվում։ Պարգևատրումները վճարվում են, երբ տնտհաշվարկային հանձնաժողովը հաստատում է արտադրամասի հաշվետվությունը։

Ելնելով ձեռնարկության ստորաբաժանումների նյութական խրախուսման շահերից, անհրաժեշտ է նյութական խրախուսման հետ միաժամանակ օգտագործել նյութական պատասխանատվության տարբեր ձևեր։ Այս տեսակետից ուսանելի է և օրինակելի դարձյալ Դոնի-Ռոստովի էլեկտրագործիք գործարանի կոլեկտիվի փորձը։ Ձեռնարկությունում գործում է դիսպետչերական լուսային ազդանշանը, որն ապահովում է արտադրության անխափան ընթացքը և արագ լուծում ընթացիկ հարցերը։ Լուսային ազդանշանը ղեկավարում է արտադրադիսպետչերական բաժնի պետը։ Անջատիչի միացման սկիզբը և անջատումը գրանցվում է հատուկ գրքում, որից հետո բոլոր արտադրամասերը և բաժինները պատասխանատու են գործարանի համաչափ աշխատանքի խանգարման համար։

Յուրաքանչյուր արտադրամաս և բաժին ունի լուսավորման ցուցանակներ, որոնք ցույց են տալիս, թե որ արտադրամասը կամ բաժինն է կասեցնում մյուսի աշխատանքը. նրանք պարտավոր են գործարանի դիսպետչերի մոտ պարզել, թե ինչ գանգատ է ստացվել և շտապ միջոցառումներ մշակել համաչափ աշխատանքը խանգարող հանգամանքները վերացնելու համար։

Գանգատի առաջացման ժամանակ արտադրամասերի, բաժինների պետերը պետք է նախօրոք համաձայնության գան միմյանց հետ և, եթե գանգատի վերացման ժամկետը չի բավարարում արտադրության պայմաններին, ապա արտադրամասերի, բաժնի պետը հայտնում է գործարանի դիսպետչերին, և վերջինս միացնում է լամպիկը, որը վառվում է այնքան ժամանակ, քանի չի վերացված գանգատի պատճառը։ Բացի առաջին երկու ժամերից, մնացած յուրաքանչյուր ուշացրած ժամի համար կատարվում է ետգանձում, նյութական խրախուսման ֆոնդից՝ սահմանված նորմաներով։

Ներգործարանային տնտեսական հաշվարկը լավագույն արդյունք է տալիս այն դեպքում, երբ այն իրագործվում է նախապատրաստված ու խելացի կերպով։ Ներգործարանային տնտեսական հաշվարկը չի ընդունում շաբլոնն ու ձևամոլությունը, այն պետք է կատարվի ստեղծագործորեն, ելնելով յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի կոնկրետ պայմաններից։

ԱԴԵԼԻՆԱ ԵՍԱՅԱՆ

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏԻ ԽՈՀԵՐ[1]

Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

Ճարտարապետ, վաստակավոր շինարար

*Երևանի մեծացման հետ մեկտեղ բարդանում և կարևոր են դառնում քաղաքաշինական պրոբլեմները, դժվարանում անսամբլների և քաղաքի ճարտարապետական միասնության պահպանումը, զարգացման հարմոնիկ ընթացքը։ Արագ զարգացման շնորհիվ Երևանն ընդարձակվում է ո՛չ միայն լայնությամբ, նոր բնակելի շրջանների (զանգվածների) կառուցման, այլև հարկայնության ավելացման և շենքերի բացարձակ չափերի մեծացման միջոցով (կառուցապատված կենտրոնական մասում), այսինքն՝ քանակական և որակական մեծ փոփոխություններ են կատարվում։*

*Երբ Երևանը կառուցվում էր այժմյան կենտրոնի, այսպես ասած՝ «Թամանյանի գլխավոր հատակագծի» սահմաններում, ճարտարապետության քաղաքաշինական միասնությունն ստեղծվում էր շինանյութի նույնության շնորհիվ (բոլոր շենքերը կառուցվում էին քարից) միևնույն հարկայնության (3—5 հարկանի շենքերով) և ոճային ընդհանրությամբ, որը զարգանում էր ազգային ավանդությունների օգտագործման հիմքի վրա։ Մեծ նշանակություն ունեին նաև հարկերի ստանդարտ (3,5 մետր), ինչպես նաև քարի շարվածքի բարձրությունը (35 սմ)։ Շատ չէին տարբերվում նաև շենքերն իրենց բացարձակ չափերով։ Շենքերի խայտաբղետ, աններդաշնակ ճարտարապետության դեպքում անգամ, ստեղծվում էր միասնական մասշտաբայնություն։ Դրանց մասշտաբներին էր համապատասխանում և փողոցների լայնությունը։*

*Անհամեմատ հեշտ էր կատարվում կառուցապատումը։ Շենքերը դրվում էին կարմիր գծի վրա, «պարագծային» սկզբունքով, կողք-կողքի, գլխավոր ճակատներով զուգահեռ փողոցին։ Կառուցապատման այդ ձևն ունի դրական և բացասական կողմեր, սակայն կարևորն այն է, որ այդ ընդհանուր սկզբունքն ամբողջացնում էր քաղաքի կառուցապատումը։*

*Այժմ չորս-հինգ հարկանի շենքերի կողքին վեր են բարձրանում 9—12—16 հարկանի շենքեր, որոնք նախկիններից տարբերվում են կառուցապատման սկզբունքներով, ճարտարապետական ոճով, շինանյութերով և այլն։*

*Որքանո՞վ է դա օրինաչափ ու նպատակահարմար։*

*Նախ, հարկայնության մասին։ Մեծ վիճաբանություններ են լինում, թե*

[1] *Մայրաքաղաքի շինարարության հեռանկարների մասին հրավիրում ենք արտահայտվելու քաղաքային սովետի գործկոմի նախագահ՝ Գ. Հասրաթյանին։ Խմբ.։*



*բարձրահարկ շենքերը (5-ից բարձր) տեղադրել քաղաքի ցա՞ծր, թե՞ բարձր մասում՝ շրջապատի բարձունքներին (Նորք, Քանաքեռ, Կոնդ, Սարի Թաղ)։ Նման հարցադրումը սխալ է և դոգմատիկ. բարձր շենքը կարելի է կառուցել և՛ ցածր մասում, և՛ բարձունքների վրա։ Դա պայմանավորված է նրանով, թե կառուցապատման ինչպիսի ընդհանուր կոմպոզիցիոն գաղափար է ընդունված և քաղաքաշինական ինչպիսի ֆունկցիա է տրվում բարձրահարկ շենքերին։*

*Շրջապատից ավելի բարձր շենքն առանձնանում և շեշտվում է. դրան շրջապատող տարածությունը «ենթարկում» իրեն (օրինակ, օպերայի շենքը)։ Եթե բարձր շենքերով կառուցապատվի փողոցը՝ քաղաքի ընդհանուր հատակագծում կշեշտվի այդ փողոցը։ Այսպիսով, բարձրությունը տվյալ շենքն ընդհանուր կառուցապատումից առանձնացնելու, շեշտելու և տարածությունն այս կամ այն կերպ կազմակերպելու միջոց է և նպատակասլաց պետք է օգտագործվի։*

*Օպերայի շենքը, որպես քաղաքի կարևոր հասարակական շենք, պետք է շեշտել և դա հարստացնում է քաղաքի ընդհանուր սիլուետը, իսկ ալրակոմբինատը (որը Երևանի ամենաբարձր շենքերից մեկն է) բոլորովին կարիք չկար շեշտելու։ Բնակելի տները, սովորական հասարակական շենքերը հավակնություն չպետք է ունենան շեշտվելու քաղաքի ընդհանուր զանգվածում, բայց կարող են լինել բարձրահարկ և օգտագործվել որոշ կոմպոզիցիոն խնդիրներ լուծելու համար։ Երևանի կենտրոնի կառուցապատման նոր նախագծում բարձր շենքերի տեղադրումը նախատեսված է կոմպոզիցիոն կարևոր առանցքները շեշտելու նպատակով (հաղթանակի կամուրջից Լենինի հրապարակ, Աբովյանով դեպի վեր, գլխավոր պողոտայի, կանաչ գոտու, հյուսիսային ծառուղու վրա)։ Դա ճիշտ է և մտածված, որովհետև իմաստավորված կկազմակերպվի կենտրոնի կառուցապատումը, կբացահայտվի դրա կոմպոզիցիան։*

*Սակայն իրականում ամեն օր, քաղաքի տարբեր կետերում, բոլորովին այլ սկզբունքով (իսկ ավելի ճիշտ առանց սկզբունքի) բարձրանում են բարձրահարկ բնակելի շենքեր, պատահական, անկազմակերպ սիլուետ ստեղծելով քաղաքի այն մասում, որտեղ գտնվում են արդեն ձևավորված և կարևոր անսամբլները ու կառուցապատումը հիմնականում 4—5 հարկանի է։ Դա արվում է կենտրոնում բնակելի մակերեսի խտությունը մեծացնելու համար, բայց ինչո՞ւ այդ չծառայեցնել միաժամանակ քաղաքաշինական խնդիրներ լուծելու նպատակին։ Չպետք է մոռանալ, որ ըստ քաղաքաշինական նորմատիվների, բնակչության խտությունը (անկախ հարկայնությունից) մեկ հեկտարում 800 հոգուց չպետք է անցնի. այդ բանն ապահովվում է բնակելի տարածությունը 8—9 հարկանի շենքերով կառուցապատելիս և ավելի բարձր շենքերով կառուցապատելիս բնակելի մակերեսի խտությունը չի ավելանում, որովհետև իրարից հեռու պետք է կառուցվեն, իսկ ազատ մնացած տարածությունները զբաղեցվեն հասարակական շենքերով ու կանաչով։ Այսպիսով, այն մեծ հույսերը, որ կապվում են հարկայնության բարձրացման հետ, ապարդյուն են։*

*Բացի դրանից, կենտրոնում ավելացնելով բնակչության խտությունը, հնարավոր չէ դպրոցներ, մանկամսուր-մանկապարտեզներ և սպասարկման այլ հիմնարկություններ կառուցել և բակերը նորմալ չափերի հասցնել։ Պարագծային սկզբունքով կառուցապատված հին թաղամասերում կառուցելով նոր շենքեր, չի կարելի դրանք քմահաճ դասավորել, ինչպես դա արված է Սայաթ-Նովայի փողոցի և Մարքսի—Մոսկովյան փողոցների անկյունում։*

Ցավոք, պետք է նշել, որ բարձրահարկ շենքեր կառուցելը կրում է մոդայական բնույթ ո՛չ միայն Երևանում, այլ այնպիսի բնակավայրերում, որտեղ դրա դրդապատճառը չկա։ Նրանք ուզում են հետ չմնալ մայրաքաղաքներից։

Բարձրահարկ շենքերն անհրաժեշտ է կառուցել մտածված. այդ դեպքում միայն դրանք կարող են չվնասել քաղաքի 4—5 հարկանի շենքերով ձևավորված կենտրոնի ամբողջացած անսամբլներին։

Երևանի կենտրոնի քաղաքաշինական կարևոր խնդիրներից են նաև բարեկարգումն ու, հատկապես, կանաչապատումը։

Ամենագեղեցիկ շենքերը, անգամ ամբողջական համալիրները, երբեմն կորցնում են իրենց հմայքը բարեկարգման չնչին թերությունների պատճառով (քանդված ասֆալտը, անհաջող դասավորված ճարտարապետական մանր ձևերը, տրորված կանաչը և այլն)։ Եվ, ընդհակառակը, կարելի է տեսնել, թե ինչպես մի ծառ, մի ծաղկած թուփ, մի հասարակ կանաչ գորգ (գազոն), ջրցայտ գեղեցկացնում են մի ամբողջ հրապարակ, փողոց։

Այս տեսանկյունով քննելով քաղաքի կենտրոնական մասը, կտեսնենք, թե ինչպես շատ գեղեցիկ բարեկարգված և կանաչապատված տեղերում (Աբովյանի փողոցում, Լենինի պողոտայում, պուրակներում ու հրապարակներում) երբեմն շատ մանր թերությունները փչացնում են ամբողջ տպավորությունը։ Հաճախ բարեկարգելու և գեղեցկացնելու նպատակով կենտրոնական փողոցներում, հրապարակներում արվում են ավելորդ զարդարանքներ (գույնզգույն լամպերի շարաններ, ջահեր, ավելորդ և անճաշակ լույսի ռեկլամներ, քանդակներ և այլն) այն ժամանակ, երբ դրանց կողքերն ու ծայրամասերը բարեկարգված չեն։

Շատ կարևոր է նաև փողոցների երթևեկելի մասի և մայթերի երեսպատումը։ Ասֆալտապատումը ձեռնտու է. այն էժան է և արագ է իրականացվում, սակայն հաճախ է վերանորոգվում և թանկ է նստում։ Ասֆալտը հիգիենիկ չէ, վատ է ջրահեռացման համար և տգեղ, անհրապույր տեսք ունի։ Լավ բարեկարգված եվրոպական քաղաքների փողոցները, հրապարակները մեծ մասամբ ունեն քարե երեսապատում (բնական կամ արհեստական)։ Հայաստանը քարերի երկիր է և թվում է, թե ամենից ավելի հավակնություն պետք է ունենա օգտագործելու այդ ամենագործնական ու գեղեցիկ ձևը, մինչդեռ գերադասում ենք ներմուծվող շինանյութը, որն ամեն տեսակետից վատ է քարից։ Հրաբխային շլակով վատ են երեսապատվում նաև պուրակներն ու այգիների ճանապարհները։ Ամեն տարի մեր բոլոր պուրակների ճանապարհները և հրապարակներն են լցնում այդ շլակը, առանց մամլելու և անհրաժեշտ թեքություն տալու, և փաստորեն այդ ծածկը բոլորովին անպետք է։

Թամանյանը Երևանը նախագծել էր որպես քաղաք-այգի. սաեղծված պուրակներն ու այգիները քաղաքի զարդն են, սակայն դրանք վերամշակման կարիք ունեն։ Այգիները միանգամից չեն ստեղծվում, դրանց լավագույն նմուշները տասնյակ և հարյուրավոր տարիների քրտնաջան աշխատանքի արդյունք են։ Այդպես են ստեղծվել Լենինգրադի մերձքաղաքային Պետերգոֆի, Պուշկինոյի, Պավլովսկի հռչակավոր այգիները։ Ամեն տարի հսկայական աշխատանք է տարվում Երևանում նոր տնկումներ կատարելու, ծաղկազարդելու համար։ Սակայն ոչինչ չի արվում գոյություն ունեցող կանաչ տարածության վերամշակման, հատկապես նոսրացման, իսկ որոշ տեղերում՝ վերատնկման ուղղությամբ։ Շատ տեղերում ծառերն այնքան խիտ են, որ չեն աճում, ձգվում են վեր (Կոմունարների, Կիրովի, Ղուկաս Ղուկասյանի այգիները և այլն)։



Մայթերի որոշ հատվածներում չկան ծառեր (չեն ստեղծվել կամ վերացել են) և տարիներ շարունակ չեն լրացվում. օրինակ, Կիրովի փողոցի վրա, Անաստաս Միկոյանի Հայրենական պատերազմի թանգարան Սիմոն Զավարյանի... 

Սոցիալիստական քաղաքների բնորոշ գծերից մեկն այն է, որ դրանց ծայրամասերը նույնպես բարեկարգված են, ինչպես և կենտրոնական մասը։ Երևանն ունի նոր, հսկա արվարձաններ, բնակելի թաղամասեր (Աջափնյակ, Նորք և այլ զանգվածներ), որոնց կառուցապատումն ու բարեկարգումը չպետք է ետ մնան կենտրոնական թաղամասերից։ Եվ իրոք, թե՛ նախագծման և թե չինարարության կազմակերպման տեսակետից նոր զանգվածների կառուցման գործում զգալի են հաջողությունները, բայց կան նաև թերություններ։

Ամենամեծ հաջողությունը շինարարության աննախընթաց մասշտաբներն ու տեմպերն են։ Շինարարության մեքենայացման շնորհիվ նոր թաղամասերում կառուցապատումը կատարվում է կոմպլեքսային ձևով, որը հնարավոր չէ իրագործել քաղաքի կենտրոնական մասում։ Բնակելի շենքերի հետ կառուցվում են նաև բնակչության սպասարկման բոլոր անհրաժեշտ օբյեկտները՝ դպրոց, մանկապարտեզ, խանութներ, ստեղծվում և կանաչապատվում են ընդարձակ բակեր, խաղահրապարակներ և այլն։

Սակայն այս բոլոր առավելությունները լիարժեք չօգտագործվեցին. դրանից առաջացած թերություններն այսօր մտահոգում են մեզ։ Այսպես, տիպային նախագծերն ստեղծվեցին շատ սակավ, իրարից համարյա չտարբերվող ձևերով, որը և պատճառ դարձավ շենքերի տաղտկալի միօրինակության։ Միօրինակությանը նպաստեցին նաև մեր բազմերանգ քարերի ոչ խելացի օգտագործումը։ Աջափնյակում բնակելի և հասարակական շենքերը կառուցվեցին Արթիկ-տուֆի երեսապատումով, իսկ Նորքի զանգվածում առանց որևէ սկըզբունքի, պատահական ձևով օգտագործվել են տարբեր քարեր և երեսապատում։ Մինչդեռ դա պետք է կատարել որոշ կոմպոզիցիոն հնարով՝ ասենք, գույնով առանձնացնել, շեշտել հասարակական շենքերը կամ շենքերի առանձին խմբավորումները և այլն։

Լիարժեք չդրսևորվեց նաև «ազատ» կառուցապատման գաղափարը. մի դեպքում այն վերածվեց շենքերի միալար շարքերի՝ փողոցին ուղղահայաց, կամ այլ դասավորությամբ, մի ուրիշ դեպքում՝ դրանց անկանոն դիրքով, ռելիեֆի քմայքներին մի կերպ հարմարվելու միտումով։ Ազատ հատակագծման ամենակարևոր նախադրյալներից են տեղանքի բնական յուրահատկությունների պահպանումը և զարգացումը (ռելիեֆը՝ բլուրներ, ձորակներ, ժայռեր, մինչև անգամ առանձին քարեր, բուսականություն, ջրային մակերեսներ և այլն)։ Դրա համար անհրաժեշտ է, որ օգտագործվող տիպային շենքերն

ունենան քաղաքաշինական ճկուն հնարավորություններ՝ տեղանքին հարմարվելու տեսակետից։ Մինչդեռ տիպային շենքերն արված են հարթ տեղանքի համար։ Շինարարներին դուր չեն գալիս տեղանքի յուրահատկությունները, որովհետև դրանք դժվարություններ են հարուցում։ Ավելի հեշտ միջոց է հարթել տեղանքը, այսինքն՝ զրկել այն բոլոր յուրահատկություններից։ Օրինակ, Ջերմուկի երկու թաղամասերը բաժանվում էին մի բնական ձորակով, որը կանաչապատվելու և համապատասխան ձևավորվելու դեպքում գեղեցիկ հանգստավայր կարող էր դառնալ։ Սակայն այն աստիճանաբար լցվեց հողով և կորցրեց տեսքը։ Ավելի գեղեցիկ ժայռոտ ձորակ կա Նորքի զանգվածում, որի միջով անցնում է մի գետակ՝ հարուստ ջրվեժներով, լճակներով։ Հատակագծով այդ ձորակը պահպանված է որպես հասարակական հանգստի վայր։ Իսկ ի՞նչ է կատարվում իրականում։ Նույնը, ինչ Ջերմուկում. ձորակն սկսել են լցնել շինարարական հողով և բազալտե մեծ քարերով։ Իսկ դրա կողքին քաղաքի այգեգործներն այգիներում և պուրակներում, հարթ տեղում, հեռվից բերված քարերով ջանում են արհեստական ժայռաբեկորների միջոցով ստեղծել «բնական» գեղեցկություններ, որոնք, իհարկե, խղճուկ տեսք ունեն։

Զանգվածների բարեկարգման և կանաչապատման աշխատանքների ետ մնալու պատճառներից մեկն այն է, որ շինարարները հսկայական տարածություններ են զբաղեցնում շինանյութերի պահեստավորման և «ժամանակավոր» կառուցվածքների համար։

Աջափնյակում, Հալաբյանի անվան փողոցի ամբողջ երկարությամբ, Հրազդանի գեղատեսիլ ափը, որը նախագծով պետք է դառնար Աջափնյակի հանգստի վայր, մինչև այժմ զբաղեցված է շինարարության պահեստներով և կառույցներով։ Նույնն է և Նորքի զանգվածում։

Բնակելի շենքերի արտաքին տեսքը փչացնում են բնակիչների ինքնակամ վերակառուցումները՝ պատշգամբների ապակեպատումը և այլն։

Նշված թերություններն արդարացի դժգոհություն են առաջացնում բնակիչների շրջանում և բացասական վերաբերմունք՝ տիպային նախագծերի ու նոր քաղաքաշինական սկզբունքների հանդեպ։ Սխալ են մտածում նաև որոշ նախագծողներ, որոնք առաջարկում են հրաժարվել տիպային նախագծումից, կառուցման ինդուստրիալ մեթոդներից (պանելային տներից), վերադառնալ շենքերի անհատական նախագծման, որ իբր, միկրոշրջանների կառուցապատման սկզբունքն իրեն չի արդարացնում և այլն։

Սակայն, ինչպես տեսանք, մեղավորը ո՛չ թե առաջադեմ սկզբունքներն են, այլ դրանց ոչ լիարժեք կիրառումը։ Տիպայինը, պանելայինը, կառուցապատման այս կամ այն սկզբունքը ո՛չ թե որակ են, այլ միջոցներ, որոնք համապատասխանում են ժամանակակից տեխնիկական բարձր հնարավորություններին։ Դրանք կարող են լինել և ցածրորակ, և բարձրորակ. դա պայմանավորված է մեր կարողություններով (նախագծման, կառուցման). տիպային և պանելային տները, ազատ հատակագծման օգտագործումը մի տեղ լավ արդյունքներ են տալիս (օրինակ, Լիտվական ՍՍՀ-ում), մի ուրիշ տեղ՝ վատ։

Շատերը բնակելի թաղամասերի միօրինակությունը վերացնելու պրոբլեմի լուծումը գտնում են միայն բարձրահարկ շենքեր կառուցելու սիլուետը հարստացնելու մեջ, ցածրի և բարձրի կոնտրաստ են ստեղծում և այդ օգտագործում ամենուրեք։ Դրա հետևանքը կլինի այն, որ շուտով կունենանք ավելի բարձր մակարդակով միօրինակություն (բայց ոչ որակի, այլ հարկայնության իմաստով)։



Անհրաժեշտ է կառուցել բազմատեսակ տիպային շենքեր, այդ թվում և բարձրահարկ, բայց ոչ ամեն տեղ և նույն ձևով. պետք է հաշվի առնել կոնկրետ պայմանները, քաղաքի մասշտաբային, ֆունկցիոնալ, կլիմայական, տեղանքի, պատմական և այլ յուրահատկություններն ու ստեղծել ուրույն համադրություններ։ Բազմազանությունը բնակելի տների գլխավոր հատկությունը չէ, ընդհակառակը, դրանց համար ավելի բնորոշ է տիպայնությունը, քանի որ ֆունկցիան նույնն է։ Բազմազանությունը բնակելի թաղամասերում պետք է ստեղծվի կառուցապատման տարբեր հնարներով, հասարակական ու տիպային շենքերով, տեղանքի և դրա բարեկարգման յուրահատկություններով, ինչպես նաև բնակելի նույնատիպ շենքերի առանձին մասերի՝ պատշգամբների, մուտքերի և մանրամասների տարբերակներով, զանազան քարերի օգտագործումով։ Չի կարելի նաև նույն չափանիշներով նախագծել Երևանը, Էջմիածինը, Դիլիջանը և Լուսավանը։ «Ազատ» հատակագծման սկզբունքին դիմելով չպետք է հրաժարվել հատակագծման «հին» սկզբունքներից, դրանք ունեն քաղաքացիական իրավունք և գերադասելի են իրենց պատճառաբանված տեղում։

Քաղաքաշինական եղած թերությունները հաղթահարելու համար անհրաժեշտ է, որ բնակելի թաղամասերի հասարակական շենքերի և բարեկարգման աշխատանքների ֆինանսավորումը կատարվի ոչ թե բնակելի շենքերի կառուցմանը զուգահեռ (փաստորեն դրանք արվում են ուշացումով), այլ պետք է դրանից առաջ։ Ուշացումը խանգարում է ո՛չ միայն կյանքի նորմալ ընթացքը, այլև թանկացնում շինարարությունը։ Այնուհետև, տիպային նախագծերի տեսակների և դրանց ճարտարապետական բազմազանությունն ու արտահայտչականությունը պայմանավորված են շինանյութերի արտադրության և շինարարության պրոցեսների կատարելագործմամբ ու որակի բարձրացմամբ, որոնք արգելակում են նախագծումը։

Եթե ապահովվեն այս հիմնական պայմանները և քաղաքաշինական աշխատանքները լրիվ ու ժամանակին կենսագործվեն իրենց բոլոր տարրերով ու բարեկարգման աշխատանքներով, արդյունքները, անկասկած, շատ ավելի ուրախալի կլինեն։

Անհրաժեշտ է, որ կուսակցական, սովետական և այլ ղեկավար օրգաններ, արվեստագետները, հասարակական գործիչներն ավելի սերտորեն կապվեն նախագծողների հետ։ Ճարտարապետությունն այն արվեստն է, որը չի կարող ստեղծվել միայն ճարտարապետի ջանքերով. Նրա իրականացմանը մասնակցում է ողջ հասարակությունը։

Վերջերս ընդունված շինարարության և նախագծային գործի կարգավորմանը վերաբերող պետական որոշումները կօգնեն հարուցված խնդիրների հաջող լուծմանը։

Երևանը, իրավամբ ինքնատիպ, ազգային երանգավորում ունեցող քաղաքի համբավ ունի ամբողջ աշխարհում։ Վերակառուցելով քաղաքի կենտրոնը և ստեղծելով նոր թաղամասեր, անհրաժեշտ է կիրառել քաղաքաշինական ժամանակակից առաջավոր սկզբունքներ, նոր կոմպոզիցիոն հնարներ, հենվելով բարձր տեխնիկայի վրա։ Սակայն նորը պետք է շաղկապված լինի արդեն կառուցվածի հետ, դառնա հնի օրգանական շարունակությունը, հարազատ լինի հողին, մայրաքաղաքի ճարտարապետական ուրույն կերպարին։

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԿԱՆԱՆՑ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Կանանց ազատագրումն իրականացվեց սովետական իշխանության պայմաններում։ Այն իրավամբ կարելի է դասել նոր հասարակարգի խոշորագույն նվաճումների շարքը։

Վ. Ի. Լենինը կանանց ազատագրումը համարում էր սոցիալիստական հեղափոխության կարևորագույն խնդիրներից մեկը։ Ուստի, պատահական չէր, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, երբ մեկը մյուսի հետևից առաջ էին քաշվում և լուծվում մեր երկրի համար խիստ կենսական նշանակություն ունեցող հարցեր, ամենայն սրությամբ դրվում էին նաև կանանց ազատագրման և իրավահավասարության հարցերը։ Դրանց լուծման գործում կարևոր նշանակություն ունեցան 1917 թ. դեկտեմբերի 13-ին ընդունված «Մոր և մանկան պաշտպանության» դեկրետը, 1918 թ. հոկտեմբերի 31-ին սահմանված «Աշխատավորության սոցիալական ապահովության մասին» նոր կարգը և դրանց հաջորդող աշխատանքային այլ օրենսդրությունները։

1919 թ. նոյեմբերի 6-ին Սովետական իշխանություն և կնոջ դրությունը հոդվածում Վ. Ի. Լենինը գրում էր. «Երկու տարվա ընթացքում Սովետական իշխանությունը Եվրոպայի ամենահետամնաց երկրներից մեկում կնոջ ազատագրման համար, «ուժեղ» սեռի հետ նրա հավասարության համար այնքան բան է արել, որքան 130 տարվա ընթացքում չեն արել ամբողջ աշխարհի առաջավոր, լուսավորված, «դեմոկրատական» բոլոր հանրապետությունները միասին» (Երկեր, հ. 30, էջ 133)։

Լենինը միաժամանակ նշում էր, որ այդ ամենը միայն գործի սկիզբն է, որ օրենքով ազատությունը դեռ ազատություն չէ կյանքում։ Այլ կերպ ասած, դա դեռ հնարավորություն է, որը ժամանակի ընթացքում միայն հնարավոր կլինի իրականության վերածել։

Ահա թե ինչու կանանց իսկական ազատագրման հարցերը միշտ եղել են կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում։ Դրանով պետք է բացատրել այն հաջողությունները, որոնք մեր երկրում ձեռք են բերվել այդ բնագավառում։ Բավական է ասել, որ կանանց հասարակական արտադրության ոլորտն ընդգրկելու մասշտաբների տեսակետից այսօր ՍՍՀՄ-ն ամենաառաջնակարգ երկիրն է աշխարհում։

Կանանց ազատագրման լենինյան ծրագրի իրականացման գործում հաջողությունները մեծ են միութենական բոլոր հանրապետություններում, դրանց թվում և Սովետական Հայաստանում։ Այժմ Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ չկա մի բնագավառ, ուր մեծ կամ փոքր չափով չկիրառվի կանանց աշխատանքը։ Այսպես, նրանք կազմում են Հայաստանի արդյունաբերության մեջ զբաղված բանվոր-ծառայողների 42 տոկոսը, գյուղատնտեսության մեջ զբաղվածների մոտ կեսը։ Որոշ բնագավառներում կանանց թիվն ավելի մեծ է։ Օրինակ, թեթև և սննդի արդյունաբերության մեջ աշխատողների 78, իսկ առողջապահության ցանցում՝ 81 տոկոսը կանայք են։

Սրանք զուտ քանակական փոփոխություններ չեն. տեղի են ունեցել նաև որակական լուրջ փոփոխություններ։ Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցողների մոտ 50 տոկոսը կանայք են։

Կամ, մի՞թե լենինյան գաղափարների իրականացման արդյունք չէ այն, որ այսօր «Անիծած հարսի», «Մարոյի», «Անուշի» երբեմնի հայրենիքում կինը դարձել է ո՛չ միայն լիիրավ քաղաքացի և արտադրության առաջավոր, այլև անվանի ֆիզիկոս ու քիմիկոս, ինժեներ ու բժիշկ, ճարտարապետ ու գիտնական, բանաստեղծ ու երաժիշտ, մարդկանց սրտերը գերող մեծատաղանդ երգչուհի։

Հիրավի, հաջողությունները մեծ են։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ կանանց լայն մասշտաբներով ընդգրկելով հասարակական արտադրության ոլորտը, նրանց համար միշտ չէ, որ ստեղծվել են սոցիալ-տնտեսական բավարար պայմաններ, որոնք թույլ տային՝ հասարակական արտադրության մեջ աշխատանքն ավելի հաջող զուգակցելու մոր և տնտեսուհու դժվարին պարտականությունների կատարման հետ։

Դեռևս սովետական իշխանության արշալույսին իր Մեծ նախաձեռնություն աշխատության մեջ Վ. Ի. Լենինը գրում է. «Բայց որքան ավելի մաքուր մաքրեցինք հողը հին, բուրժուական օրենքների և հաստատությունների խլամից, այնքան ավելի պարզ դարձավ մեզ համար, որ դա միայն գետնի մաքրումն է շինության համար, բայց դեռևս ոչ բուն շինությունը։

Կինը շարունակում է մնալ տնային ստրկուհի, չնայած ազատագրական բոլոր օրենքներին, որովհետև նրան ճզմում, խեղդում, բթացնում, ստորացնում է մանր տնային տնտեսությունը, շղթայելով նրան խոհանոցին և մանկանոցին, կողոպտելով նրա աշխատանքը մինչև վայրենության աստիճանի անարտադրողական, մանր, ջղայնացնող, բթացնող, ճնշող աշխատանքով։ Կնոջ իսկական ազատագրումը, իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքար (պետական իշխանությանը տիրապետող պրոլետարիատի ղեկավարությամբ) տնային այդ մանր տնտեսության դեմ, կամ, ավելի ճիշտ՝ նրա մասսայական վերակառուցումը որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն» (Երկեր, հ. 29, էջ 526)։

Ուրեմն, օրենքները բավական չեն. իսկական ազատագրման համար անհրաժեշտ են մի շարք սոցիալ-տնտեսական և կենցաղային պայմաններ, որոնք կարող են մասամբ թեթևացնել կնոջ խիստ ցածր արտադրողական տնային ծանր աշխատանքը։ Այդ նույն աշխատության մեջ Վլադիմիր Իլյիչը, խոսելով մեր երկրում իրականացվող կարևոր նախաձեռնումների մասին, ողջունում էր նաև հասարակական ճաշարանների, մսուրների, մանկապարտեզների կազմակերպումը, դրանք անվանելով «կոմունիզմի ծիլեր»։

Կանանց խոհանոցային ծանր աշխատանքից ազատելու և նրանց աշխատուժը հասարակական արտադրության մեջ անհամեմատ արտադրողաբար օգ-

տագործելու համար մեծ դեր կարող է կատարել ծավալուն հասարակական սննդի ցանցը։ Հաշվումները ցույց են տալիս, որ միջին ընտանիքում (4—5 անձ) սննդի ձեռքբերման և պատրաստման վրա ծախսվում է առնվազն 3—4 ժամ։ Երեքից-չորս ժամ ծախսում է մեկ ընտանիքը, իսկ հասարակության մասշտաբով այն հավասար է ո՛չ միայն միլիոնավոր աշխատաժամերի, այլև՝ նյութական մեծ կորուստների։

Սովետական իշխանության տարիներին շատ բան է արված սննդարդյունաբերության համակողմանի զարգացման համար. ընդլայնվել է սննդի օբյեկտների ցանցը։ 1967 թվականին ՍՍՀՄ-ում պատրաստվել է 24872 միլիոն ճաշաբաժին, 1940 թ. 8133 միլիոնի փոխարեն։ Իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 1967 թ. պատրաստվել է մոտ 146 միլիոն ճաշաբաժին։

Հասարակական սննդի ցանցում ո՛չ միայն շատացել են տեղերը, այլև կատարելագործվել են սպասարկման ձևերն ու մեթոդները. լայնորեն կիրառվում են հաջորդական վճարի և ինքնասպասարկման այլ եղանակներ, ձեռնարկվել են կիսաֆաբրիկատների արտադրությունն ու վաճառքը և այլն։

Սակայն սպասարկման առաջավոր ձևերը դանդաղ են կիրառվում. ցածր է հասարակական սննդի սեփական արտադրանքի որակը, բարձր են գները։ Դրանք թույլ չեն տալիս, որպեսզի հասարակության լայն խավերն օգտվեն հասարակական սննդից։ Անշուշտ, հասարակական սննդի զարգացման աստիճանը երկրում ամենուր նույնը չէ։ Օրինակ, եթե ՍՍՀՄ-ում յուրաքանչյուր 10 հազար բնակչին (1968 թ. սկզբին) ընկնում էր 339 սպասարկման տեղ, Լատվիական ՍՍՀ-ում՝ 605, Էստոնական ՍՍՀ-ում՝ 583 տեղ, ապա Հայկական ՍՍՀ-ում՝ միայն 304 տեղ։

Այսպիսով, այսօրվա դրությամբ երկրում ընդհանրապես, իսկ մեր հանրապետությունում մասնավորապես, ազգաբնակչության շատ փոքր տոկոսն է օգտվում հասարակական սննդի ծառայություններից։ Ահա թե ինչու վերջին տարիներին առավել ուշադրություն է նվիրվում հասարակական սննդի ցանցի ընդարձակմանն ու կատարելագործմանը։

Կանանց տնային աշխատանքը թեթևացնելու, նրանց աշխատուժը հասարակական արտադրության մեջ արդյունավետ օգտագործելու կարևոր միջոց են մանկական և նախադպրոցական ցանցի ընդլայնումը և հանրակրթական ցանցում ուսուցման առաջավոր մեթոդների արմատավորումը։ Գաղտնիք չէ, որ տնային տնտեսության վարումը և երեխաների խնամքն ու դաստիարակությունն իրենց ողջ ծանրությամբ հիմնականում ընկած են կնոջ վրա. այդ ամենը նրանից խլում է շատ ժամանակ և պահանջում ուժերի մեծ լարում։

Սովետական իշխանությունը մեծ ուշադրություն է նվիրում մատաղ սերնդի խնամքին և նրանց ուսումնա-դաստիարակչական աշխատանքի բարելավմանը, մշտապես հոգում բազմազավակ և միայնակ մայրերի վերաբերյալ, վճարովի արձակուրդներ են տրվում հղիության և ծննդաբերության ժամանակ, ապահովվում է աշխատող մայրերի մի մասի երեխաների խնամքը մանկական հիմնարկություններում և այլն։ Եթե Հայաստանում 1927 թ. բոլոր գերատեսչությունների գծով կային ընդամենը 51 մանկամսուր և մանկապարտեզ՝ 2840 երեխաներով, ապա՝ 1968 թ. սկզբում դրանց թիվը հասել էր 798-ի՝ 77,4 հազար երեխաներով։ Վերջին տասը տարիների ընթացքում (1958—1968 թթ.) միայն պետական շինարարության գծով երկու անգամ ավելի շատ մանկական և նախադպրոցական հիմնարկություններ են կառուցվել և շահագործման



հանձնվել, քան Հայաստանում սովետական իշխանության՝ նախորդ 38 տարիների ընթացքում։

Սակայն փաստացի նյութերի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր հանրապետության քաղաքներում մանկամսուրային հասակի երեխաների միայն 14,3 տոկոսը, իսկ մանկապարտեզային հասակի՝ 44 տոկոսն են ընդգրկված այդ հիմնարկություններում։ Դրությունն անհամեմատ վատ է գյուղական վայրերում. այն համապատասխանաբար կազմում է՝ 3,7 և 10,5 տոկոս։ Այսպիսով, երեխաների միջին ընդգրկվածությունը 19,3 տոկոս է, միութենականի 29,5 տոկոսի դիմաց։

Հայկական ՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի՝ ընտրանքային եղանակով Երևան քաղաքի 3600 ընտանիքում կատարած ուսումնասիրությունների արդյունքները ցույց տվեցին, որ 4724 աշխատունակ կանանցից 2233-ը (կամ 57 տոկոսը) չեն աշխատում երեխաների խնամքով զբաղված լինելու պատճառով։

Իսկ եթե հիմնվենք առավել համատարած հետազոտության՝ 1959 թ. մարդահամարի տվյալների վրա, ապա պարզվում է, որ երկրում չաշխատող աշխատունակ կանանց 59 տոկոսն ունեցել է մինչև 14 տարեկան երեխաներ, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 64 տոկոսը։ Մասամբ սրանով պետք է բացատրել կանանց համեմատաբար ցածր ընդգրկվածությունը հասարակական արտադրության մեջ (41 տոկոս Հայաստանում, 50 տոկոս Միության մեջ)։

Այսպիսով, մանկական և նախադպրոցական ցանցի ընդլայնումը բխում է կանանց երեխաների հոգսերից ազատելու և նրանց աշխատուժը հասարակական տնտեսության մեջ ավելի արդյունավետ օգտագործելու շահերից։

Մայրերին մեծ օգնություն կարող են ցույց տալ գիշերօթիկ և երկարօրյա դպրոցներն ու խմբերը. ընդ որում, պրակտիկան ցույց է տալիս, որ վերջիններս ավելի նախընտրելի են։ Դժբախտաբար, ուսման այս առաջավոր ձևերը նույնպես դանդաղ են արմատավորվում։ Այսպես, գիշերօթիկ դպրոցներում ընդգրկված են դպրոցական հասակի երեխաների միայն 3, իսկ երկարօրյա դպրոցներում և խմբերում՝ 5 տոկոսը։

Թվում է, որ երկրի մասշտաբով, իսկ առավել ևս բնական աճի բարձր տոկոս ունեցող հանրապետություններում, անհրաժեշտ է լրացուցիչ միջոցներ հատկացնել՝ մանկական ու նախադպրոցական հիմնարկությունների և հանրակրթական ուսուցման առաջավոր ձևերի ընդլայնման նախատեսված տեմպերը գերազանցելու համար։

ՍՍՀՄ պետպլանի տնտեսագիտական գիտահետազոտական ինստիտուտի հաշվումները ցույց են տալիս, որ կենցաղսպասարկման ձեռնարկություններում մեկ հոգուն աշխատանքում ընդգրկելը հնարավորություն է տալիս 3—4 կանանց ազատելու 5—7 ժամ տևող տնային ծանր աշխատանքից և նրանց ընդգրկելու հանրօգուտ աշխատանքի ոլորտը։

Ծառայությունների ոլորտի զարգացումն անմիջականորեն առնչվում է հասարակական տնտեսության մեջ աշխատանքային հսկայական ռեզերվների ներգրավման հետ։ Այդ են վկայում նաև 1959 թ. մարդահամարի տվյալները, որոնց համաձայն զուտ տնային տնտեսությամբ զբաղվող աշխատունակների թիվը հասնում էր մոտ 13 միլիոնի կամ կազմում էր երկրի աշխատանքային ռեսուրսների 10 տոկոսը, ընդ որում, դրանց 89 տոկոսը կանայք էին։

Սրանցով են պայմանավորված ընթացիկ հնգամյակում ծառայություն-

ների ոլորտի աճի բարձր տեմպերը (2,5 անգամ)։ Զարգացման այդ տենդենցն անհրաժեշտ է պահպանել նաև առաջիկայում։

Հասունացել է նաև տնային աշխատանքների մեքենայացման պրոցեսն արագացնող էլեկտրասարքերի և խոհանոցային հարմարանքների, կենցաղային քիմիկատների մասսայական թողարկման անհրաժեշտության հարցը։

Անշուշտ, ծառայությունների ոլորտի զարգացման գործում բավականին առաջխաղացում կա, սակայն այսօրվա դրությամբ այն դեռ հեռու է խոշոր մեքենայացված ժողովրդական տնտեսության կարևոր բնագավառ լինելուց։ Այդ է պատճառը, որ 1968 թ. արդյունաբերական և ոչ-արդյունաբերական բնույթի կենցաղային ծառայությունները մեկ շնչի հաշվով երկրում կազմել են 13 ռ. 15 կոպ., իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 10 ռ. 78 կոպ.։ Սա, անկասկած, շատ քիչ է ծավալի տեսակետից։ Եվ եթե սրան ավելացնենք, որ ծառայությունների ոլորտում շատ ցածր է սպասարկման կուլտուրան և կատարվող աշխատանքների որակը (նկատի ունենք լվացքատները, քիմիական մաքրումը, կարի անհատական պատվերները և այլն), պարզ կդառնա, թե ինչու ազգաբնակչության այդքան աննշան մասն է օգտվում այդ ոլորտից։

Ծառայությունների ոլորտում պետք է արմատական շրջադարձ կատարել, որպեսզի լիակատար հեղաշրջում կատարվի կնոջ տնային աշխատանքում։

Վերը նշված գործոնները կթեթևացնեն կանանց տնային հոգսերը։ Բայց պետք է ասել, որ արտադրության մեջ ևս հեշտ չէ կանանց աշխատանքը։ Պատճառը հասկանալի է։ Եթե կինն իր արտաաշխատանքային ժամանակը նվիրում է տնային հոգսերին, ապա՝ հնարավորություն չի ունենա բարձրացնելու իր տեխնիկական որակավորումը։ Ուստի, նա ստիպված ընդգրկվում է ոչ-որակյալ, օժանդակ աշխատանքներում, որոնք խիստ դանդաղ են մեքենայացվում, դրանց 60 տոկոսից ավելին դեռ ձեռքով է կատարվում։

Ստացվում է այնպես, որ կնոջը ո՛չ միայն տանը, այլև հասարակական արտադրության մեջ վիճակված է ձեռքի ծանր աշխատանք, որը, սովորաբար, որպես ոչ-որակյալ, օժանդակ աշխատանք, ցածր է վարձատրվում։ Եթե սրան ավելացնենք այն, որ նման ֆիզիկական աշխատանքները բացասաբար են ազդում մոր առողջական վիճակի վրա, ապա հասկանալի կդառնա, թե ինչպիսի համառությամբ պետք է լուծվեն օժանդակ աշխատանքների մեքենայացման և դրա հետ կապված կանանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հարցերը։

Կանանց աշխատուժի արդյունավետ օգտագործման կարևոր պայման է նրա ճիշտ տեղաբաշխումը։ Աշխատանքի ֆիզիոլոգիայի ասպարեզում ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ, աշխատելով անբարենպաստ պայմաններում (աղմուկ, բարձր խոնավություն ու ջերմություն, թունավոր գազերի առկայություն, գիշերային հերթափոխ և այլն), կանայք, տղամարդկանց համեմատությամբ, 6—12 անգամ ավելի հաճախ են հիվանդանում աղեստամոքսային տրակտի, սրտանոթային սիստեմի, հիպերտոնիկ, ռևմատիկ, նյարդային և այլ հիվանդություններով։ Այս ամենը, անկասկած, վատ է անդրադառնում մատաղ սերնդի առողջական վիճակի վրա։ Բայց սա դեռ մեզ իրավունք չի տալիս մտածելու, որ կանայք իրենց ֆիզիոլոգիական առանձնահատկություններով ընդհանրապես ի վիճակի չեն աշխատելու հասարակական արտադրության մեջ։ Աշխատանքի ֆիզիոլոգիան բացահայտել է նաև մեկ այլ ճշմարտություն։ Դա այն է, որ արտադրության այնպիսի ճյուղերում (էլեկտրոնային արդյունաբերություն, ճշգրիտ սարքաշինություն, էլեկտրատեխնի-



կական արդյունաբերություն և այլն), որտեղ պահանջվում են փութկոտություն, ճկունություն, ուշադրության երկարատև լարում, համբերատարություն և այլն, նույնիսկ նախընտրելի է կանանց աշխատուժի կիրառումը։

Մենք համամիտ չենք այն տնտեսագետների և սոցիոլոգների հետ, որոնք, իբր թե ելնելով տնային տնտեսության և երեխաների խնամքի ու դաստիարակության շահերից, առաջարկում են նեղացնել կանանց աշխատանքի ոլորտը ժողովրդական տնտեսության մեջ։ Սա պարզապես «կինը տնային օջախի համար» կոնցեպցիայի տարատեսակն է։ Մինչդեռ խոսքն ամբողջությամբ վերաբերում է տնային և հասարակական տնտեսության մեջ կանանց աշխատանքի թեթևացմանը և նրանց աշխատուժի առավել արդյունավետ օգտագործմանը։ Կինը, որպես հասարակության լիիրավ անդամ, անպայման պետք է ընդգրկվի հասարակական արտադրության մեջ։ Բայց հավասարությունը չպետք է գռեհկացնել։ Ինչպես Վ. Ի. Լենինն է նշել. «...այստեղ խոսքը այն մասին չէ, որ պետք է հավասարեցնել կնոջն աշխատանքի արտադրողականության, աշխատանքի ծավալի, նրա տևողության մեջ, աշխատանքի պայմաններում և այլն, այլ խոսքն այն մասին է, որ կինը տղամարդու համեմատությամբ չճնշվի իր տնտեսական դրությամբ։ Դուք ամենքդ գիտեք, որ նույնիսկ լիակատար իրավահավասարության ժամանակ այնուամենայնիվ մնում է կնոջ այդ փաստական ճնշվածությունը, որովհետև նրա վրա են բարդում ամբողջ տնային տնտեսությունը։ Այդ տնային տնտեսությունը մեծ մասամբ հանդիսանում է ամենից անարտադրողական, ամենից վայրենի և ամենից ծանր մի աշխատանք, որ կատարում է կինը։ Այդ վերին աստիճանի մանր աշխատանք է, որն իր մեջ կնոջ զարգացմանը որևէ չափով նպաստող ոչինչ չի պարունակում» (Երկեր, հ. 30, էջ 33—34)։

Եթե նկատի ունենանք միայն այն, որ հասարակական տնտեսությունն ընդլայնում է մարդու մտահորիզոնը, նրան մասնակից է դարձնում կյանքի առաջընթացին, ապա կնոջ աշխատանքն անհրաժեշտություն է ժողովրդական տնտեսության մեջ։

Հասարակությունը պարտավոր է կնոջ համար ապահովել սոցիալ-տնտեսական պայմանների այն նվազագույնը, որը հնարավորություն կտա նրան՝ հասարակական տնտեսության մեջ աշխատանքը հաջողությամբ զուգակցելու մայրության դժվարին և պատվավոր պարտականությունը կատարելու հետ։

Մեր երկրում կանանց իրական ազատագրման ասպարեզում ձեռք են բերվել պատմական նշանակություն ունեցող հսկայական հաջողություններ։ Բայց կենցաղի արմատական վերափոխման համար դեռևս մեծ անելիքներ ունենք։

ԳՈՀԱՐ ԳԻՄՈՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու



# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԱՊԱԳԱ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՄԱՍԻՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հետագա շահերից ելնելով, անհրաժեշտ է ռացիոնալ տեղաբաշխել արդյունաբերությունը, տնտեսավար օգտագործել բնական անսպառ հարստությունները ու հնարավորությունները: Այդ վիթխարի խնդիրների լուծումն անհնար կլինի առանց տրանսպորտի արագ ու կոմպլեքսային զարգացման: Այդ կապակցությամբ ՍՄԿԿ ծրագրում ընդգծվում է. «Ժողովրդական տնտեսության աճը կպահանջի արագ զարգացնել տրանսպորտի բոլոր տեսակները: Տրանսպորտի բնագավառում ամենակարևոր խնդիրներն են՝ տրանսպորտային շինարարության ընդլայնումը և փոխադրումների բոլոր տեսակների գծով ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջների լրիվ բավարարումը. երկաթուղու և տրանսպորտի մյուս տեսակների հետագա տեխնիկական վերազինումը՝ արագությունների զգալի բարձրացումը երկաթուղիներում, ծովային ու գետային ուղիներում, տրանսպորտի բոլոր տեսակներից որպես մեկ միասնական տրանսպորտային ցանցի բաղկացուցիչ մասերի համաձայնեցված զարգացումը» (ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, Երևան, 1961, էջ 85—86):

Տրանսպորտի տարբեր տեսակների ստեղծման ու շահագործման պատմության մեջ նման միասնականություն չի եղել: Տրանսպորտի կազմավորման պրոցեսը դիտվել է ոչ որպես բեռների տեղաշարժում արտադրությունից դեպի սպառման ոլորտ, այլ բեռնափոխադրում կայարանից կայարան և այլն:

Ինչպես ցույց են տալիս տրանսպորտային կոմպլեքսային պրոբլեմների ինստիտուտի հետազոտությունները, տրանսպորտի տարբեր տեսակների մեկուսացվածությունը հանգեցրել է այն բանին, որ նավահանգիստներում և կայարաններում յուրաքանչյուր տոննան վերաբեռնվել է 6, հաճախ՝ 20 անգամ: Բեռնաբարձման և բեռնաթափման ծախսերը կազմել են ողջ տրանսպորտային ծախսերի մեկ երրորդը:

Հնարավո՞ր է արդյոք տրանսպորտում կրճատել աշխատանքային ծախսումները, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը: Անկասկած: Համապետական նշանակություն ունեցող այդ կարևորագույն խնդիրը կարելի է լուծել տրանսպորտային միասնական ցանցի ստեղծման ու շահագործման, ինչպես և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետ սերտորեն կապված ընդհանուր ճյուղավորված կոնվեյեր ստեղծելու միջոցով:

«Ստեղծել երթևեկության, բեռնման ու բեռնաթափման նոր միջոցներ,— գրել է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Յու. Ա. Նովոսելցևը իր «Գալիք մագիստրալները» գրքի առաջաբանում,— որոնք կապահովեն գլխավոր ցուցանիշները՝ արագությունը, բեռնաբարձումը, և որպես արդյունք՝ տնտեսումը. սա է գիտնականների, արտադրության առաջավորների ստեղծագործական խնդիրը: Մեծ նշանակություն ունեն նաև ամեն մի արժեքավորի, առաջադիմականի հնարավորին չափ արագ ու լայն ներդրումն ու տարածումը տրանսպորտային տեխնիկայի բոլոր բնագավառներում» (Магистрали грядущего. М., 1962);

Այսպիսով, պետք է զարգացնել տրանսպորտի այնպիսի տեսակները, որ ապահովվի մեծ արագությամբ, միաժամանակ հարմարավետ ու խնայողաբեր առաքում: Նման պահանջների համատեղումը բարդ խնդիր է և վեր տրանսպորտի առանձին տեսակի կարողությունից:

Էներգետիկ նպատակներով արդեն XXI դարի սկզբից անհրաժեշտ կլինի առավել լրիվ օգտագործել ատոմային ռեակցիայի ուժը, ինչպես նաև կիրառել ջերմամիջուկային ռեակցիայի արդյունքները: Վերջինիս համար որպես հիմնական հումք լինելու է դեյտերին՝ ջրածնի ծանր իզոտոպը: Բնական ջրածնի յուրաքանչյուր տոննան պարունակում է 200 գրամ դեյտերի, որն իր էներգիայով համարժեք է 2000 տոննա նավթի:



Մեկ տոննա ջրի 11 տոկոսը ջրածին է: Ուստի ջերմամիջուկային ռեակցիայի համար պահանջվող վառելանյութի պաշարը գործնականում անսպառ է:

Գիտնականների հաշվարկներով դեյտերիի օգտագործման վերջնական սահմանը կարող է լինել ջերմամիջուկային էլեկտրակայանների կարսաների առաջացրած մթնոլորտի գերջեռուցումը:

Ակադեմիկոս Ն. Ն. Սեմյոնովի ուսումնասիրությունները բերել են այն եզրահանգման, որ ջերմամիջուկային ռեակտորների շնորհիվ ստացվելիք ողջ էներգիան չի գերազանցի արևից երկրին հաղորդվող էներգիայի հինգ տոկոսին: Մինչդեռ դա նշանակում է աշխարհում արտադրվող էներգիայի ներկա մակարդակը գերազանցել 12 հազար անգամ:

XXI դարի սկզբում մեծ մասշտաբներով կօգտագործվի երկրի միջուկի և քամու էներգիան, մասսայաբար կկիրառվի նաև կիսահաղորդչային էլեմենտների շնորհիվ ստացվող արևի էներգիան: Երկրագունդն արեգակից ստանում է 22 տրիլիոն ($2 \cdot 10^{13}$) բարձր կալորիայի ջերմություն: Ակադեմիկոս Ա. Ֆ. Յոֆֆեն հաշվել է, որ եթե այդ նպատակով օգտագործվի Կարա-Կումի անապատների մակերեսի մեկ երրորդը, ապա հնարավոր կլինի ստանալ 20 անգամ ավելի շատ էներգիա, քան ներկայումս արտադրում են աշխարհի բոլոր էլեկտրակայանները միասին: Բանն այն է, որ յուրաքանչյուր քառակուսի կիլոմետր մակերեսը կլանում է մոտ 22 հազար կվտ արեգակի էներգիա: Արեգակնային էլեկտրակայանները մեծ դեր են խաղալու XXI դարի էներգետիկ բալանսում:

Էլեկտրաէներգիայի արտադրության լայն հնարավորությունները դրական նշանակություն կունենան երկաթուղային, ջրային և այլ ձևի տրանսպորտի զարգացման պրոբլեմների լուծման, դրանց տեխնիկական բազայի վերակառուցման համար. էժան էլեկտրաէներգիան կօգտագործվի բնակարանների ջեռուցման նպատակով: Հարկ կլինի հիմնել նոր տիպի ավտոմեքենա՝ էլեկտրամոբիլ արտադրող արդյունաբերական ձեռնարկություններ:

Տեխնիկայի զարգացման ներկա մակարդակը հնարավորություն կընձեռի մոտ ապագայում ստեղծելու ոչ թանկարժեք էլեկտրամոբիլներ, որոնց շահագործման ծախսերը, սովորական ավտոմեքենաների համեմատությամբ, շատ փոքր կլինեն: Այժմ էլեկտրամոբիլների կիրառական հնարավորությունները մեծ չափով պայմանավորված են էլեկտրաէներգիայի շահավետ, ինքնասնուցող աղբյուրների հայտնաբերմամբ: Դրանք ընդունված է անվանել «ոչ-մեքենական» փոխակերպիչներ (քանի որ պրոցեսները տեղի են ունենում ֆիզիկական, քիմիական նոր եղանակներով): Այդ հարմարանքներն այլ բնույթի էներգիան անմիջապես վեր են ածում էլեկտրաէներգիայի և փոխանցում շարժիչին:

Էլեկտրամոբիլների կիրառմամբ կբացառվի հեղուկ վառելանյութի օգտագործումը, որի պակասը մի շարք երկրներում խիստ զգալի է: Դրանով, միաժամանակ, որոշակիորեն կնվազի մթնոլորտի աղտոտվածության աստիճանը քաղաքներում (որը հետևանք է ներքին այրման շարժիչներում վառելանյութի ոչ լրիվ այրման և այն մթնոլորտ արտածվելու): ԱՄՆ-ում, օրինակ, ավտոմոբիլներն էլեկտրամոբիլներով փոխարինելու շնորհիվ օդի աղտոտվածությունը 1975 թ., 1965-ի համեմատությամբ, հնարավոր կլինի կրճատել 95 տոկոսով:

Արտասահմանում, ինչպես նաև ՍՍՀՄ-ում, լարված աշխատանք է տարվում՝ ստեղծելու տրանսպորտի տարբեր տեսակներ՝ օդային բարձիկներով— հեպընթաց նավեր, բարձր անցունակությամբ ավտոմոբիլներ, արագընթաց ստորգետնյա տրանսպորտ՝ միջազգային հաղորդակցության համար և այլն: Ներկայումս օդային բարձիկներով ավտոմոբիլներ նախագծելիս մասնակիորեն է պակասեցվում շարժիչի լարումը և դրանց անիվի կամ թրթուրի շփումը գետնի հետ պահպանվում է: Հետագայում օդային բարձիկը ժամանակավոր կամ մշտապես կիջեցնի շարժիչի լարումը՝ բարձր արագություն ապահովելու, դժվարանցանելի տեղերը հաղթահարելու նպատակով:

Այդպիսի ավտոմոբիլները կլինեն բարձր անցունակ ճահճոտ և փխրուն հողատարածություններում, կկարողանան հաղթահարել վերելքը, զառիթափ ու թեք տարածությունները:

ԱՄՆ-ում արդեն մշակված է օդային բարձիկով գնացքի նախագիծը. այն ընթանալու է երկաթ-բետոնե կամ պողպատյա խողովակի վրայով՝ ժամում 800—3200 կմ արագությամբ: Խողովակի տրամագիծը նախատեսվում է 4,5—5,5 մետր, իսկ օդային բարձիկի հաստությունը՝ 22,8 սանտիմետր: Այն առաջ է շարժվելու տուրբինի օգնությամբ: Ֆրանսիայում ևս նախագծված է օդային բարձիկով գնացք, որը կունենա ժամում 200—240 կմ արագություն: Օդային բարձիկի հաստությունն է 10—20 միլիմետր, օդի ճնշումը՝ 0,035 քառ. կգ/սմ. այն կշարժվի օդային պտուտակի կամ էլեկտրաշարժիչի միջոցով: Միջմայրցամաքային հաղորդակցության համար օգտագործվելու են կոսմիկական արբանյակները, որոնք կպտտվեն երկրի ուղեծրով, ուղևորների վերելքն ու վայրէջքը կիրականացվեն հատուկ հարմարանքների միջոցով, համապատասխան տեղերում:

Օդանավերի կառուցումը, սակայն, ունի իր առավելագույն սահմանը— ջերմային պատնեշը: Ցելսիուսի 1000°-ից բարձր ջերմության հետևանքով դրանք կարող են հալվել: Նման օդա-

## Դեպի Սովետական Հայաստանի 50-ամյակը

# ՄԵՔԵՆԱՇԻՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Ա. Տ. ՎԻՐԱԲՅԱՆ

Հայկական ՍՍՀ վաստակավոր ինժեներ

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, հետևողականորեն կենսագործելով Լենինի ցուցումները, մեծ ուշադրություն նվիրեցին մեր երկրի ինդուստրացման զարգացմանը, որի շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ում ստեղծվեց հզոր մեքենաշինություն։ Այժմ ՍՍՀՄ մեքենաշինությունը թողարկվող արտադրանքի ծավալով գրավում է առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղն աշխարհում՝ ԱՄՆ-ից հետո։ Նրա արտադրանքն ուղարկվում է աշխարհի մոտ 70 երկիր։ Մեքենաշինության զարգացման գործում իր արժեքավոր լուման է մուծել նաև աշխատասեր հայ ժողովուրդը։

Հայաստանում մեքենաշինությունը, որպես արդյունաբերության ինքնուրույն ճյուղ, հիմնադրվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին և արագ թափով զարգացավ հետպատերազմյան հնգամյակներին։ 1940—1950 թվականներին կառուցվեցին և գործարկվեցին միութենական խոշոր նշանակություն ունեցող Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական, կաբելի, ժամացույցի, էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի, լուսատեխնիկական, հիդրոպոմպերի, Կիրովականի մեքենաշինական, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանները և այլն։

ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ և վեցերորդ հնգամյակների տարիներին, Հայաստանի մեքենաշինությունն ավելի արագ տեմպերով ընթացավ։ Այդ ժամանակաշրջանի ամենաբնորոշ հատկություններից մեկը, մեքենաշինության հիմնական ճյուղերի, այդ թվում՝ դրա ենթաճյուղերի մասնագիտացումն ու վերջնական ձևավորումը, թողարկվող արտադրանքի ծավալի մեծացումն ու տասնյակ նոր, ժամանակակից մետաղահատ հաստոցների, էլեկտրատեխնիկական մեքենաների ու սարքավորումների, ճշգրիտ սարքերի ու ավտոմատացման միջոցների նոմենկլատուրայի ընդարձակումն ու որակի բարելավումն է։



1951—1958 թվականներին լրիվ կամ մասնակի շահագործման են հանձնվում մի շարք նոր մեքենաշինական ձեռնարկություններ, այդ թվում՝ Երևանի էլեկտրալամպերի, էլեկտրասարքերի, ֆրեզերային հաստոցների, հաստոցային նորմալների, գործիքաշինական (այժմ տեխնոլոգիական սարքավորումների), սարքաշինական, Կիրովականի «Ավտոմատիկա», Լենինականի հղկող հաստոցների ու սարքաշինական գործարանները և հանրապետության մյուս քաղաքների ու շրջանների մի շարք այլ մետաղամշակման օբյեկտներ։ Հիմնովին վերակառուցվում և ընդարձակվում են Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական, կաբելի, Ձերժինսկու անվան, կոմպրեսորների, ավտոպահեստամասերի, հիդրոպոմպերի, ժամացույցի, էլեկտրաճշգրիտ սարքերի, Լենինականի դարբնոցա-մամլիչային, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանների արտադրական կարողությունները, ամրապնդվում արտադրության տեխնիկական բազան, բարելավվում ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշները։

1959—1969 թվականներին կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 40 նոր մեքենաշինական ձեռնարկություն՝ կեսից ավելին փոքր քաղաքներում ու գյուղական շրջաններում։ Դա զգալիորեն նպաստեց արտադրության ոլորտում ընդգրկելու մեծ թվով աշխատավորների, ապահովեց բնակչության զբաղվածությունը և էկոնոմիկայի հետագա բարձրացումը։ Դրա հետ մեկտեղ խոշոր աշխատանքներ են կատարվել գործող ձեռնարկությունների վերակառուցման և նոր արտադրական կարողությունների գործարկման բնագավառում։

Ութերորդ հնգամյակի անցած 4 տարում արդյունաբերության արտադրանքն աճել է մոտ 1,53 անգամ, այդ թվում՝ մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը՝ մոտ 1,8 անգամ։ Այսպիսով, անցած տարիների արդյունքը ցույց է տալիս (չնայած հնգամյակի առաջադրանքների կատարման գործում վերջին երկու տարիների դժվարություններին), որ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, ծավալելով սոցիալիստական մրցություն, մեծ առաջնորդի ծննդյան 100 և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյա տոները կնշանավորեն հնգամյակի առաջադրանքների կատարմամբ։

Վերջին տասնամյակում հատուկ ուշադրություն է նվիրվում ճշգրիտ մեքենաշինության՝ էլեկտրոնիկայի, ռադիոէլեկտրոնիկայի, կապի միջոցների, հաստոցաշինության և գործիքաշինության, սարքաշինության և ավտոմատացման միջոցների արտադրության զարգացմանը, որտեղ աշխատանքային ծախսումների տեսակարար կշիռը բարձր է, իսկ մետաղի ծախսը, մեքենաշինության մյուս ճյուղերի նկատմամբ, նվազ։

Ընդհանուր քանակական աճի հետ մեկտեղ, տեղի են ունեցել նաև որակական խոշոր փոփոխություններ։

Նորագույն գիտության ու տեխնիկայի նվաճումների համակողմանի արմատավորումը հնարավորություն ընձեռեց՝ յուրացնելու տասնյակ նոր սերիայի ժամանակակից էլեկտրական մեքենաների, մետաղահատ հաստոցների, սարքերի ու հաշվիչ մեքենաների, կապի միջոցների, բեռնատար ավտոմեքենաների, մարդատար վերելակների, էլեկտրական ցածրավոլտ ապարատների, էլեկտրական վառարանների, դարբնոցա-մամլակային սարքավորումների, կենցաղային սառնարանների, կաբելային իրերի, քար մշակող ու քարհատ մեքենաների և բազմաթիվ այլ անհրաժեշտ մեքենաների ու սարքավորումների

սերիական արտադրությունը, որոնք լայն ճանաչում գտան ո՛չ միայն մեր երկրում, այլև զարգացած կապիտալիստական ու սոցիալիստական մոտ 50 երկրներում։

Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն ինչպես համախառն արտադրանքի ծավալով, այնպես էլ թողարկվող մեքենաների, սարքավորումների ու էլեկտրատեխնիկական իրերի բազմազանությամբ առաջնակարգ տեղ է գրավում Սովետական Միությունում։ Այժմ մեր հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը թողարկվող արտադրանքի ծավալով ՍՍՀՄ-ում գրավում է երրորդ տեղը, զիջելով միայն ՌՍՖՍՀ-ին և Ուկրաինական ՍՍՀ-ին։ Այդ տեղը կպահպանվի նաև առաջիկա տարիներին։

Վ. Ի. Լենինի անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Հայէլեկտրամեքենաշինական գործարանը հանրապետության ծանր արդյունաբերության հսկաներից է և տարեցտարի հզորանում ու հագեցվում է նորագույն տեխնիկայով։ Այն տալիս է Միության մինչև 100 կվտ հզորություն ունեցող գեներատորների մոտ 35, շարժական էլեկտրակայանների՝ 27, երկրորդ գաբարիտի տրանսֆորմատորների՝ 40 տոկոսը։

Այժմ գործարանում թողարկվող միասնական սերիայի սինխրոնային գեներատորները և ուժային տրանսֆորմատորները, նոր կոնստրուկցիայի ԴԱՁՕ տիպի խոշոր էլեկտրական մեքենաները, նախկինների համեմատությամբ, ունեն մեծ առավելություն, դրանք ավելի թեթև են, երկարակյաց ու հուսալի, հատկապես քիմիական արդյունաբերության և գյուղական պայմաններում օգտագործելու համար։ Հայկական տրանսֆորմատորներն իրենց տեխնիկական բնութագրով գերազանցում են արտասահմանյան այնպիսի ճանաչված ֆիրմաներին, ինչպիսիք են՝ ավստրիական «Ելլի», ԳՖՀ «Իդու», բելգիական «Ասեք» և այլն։

Իր գոյության մոտ 25 տարիների ընթացքում խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել Անդրկովկասի կաբելային արդյունաբերության առաջնեկի՝ Երևանի կաբելի գործարանում։ Այն անճանաչելի է դարձել ո՛չ միայն իր տեսքով, այլև տեխնիկական հագեցվածությամբ, թողարկվող արտադրանքի բազմազանությամբ ու որակով, գործիմաց ու հմուտ բանվորական ու ինժեներատեխնիկական կադրերով։

1944 թվականին գործարանը նախագծելիս հաշվի էր առնված, որ այն պետք է բավարարեր միայն Անդրկովկասի երեք հանրապետությունների պահանջմունքները։ Այն ժամանակ ոչ բոլորն էին հավատում դրան։ Կյանքը հերքեց այդ կասկածները։ Ներկայումս Երևանկաբել գործարանը Սովետական Միության խոշորագույն ձեռնարկություններից մեկն է, որի արտադրանքը մեծ պահանջարկ է գտել ո՛չ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից շատ հեռու։

Երևանկաբել և Կամոկաբել գործարաններում օգտագործվում են բարձրորակ ապակեթելեր և սինթետիկ լաքեր, որոնց շնորհիվ զգալի չափով բարելավվել է թողարկվող կաբելային իրերի որակը։

Երևանի էլեկտրական լամպերի գործարանը 20 տարեկան է։ Այդ ժամանակամիջոցում լամպագործները երկրին ավել են մեկ միլիարդ 182 միլիոն լամպ։ 1970 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, էլեկտրալամպերի արտադրությունը կավելանա մոտ 2,9 անգամ։ Այժմ գործարանը տարեկան թողարկում է 137 միլիոն հատ տարբեր տեսակի ու հզորության լամպեր, որը կազմում է ՍՍՀՄ-ում թողարկվող արտադրանքի ավելի քան 11 տոկոսը։



Հայաստանում մեծ չափով զարգացել է էլեկտրաշարժիչների արտադրությունը։ Երևանի փորձնական էլեկտրատեխնիկական, էլեկտրաշարժիչների, Լենինականի և Գորիսի միկրոէլեկտրաշարժիչների գործարանները թողարկում են մի քանի տասնյակ տիպաչափի ավելի քան մեկ միլիոն էլեկտրաշարժիչներ՝ 1959 թվականին թողարկվող 201,3 հազարի դիմաց։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման գործում խոշոր դեր խաղացին վերջին տասնամյակում շահագործման հանձնված Կամոկաբել, Ստեփանավանի բարձր հաճախականության սարքավորումների, Արթիկի էլեկտրական վառարանների, Մարալիկի մագնիսային ուժեղացուցիչների և Երևանի կիսահաղորդիչների ու մետաղակերամիկայի գործարանները։

Հայաստանում ինտենսիվ են զարգանում ծանր արդյունաբերության սիրտը հանդիսացող հաստոցաշինությունը և գործիքաշինությունը։ Թողարկվող հաստոցների թվով մեր հանրապետությունը երկրում գրավում է հինգերորդ, դարբնոցա-մամլիչային մեքենաների արտադրությամբ՝ երրորդ տեղը։ 1969 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, մետաղահատ հաստոցների արտադրությունն ավելացել է 3,1 անգամ։ Այդ ժամանակամիջոցում հաստոցաշինարարները յուրացրել են մոտ 60 նոր տիպի ունիվերսալ և հատուկ հաստոցներ, մամլիչներ, գելատինային և կոմբինացված մկրատներ, տասնյակ հիդրոապարատներ, մետաղամշակման գործիքներ, արհեստական ալմաստ և այլն։ Նշանակալի աշխատանքներ են կատարվել չուգունի և գունավոր մետաղների ձուլվածքի, հաստոցային նորմալների, հատուկ հանգույցների և տեխնոլոգիական սարքավորումների արտադրության զարգացման ուղղությամբ։

Հանրապետության մեքենաշինության առաջնեկը՝ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը, 65 տարեկան է։ Այն մեծ ու փառավոր ուղի է անցել։ Նախկին Տեր-Ավետիքովների փոքր մեխանիկական գործարանից այսօր ստեղծվել է մեքենաշինական խոշոր ու հզոր մի ձեռնարկություն։ Դեռևս նախապատերազմյան հնգամյակների տարիներին նրա թողարկած ներքին այրման շարժիչները, գազատուրբինները, ամիակային կոմպրեսորները, հիդրոպոմպերը, վակուում ապարատները, ինչպես նաև հետպատերազմյան տարիներին թողարկվող. մետաղահատ հաստոցները միշտ լավ համբավ են վայելել և վայելում ո՛չ միայն մեր հանրապետությունում, այլև ամբողջ Սովետական Միությունում և նրա սահմաններից դուրս։ Այժմ Հայաստանում թողարկվող հաստոցների ավելի քան 33 տոկոսը տալիս է Ձերժինսկու անվան գործարանը։ Վերջին տարիներին գործարանը յուրացրել է ավելի քան 20 նոր, ժամանակակից հաստոցների արտադրությունը, Մոսկվայի Բաումանի անվան ինստիտուտի պրոֆեսոր Գ. Շահումյանի և գործարանի երիտասարդ մասնագետների համատեղ ջանքերով ստեղծված ԵՏ—50 խառատային համընթաց շարժման ավտոմատ հաստոցի առաջին «պատգամավորը» 1968 թվականին Փարիզում կայացած ցուցահանդեսում բարձր գնահատականի արժանացավ։ 1969 թվականին ԵՏ—50Ա հաստոցն արժանացավ Մոսկվայի ԺՏՆՑ-ի առաջին կարգի պատվոգրի։

Տասը տարի առաջ Չարենցավանի հաստոցաշինարարները ձեռնամուխ եղան հանրապետությունում առաջին անգամ հորիզոնական ներտաշ հաստոցների արտադրությանը։ Անհրաժեշտ էր ո՛չ միայն ավելացնել հաստոցների թողարկումը, այլև ստեղծել առավել կատարյալ ու հուսալի կոնստրուկցիայի հաստոցներ, որոնք կարողանային մրցել ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ կապիտալիստական երկրներում թողարկվող նույնատիպ հաստոց-

ների հետ։ Կարճ ժամանակամիջոցում նախագծվեցին և յուրացվեցին 2Ա614, 2Լ614, 2615 և ութը տեսակի ԼԳ սերիայի հատուկ հաստոցների արտադրություն, որոնք օժտված են բարձր ճշգրտությամբ և բավարարում են միջազգային ստանդարտի բոլոր պահանջները։ Չարենցավանի մակնիշով հաստոցները լայն ճանաչում են գտել աշխարհի ավելի քան 25 երկրներում, այդ թվում՝ ԳՖՀ-ում, Անգլիայում, Իտալիայում, Ավստրիայում։

1966 թվականի առաջին կեսերին Մոսկվայում Միավորված Ազգերի կազմակերպության նախաձեռնած մետաղամշակման հաստոցներին նվիրված միջազգային գիտաժողովի մասնակից մի մեծ խումբ մասնագետներ այցելեցին Հայաստան, եղան նաև Չարենցավանի ներտաշ հաստոցների գործարանում։ Արտասահմանյան մասնագետների տպավորությունների մասին ՍՍՀՄ հաստոցագործիքաշինական արդյունաբերության մինիստր Ա. Ի. Կոստոուսովն ասել է. «Հայաստանից վերադառնալուց հետո Մոսկվայում կայացած պրես-կոնֆերանսի ամբողջ ընթացքում խոսակցության թեման հայկական հաստոցներն էին։ Տեսնեիք, թե շատ բան տեսած ու լսած այդ մարդիկ ինչպես էին զարմացել։ Անգլերեն, ֆրանսերեն, իսպաներեն, գերմաներեն և այլ լեզուներով նրանք անընդհատ կրկնում էին. «Մենք ստիպված հավատացինք այն ամենին, ինչ անհավատալի էր թվում», «Հայկական գործարանը շշմեցուցիչ էր», «Հայկական հաստոցները օժտված են հեքիաթային ճշտությամբ», «Առաջին անգամ զգացի, թե ինչ բան է բարի նախանձը», «Այդպիսի հաստոցներ արտադրելու համար առնվազն հիսուն տարվա հաստոցաշինության փորձ է հարկավոր»...

Դեռ չի լրացել Երևանի մակնիշը կրող աշխարհում առաջին ՄԱ—459 տիպի մրրկապատճենահան հաստոցի չորս տարին, սակայն այն արդեն եղել է Եվրոպայի շատ երկրներում։ Երևանի մետաղահատ հաստոցների փորձարարական գիտահետազոտական ինստիտուտի անդրկովկասյան մասնաճյուղի և ֆրեզերային հաստոցների կոլեկտիվների համատեղ ջանքերով ստեղծված հաստոցը, 1968 թվականին արժանացավ Լայպցիգի տոնավաճառի ամենաբարձր՝ «Գրան-պրիզ» մրցանակին և համաշխարհային ճանաչում ստացավ։ Այժմ Ֆրանսիայի, Անգլիայի և ԱՄՆ-ի շատ հաստոցաշինական ֆիրմաներ իրավունք են ստացել արտադրելու մեր գիտնականների ու կոնստրուկտորների ստեղծած այդ ունիկալ հաստոցը։

Կիրովականի ճշգրիտ ու գերճշգրիտ հաստոցներն առաքվում են աշխարհի ավելի քան 30 երկրներ։ Դրանք բազմիցս ցուցադրվել են Լայպցիգի, Պլովդիվի, Բուդապեշտի, Բռնոյի, Զագրեբի, Լյուբլյանի, Մոնրեալի «Էքսպո—67» միջազգային տոնավաճառներում և ցուցահանդեսներում, արժանանալով ոսկե, արծաթե մեդալների և առաջին կարգի դիպլոմների։

Կիրովականի հաստոցաշինարարները, չհանգստանալով ձեռք բերածով, անընդհատ կատարելագործում են թողարկվող արտադրանքի որակը, ստեղծում նոր, առավել կատարելագործված հաստոցներ։ Վերջին ժամանակներս պետական հանձնաժողովը բարձր գնահատականով ընդունեց 16Տ03, 16Տ04, 16ՈՒ04 տիպի խառատային հաստոցների առաջին փորձնական օրինակները։ Նոր գամմայի այդ հաստոցները լայն կիրառում կգտնեն ռադիոտեխնիկական, սարքաշինական արդյունաբերությունում, գիտական լաբորատորիաներում և այլ ճշգրիտ մեքենաշինական ձեռնարկություններում։

Չարենցավանի գործիքաշինական և Երևանի «Ալմաստ» գործարաններն ընդամենը հինգ տարվա պատմություն ունեն։ Սակայն երկրի ավելի քան



2000 գործարաններ ու կազմակերպություններ նրանց մշտական պատվիրատուներն են։

Տարիներ շարունակ աշխարհի, այդ թվում նաև մեր երկրի գիտնականները եռանդուն աշխատանք են կատարել գտնելու բնական ալմաստի փոխարինիչը։ Եվ այն գտնվեց միայն վերջին տասնամյակի սկզբներին։ Ալմաստե գործիքներն ավելի լայնորեն կիրառվում են կարծր համաձուլվածքներից պատրաստվող գործիքների նախասրման, չափաբերման և առհասարակ մեքենաների մասերի մաքուր մշակման համար։

Հայաստանի ալմաստագործները երկրում առաջիններից մեկը յուրացրեցին մարմարի, գրանիտի, բազալտի, տուֆի և բնական այլ որմնանյութերի ավելի խոշոր բեկորներ կտրելու համար մոտ 4 մետր երկարության ժապավենային և 2 մետր տրամագծի շրջանակային սղոցների արտադրությունը։ Երևանի ալմաստ գործարանը զարգացման մեծ հեռանկարներ ունի։ Այժմ խոշոր աշխատանքներ են կատարվում ձեռնարկության կարողությունների ընդարձակման և թողարկվող ալմաստե գործիքների անվանացանկի ընդլայնման ու որակի բարելավման ուղղությամբ։

Մարդկության ապագան հնարավոր չէ պատկերացնել առանց ավտոմատացման միջոցների արտադրության զարգացման։ Այն մեծ հորիզոններ է բացում ֆիզիկական ու մտավոր աշխատանքի մերձեցման համար, նպաստում արտադրանքի մեկ միավորի վրա կենդանի աշխատանքի ծախսումների նվազեցմանը, բարձրացնում հասարակական աշխատանքի արդյունավետությունը։

Արագ գործող, կարգավորող, կառավարող ու տեղեկացնող ավտոմատացված միջոցների ու սիստեմների, այդ թվում՝ էլեկտրոնային և ռադիոէլեկտրոնային սարքերի, հաշվիչ մեքենաների ներդրումը հնարավորություն է տալիս լուծելու երբեմնի անհնարին թվացող գիտատեխնիկական բազմաթիվ հարցեր։ Մոտ մեկ տասնամյակ առաջ անհասանելի թվացող տիեզերական, լուսնի ու լուսնամերձ տարածության, ատոմի միջուկի և բազմաթիվ այլ գիտատեխնիկական հետազոտությունների վերաբերյալ ձեռք բերած նվաճումներն արդյունք են գիտության ու տեխնիկայի առաջատար ճյուղերի՝ էլեկտրոնիկայի, ռադիոէլեկտրոնային և սարքաշինության բուռն զարգացման։ Այդ ուղղությամբ որոշակի աշխատանքներ են կատարվել նաև մեր հանրապետությունում։ Միայն վերջին տասնամյակում կառուցվել և շահագործման են հանձնըվել 8 նոր, ժամանակակից տեխնիկայով հագեցված սարքաշինական գործարաններ։

Այժմ հանրապետության սարքաշինական արդյունաբերությունը ՍՍՀՄ-ում գրավում է 4-րդ տեղը, իսկ արտադրանքի մի շարք տեսակների գծով՝ առաջնակարգ տեղերից մեկը։

Լրացավ Հայաստանի սարքաշինական արդյունաբերության առաջնեկի՝ Երևանի ժամացույցի գործարանի 27 տարին։ Այդ ժամանակամիջոցում անճանաչելիորեն փոխվել է գործարանը։ Այսպես, եթե իր գործարկման առաջին 5 տարիներին (1946—1950 թթ.) թողարկել է 503 հազար, կամ, միջին հաշվով, տարեկան 100 հազար ժամացույց, ապա այժմ ժամագործները տարեկան թողարկում են մոտ 3 միլիոն։ 17 տեսակի մոտ 70 տարատեսակների ժամացույցներն իրենց որակով և արտաքին ձևավորմամբ հավասար են աշխարհի լավագույն նմուշներին։ Այժմ երևանյան ժամացույցների մոտ 25 տոկոսն արտահանվում է ավելի քան 50 երկրներ, այդ թվում՝ Անգլիա, ԳՖՀ, Ֆրանսիա, Դանիա, Շվեդիա, Չիլի, Շոտլանդիա, Կուբա, Չեխոսլովակիա, Լեհաստան,

Հարավսլավիա, Ռումինիա, Բելգիա, Կոլումբիա, Հունգարիա, Ֆինլանդիա և այլուր։

Հանրապետության սարքաշինական երկրորդ՝ Երևանի էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանի կարողությունը 1969 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 8 անգամ։ Շուտով շահագործման կհանձնվի «Ամրություն» սարքերի մոտ 8 հազար քառակուսի մետր տարածության գլխավոր կորպուսը, որը հնարավորություն կընձեռի 2,5 անգամ ավելացնելու մեծ պահանջարկ ունեցող ժամանակակից սարքերի արտադրությունը։

Երևանյան միկրոամպերմետրերը, միկրովոլտմետրերը, հոսանքաչափ աքցանները, ցածր և բարձր լարումների ցուցիչները հայրենական ու արտասահմանյան լավագույն նմուշների թվին են պատկանում։ Մեր երկրի մոտ 3000 և արտասահմանյան 40 երկրների պատվիրատուները գովեստով են խոսում Երևանի էլեկտրական ճշգրիտ սարքերի մասին։

Երևանի սարքաշինական, Կիրովականի «Ավտոմատիկա», Լենինականի անալիտիկ սարքերի, Սևանի գործադիր սարքերի, Արզնու ճշգրիտ տեխնիկական քարերի և Կամոյի սարքաշինական գործարանների թողարկած լոգոմետրերը, խոնավաչափերը, պոտենցիոմետրերը, աղաչափերը, տասնյակ տեսակ հեղուկ նյութերի, գազերի մակարդակը, ճնշումը, ծախսումները, ջերմային ռեժիմները, ներկերի ֆիզիկո-քիմիական ու մեխանիկական կայունությունը, դիմացկունությունը և այլ պարամետրեր որոշող և գրանցող սարքերը համաշխարհային ճանաչում են գտել։

Էլեկտրոնիկան հնարավորություն է տալիս արագ լուծելու ամենաբարդ մաթեմատիկական խնդիրները, ախտորոշելու հիվանդությունները, հայտնաբերելու ցանկացած օբյեկտը երկրի մակերեսի վրա, մթնոլորտում, գետնի տակ և ջրի մեջ, վայրկենական ճշգրտությամբ որոշելու նույնիսկ ամենահեռավոր մոլորակներում տեղի ունեցող երևույթներն ու փոփոխությունները։ Այն, ինչ ընդամենը մեկ տասնյակ տարի առաջ հնարավոր չէր անել ռադիոլամպերի օգնությամբ, այսօր հեշտությամբ լուծվում է էլեկտրոնիկայի միջոցով։

Ժամանակակից էլեկտրոնիկայի մեծագույն նվաճումն էլեկտրոնային հաշվիչ մեքենան է։ Մեկ ու կես տասնամյակ առաջ հանրապետությունում հիմնադրվեց Երևանի հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը, որի երիտասարդ կոլեկտիվի ջանքերով մեր երկրում առաջին անգամ ստեղծվեցին կիսահաղորդչային էլեկտրոնային հաշվիչ «Նաիրի» և «Հրազդան» «մտածող» ավտոմատ ծրագրային ու մեծ հիշողության մեքենաները. դրանք բարձր գնահատականի են արժանացել միջազգային շատ ցուցահանդեսներում. «Նաիրի» հաշվիչ մեքենա ստեղծող 10 մասնագետներ 1965 թվականին արժանացան Լայպցիգի միջազգային տոնավաճառի ոսկե և արծաթե մեդալների։ «Հրազդան» հաշվիչ մեքենան 1966 թվականին արժանացավ Մոսկվայի ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մեծ ոսկե մեդալին։ Տարեցտարի մեծանում է «Հրազդան» և «Նաիրի» մեքենաների ընտանիքը։

Երևանի հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի և «Էլեկտրոն» գործարանի կոլեկտիվների համատեղ ջանքերով 1966 թվականին նախագծվում և յուրացվում է «Հրազդան—3», իսկ 1967-ին՝ «Նաիրի—2» ունիվերսալ հաշվիչ մեքենաների սերիական արտադրությունը, որոնք բարձր գնահատականի արժանացան մասնագետների կողմից։

«Նաիրի—2»-ը լավ է հասկանում մարդու լեզուն։ Նրան հրահանգները



տրվում են լեզվական արտահայտություններով՝ «հաշվել», «գտնել», «լուծել» և
այլն։ Հատուկ թարգմանիչ հարմարանքի միջոցով վայրկենապես կատարվում
են առաջադրանքները։
Այժմ հայ գիտնականներն ու կոնստրուկտորներն աշխատում են «Նաի-
րի—3» էլեկտրոնային ունիվերսալ հաշվիչ մեքենայի վրա, որը նախատեսված
է ինժեներական, գիտատեխնիկական, պլանային-տնտեսական և հաշվային-
վիճակագրական խնդիրներ վճռելու համար։
Ջրվեժի կապի արդյունաբերական սարքավորումների «Պրոմսվյազ» գոր-
ծարանը 10 տարեկան է։ Այդ ժամանակամիջոցում ջրվեժի սարքաշինարար-
ներն իրացրել են ավելի քան 40 տեսակի արտադրատեսակներ, որոնցից 10-ը
արժանացել են Մոսկվայի ԺՏՆՑ բրոնզե մեդալների և դիպլոմների։
Ուշադրության են արժանի հեռուստացույցների անհատական և կոլեկտիվ
օգտագործման անտենաների ուժեղացուցիչները, որոնք օգտագործվում են
թույլ հաղորդումների կարգավորման համար։
ԱՏՖ մակնիշի հեռախոս-ավտոմատ-տեղեկատու սարքն աբոնենտի բա-
ցակայության ժամանակ, հեռախոսի հետ միացված ժապավենային մագնի-
տաֆոնի միջոցով, զանգահարողին հայտնում է, թե որտեղ է հեռախոսի տերը,
կամ, անհրաժեշտության դեպքում, գրանցում զանգահարողի խնդրանքը։
Ընդամենը մեկ տասնամյակի պատմություն ունեցող էլեկտրոնային և ռա-
դիոէլեկտրոնային արդյունաբերությունն իր զարգացման տեմպերով և թո-
ղարկվող արտադրանքի բազմազանությամբ ու կարևորությամբ առաջնակարգ
տեղ է գրավում հանրապետության մեքենաշինական արդյունաբերության մեջ։
Հայկական կիսահաղորդչային էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, հեռավոր
կապի սարքերը, ռադիոտեխնիկական և ֆերիտային իրերը, էլեկտրալիցքային-
կրնդենսատորները, ռելեները և տասնյակ այլ կարգավորող, կառավարող, ազ-
դանշանային արագ գործող սարքեր լայնորեն օգտագործվում են երկրի ժո-
ղովրդական տնտեսության տարբեր բնագավառներում։
Ավտոմոբիլային արդյունաբերության զարգացման գործում խոշոր նշա-
նակություն ունեցավ ավտոշինության արդյունաբերության առաջնեկի՝ Երևանի
բեռնատար ավտոմեքենաների և ավտոբեռնիչների գործարանի ստեղծումը,
ինչպես նաև ավտոպահեստամասերի գործարանի վերակառուցումն ու նոր
կարողությունների գործարկումը։ Թեև բեռնատար ավտոմեքենաների և ավտո-
բեռնիչ գործարանների շինարարությունը լրիվ չի ավարտված, բայց ավտոշի-
նարարների արտադրանքն արդեն լայն ճանաչում է գտել երկրի ժողովրդա-
կան տնտեսության մեջ։ Ավտոգործարանի կոլեկտիվի եռուն ջանքերի շնորհիվ
ստեղծված իզոթերմիկ մեքենաների փորձնական նմուշները բարձր գնահա-
տականի արժանացան, և գործարանը ձեռնամուխ է եղել դրանց արտադրու-
թյանը։
Ավտոբեռնիչների արտադրանքը 1970 թ., 1965-ի համեմատությամբ, կա-
ճի ավելի քան 2,5 անգամ։
Ավտոմոբիլային արդյունաբերությունը զարգացման մեծ հեռանկարներ
ունի։ Նոր հնգամյակում այդ ճյուղի համախառն արտադրանքը կաճի ավելի
քան երկու անգամ։ Վերջին տասնամյակում մեծ չափով զարգացել է քիմիական
մեքենաշինությունը, որն ընդգրկում է Երևանի կոմպրեսորների, պոմպերի,
ամրանների և Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանները։
Հայաստանի բազմաճյուղ մեքենաշինության զարգացումն անհնար է
առանց գիտատեխնիկական մտքի և պրակտիկայի կայուն համագործակցու-

թյան։ Վերջին տարիներին մեր հանրապետությունում հիմնվել են մի շարք գիտատեխնիկական ձեռնարկություններ ու լաբորատորիաներ, որտեղ հայ գիտնականներն ու ինժեներներն ստեղծել են հարյուրավոր ժամանակակից մեքենաներ, մշակել բազմաթիվ կատարելագործված տեխնոլոգիական պրոցեսներ և հաջողությամբ արմատավորել արտադրության մեջ։

Երևանի կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվը խոշոր դեր է խաղացել հանրապետության էլեկտրատեխնիկական ու սարքաշինական արդյունաբերության զարգացման գործում։ Ինստիտուտում մշակվել և արտադրության մեջ արմատավորվել են ավելի քան 40 տիպի ուժային տրանսֆորմատորներ, հարյուրավոր տիպի միասնական սերիայի գեներատորներ, շարժական էլեկտրակայաններ, սարքեր, ապարատներ, կաբելային շինվածքներ և բազմաթիվ այլ էլեկտրատեխնիկական սարքեր։ Երկրի մոտ 20 ձեռնարկությունների նոմենկլատուրայի մեջ են մտցվել հայ գիտնականների և կոնստրուկտորների մշակած նոր, կատարելագործված կոնստրուկցիայի մեքենաներն ու սարքավորումները։

Երևանի մետաղահատ հաստոցների փորձարարական գիտահետազոտական ինստիտուտի անդրկովկասյան մասնաճյուղի գիտնականների և կոնստրուկտորների ստեղծած շատ տեսակի մետաղամշակման հաստոցներ, դարբնոցա-մամլիչային մեքենաներ արտադրվում են Միության ավելի քան 25 ձեռնարկություններում։

Մեքենաշինության զարգացման գործում խոշոր աշխատանքներ են կատարել նաև Երևանի մեքենաշինության կոնստրուկտորական ու տեխնոլոգիական, Կիրովականի «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտները, ինչպես նաև Երևանի և Լենինականի սարքաշինական հատուկ կոնստրուկտորական բյուրոների կոլեկտիվները։

Հայաստանի մեքենաշինության զարգացման բարձր մակարդակի մասին է վկայում 1969 թվականի ամռանը ՍՍՀՄ ԺՏՆՑ ներկայացված հանրապետության մեքենաշինական արդյունաբերության 22 ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների ստեղծած 86 տարբեր տեսակի ժամանակակից մեքենաների ու սարքերի լավագույն նմուշները և 310 գյուտարարների ու նորարարների գյուտերը, որոնք էական նշանակություն ունեն ո՛չ միայն մեր հանրապետության, այլև երկրի ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացի համար։

Հանրապետության ութ կոլեկտիվներ և 234 նորարարներ արժանացան ցուցահանդեսի մեդալների ու դիպլոմների։

Մեր հայրենիքը թևակոխեց հոբելյանական տարին՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման պանծալի 50-ամյակը։ Դժվարին, դարավոր ճանապարհ անցած հայ ժողովրդի համար հիսուն տարին մի ակնթարթ է, սակայն մի այնպիսի ակնթարթ, որն ավելի շատ բան տվեց հայ ժողովրդին, քան նախորդ հազարամյակները։

# ՄԵՐ ՇՐՋԱՆԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՕՋԱԽՆԵՐԸ

ՋԵՄՄԱ ԱՆԱՆՅԱՆ

ՀԿԿ Իջևանի շրջկոմի քարտուղար

Սովետական ժողովրդի, աշխարհի պրոգրեսիվ մարդկության հետ մեկտեղ,
մեր աշխատավորները նախապատրաստվում են նշելու մեծ առաջնորդի
ծննդյան 100-ամյա տարելիցը։ Վ. Ի. Լենինի հոբելյանական տարվան զու-
գադիպում է Հայաստանում նրա գաղափարների հաղթանակի 50-ամյակը։
Ահա թե ինչու մեր երախտագետ ժողովուրդը, մեր ծաղկող հանրապետության
ամեն մի շրջան, քաղաք ու գյուղ անդուլ ջանում են հայրենանվեր նորանոր
նվաճումներով նշանավորել պատմական այդ օրը։

Հեղափոխական տրադիցիաներ ունեցող Իջևանի շրջանը համաժողովրդա-
կան տոնը կդիմավորի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բնագա-
վառում ձեռք բերած այնպիսի հաջողություններով, որոնց մասին մինչև հե-
ղափոխության հաղթանակը երազել անգամ չէր կարող։ Ստիճանաբար հաղ-
թահարելով տնտեսական կյանքի դժվարությունները՝ սովետական կարգերի
հաստատման առաջին իսկ տարիներից շրջանի կուսակցական ու սովետական
կազմակերպությունները մեծ ջանքեր թափեցին յուրաքանչյուր գյուղում կուլ-
տուրական օջախների կազմակերպման, ակումբների, գրադարանների ստեղծ-
ման, գրքային հարուստ ֆոնդ ձեռք բերելու համար։

Այժմ շրջանում գործում են կուլտուր-լուսավորական 40 հիմնարկություն։
Բոլոր գյուղերում, ավաններում կան ակումբ-գրադարաններ, կուլտուրայի
տներ։ Միայն գրքային ֆոնդը Իջևանի շրջանում հասնում է 160 հազարի։ Գյու-
ղերում կան 10 կինո-թատրոն, ծայրամասային գյուղերն սպասարկում է շրջիկ
կինոն։ Իջևան քաղաքում գործում են երկու կինո-դահլիճ։ Կուսակցական կազ-
մակերպությունների նախաձեռնությամբ վերջին երկու տարում շրջանի բոլոր
գյուղերում հասարակական կարգով ստեղծվել են գյուղական տուն-թանգա-
րաններ, ուր ցույց է տրված թե ինչպիսին էր նախահեղափոխական հայ գյուղը
և ինչ նվաճումներ ունի սովետական իշխանության տարիներին։ Կուլտուր-
լուսավորական հիմնարկների աշխատողներն իրենց առաջնահերթ խնդիրն են
համարում աշխատավորների կուլտուրական հանգստի պատշաճ կազմակեր-
պումը։

Աշխատավորների կուլտուրական հանգիստը լավ են կազմակերպում Իջե-
վանի քաղաքային կուլտուրայի տունը, շրջանային, քաղաքային գրադարան-

ները. Այգեհովտի, Լալիգյուղի, Ջողազի ակումբները կազմակերպում են գրքերի քննարկում, հանդիպումներ գրողների հետ, բեմադրություններ, գիտական սեսիաներ, որոնք հետաքրքիր են անցնում և արժանանում տեղական ու հանրապետական մամուլի ուշադրությանը։ Ակնհայտ հաջողությունների է հասել քաղաքի Արմեն Գուլակյանի անվան կուլտուրայի տան ժողովրդական թատրոնը, որի երիտասարդ ռեժիսյորն է Երևանի գեղարվեստա-թատերական ինստիտուտի ռեժիսյորական ֆակուլտետի շրջանավարտ Արտաշես Հովհաննիսյանը։ Մասնակցելով մեծ Հոկտեմբերի 50-ամյակի պատվին կազմակերպված թատերական ինքնագործ արվեստի փառատոնին, մեր թատրոնը նվաճեց առաջին տեղը (հանրապետության ժողովրդական և ինքնագործ երեսուն թատրոններից) և հանդես եկավ Մոսկվայի գեղարվեստական թատրոնի բեմահարթակում։ Չորս դերասաններ ստացան Ոսկե մեդալ, իսկ կոլեկտիվին շնորհվեց առաջին կարգի դիպլոմ։

Այս հաջողությունը հիմնականում պայմանավորված է ռեժիսյոր Արտաշես Հովհաննիսյանի բարեխիղճ ստեղծագործական աշխատանքով։ Նրա բոլոր բեմադրություններն արժանացել են թատերասեր հասարակայնության հավանությանը։ Ա. Հովհաննիսյանն իր դիպլոմային աշխատանքը պաշտպանեց Իջևանում, Վ. Փափազյանի Ժայռ դրամայի բեմադրությամբ։ Իջևանի ժողովրդական թատրոնի կենսագրության մեջ այն կմնա որպես բարձրարժեք մի ներկայացում։ Ժողթատրոնի կոլեկտիվը մինչև այժմ բեմ է հանել տարբեր ժանրերի 10 ներկայացում։ Այժմ թատրոնի խաղացանկում են Վ. Փափազյանի Ժայռ, Ա. Արաքսմանյանի Վարդեր և արյուն, Դոմբաձեի և Լորդկիբանիձեի Ես, տատիկս, Իլիկոն և Իլարիոնը, Գ. Գևորգյանի Կապույտ ձիավորը, Գ. Բորյանի Կամրջի վրա, Հ. Թումանյանի Գիքոր պիեսները։ Թատրոնն իր բեմադրություններով գեղարվեստական մեծ հաճույք է պատճառում ինչպես շրջանի բոլոր գյուղերի, այնպես էլ Շամշադինի, Դիլիջանի և Կարմիրի հանդիսատեսներին։ Ներկայացումները դիտել են մոտ 100 հազար մարդ։

Թատրոնում գործում են մոտ երեք տասնյակ սիրողներ, որոնք մասնակցում են փորձերին, օգնում նրա բեմադրություններին։ Նրանցից կարելի է նշել Գրիշա Պարոնյանին (միջշրջանային մեքենահաշվային կայանից), Լիպարիտ Սառիկյանին, Ռազմիկ Պարոնյանին (փայտամշակման կոմբինատից), Լյովա Ճաղարյանին (շրջկոոպմիությունից), Սեդա Ասատրյանին (№ 2 միջնակարգ դպրոցի ուսուցչուհի), Սպարտակ Հակոբյանին (կուլտուրայի տան դիրեկտոր), Վանիկ Ղազարյանին (կենցաղ սպասարկման կոմբինատից), Սոֆյա Ներսիսյանին (շրջկապի հանգույցից), Սիլվա Խեչյանին (գլխավոր պանրագործարանից), Քաջիկ Վիրաբյանին (գյուղշինվարչությունից) և ուրիշների։ Ինչպես ժողովրդական, այնպես էլ տիկնիկային թատրոնները ելույթներ են ունեցել Աբխազական ինքնավար հանրապետության հայաշատ բնակավայրերում։

Երկար տարիներ կուլտուրայի տանն է աշխատում պարարվեստի շնորհալի մասնագետ Ժաննա Խաչատրյանը։ Նրա շնորհիվ բեմ է բարձրացել այնպիսի մի նուրբ արվեստ, ինչպիսին բալետն է։ Ժաննա Խաչատրյանը կուլտուրայի տանը ղեկավարում է մի քանի խումբ։

Աշխատանքային ժամերից հետո միշտ մարդաշատ է լինում կուլտուրայի տունը։ Ցերեկները միջոցառումներ են անցկացվում դպրոցականների համար, իսկ երեկոյան կազմակերպվում են հանդիպումներ, դասախոսություններ, ինքնագործ խմբերի ուժերով՝ համերգներ, ներկայացումներ։ Կուլտուրայի տան համապատասխան սենյակներում իրենց հերթական փորձերն են անցկացնում



ժողովրդական գործիքների, էստրադային, ակորդեոնիստների, մանկական բալետի և այլ ինքնագործ խմբեր։

Տասը տարուց ավելի է, ինչ Իջևանում ստեղծվել է երաժշտական դպրոց։ Այժմ դպրոցում սովորում են 120 աշակերտ, որոնց երաժշտական կրթությամբ զբաղվում են 10 ուսուցիչ։ Դպրոցում հաճախակի տեղի են ունենում ստեղծագործական երեկոներ, հավաքներ, փոխադարձ այցելություններ հարևան շրջանները։ Հատկանշական է, որ երաժշտական դպրոցի առաջին շրջանավարտները, երաժշտական կրթությունը շարունակելով Երևանում, Կիրովականում, այժմ վերադարձել են և դարձել այդ դպրոցի ուսուցիչներ։

Նրանց ուժերով ու ղեկավարությամբ, ինչպես Իջևանում, այնպես էլ շրջանի շատ գյուղերում կազմակերպվել են բովանդակալից համերգ-դասախոսություններ, հետաքրքրական երեկոներ, ցերեկույթներ՝ նվիրված Կոմիտասի ծննդյան 100-ամյակին։ Իր բարեխիղճ աշխատանքով, պատասխանատվության բարձր զգացումով այդ գործում աչքի ընկավ երաժշտական դպրոցի դիրեկտոր Ռ. Մելիքյանը։ Նման միջոցառումները ակնհայտ ցույց են տալիս, թե որքան են մեծացել մեր շրջանի աշխատավորների հետաքրքրասիրությունների շրջանակները, բարձրացել նրանց կուլտուրական մակարդակը։ Դրա լավագույն վկայությունը մեր կուլտուրայի տան լեփ-լեցուն դահլիճն է համերգի, ներկայացման, դասախոսությունների ժամանակ։

Կուլտուրայի տունը, ակումբը, գրադարանը կոչված են բավարարելու մարդկանց կուլտուրական նախասիրությունները։ Այդ տեսակետից իրենց բարեխիղճ աշխատանքով մեծ հեղինակություն են վայելում հանրապետության վաստակավոր գրադարանավարուհի Հռիփսիմե Զոբանյանը (Այգեհովիտ), Ջողազի ակումբի վարիչ Նորայր Արզումանյանը, Աչաջրի գրադարանի վարիչ Անիչկա Օթարյանը, մանկական գրադարանի աշխատակիցներ Ռոզա Թիրաբյանը և Ազգուշ Դանիելյանը, Կայան ավանի գրադարանի վարիչ Լուսյա Վասիլյանը, Աղդանի գրադարանի վարիչ Մելիք Ստեփանյանը և ուրիշներ։ Հոբելյանական տարում շրջանի գրադարանների գործունեությանը նոր թափ հաղորդեց գրադարանների համամիութենական հասարակական ստուգատեսը։ Հանրապետական ժյուրին, ամփոփելով ստուգատեսի արդյունքները, Այգեհովտի և քաղաքի մանկական գրադարաններն արժանացրեց հանրապետության կուլտուրայի մինիստրության և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերի։

Հատկանշական է Այգեհովտի գրադարանի աշխատանքը։ Գիրքը մասսաների սեփականությունը, գրադարանն աշխատավորների կուլտուրական հանգրվանի կազմակերպման լավագույն օջախ դարձնելը, տարիներ շարունակ եղել են գրադարանի վարիչ Հ. Զոբանյանի հիմնական անելիքը։ Գրադարանի կոլեկտիվն անում է ամեն ինչ գյուղի աշխատավորության և երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը բարելավելու, արտադրության մեջ աշխատանքի առաջավոր փորձի արմատավորման համար։

Այդ խնդիրների լուծման նպատակով գրադարանն ուժեղացրել է իր կապը գյուղական կազմակերպությունների հետ. ունի գործունյա խորհուրդ, որը կազմակերպել է ցուցահանդեսներ՝ նվիրված Վ. Ի. Լենինի, Մ. Գորկու ծննդյան 100, գիտական կոմունիզմի հիմնադիր Կ. Մարքսի ծննդյան 150-ամյակներին, ռուս և հայ ժողովրդի դարավոր բարեկամությանը։ Բարձր գնահատվեց գրադարանի վարիչ Հռիփսիմե Զոբանյանի երկար տարիների ազնիվ ու շնորհակալ աշխատանքը։ Նա արժանացավ հանրապետության վաստակավոր գրադարանավարուհու պատվավոր կոչման, իսկ տեղական սովետների՝ անցած

ընտրությունների ժամանակ նա ընտրվեց գյուղական սովետի գործադիր կոմիտեի նախագահ։

Մանուկների գեղագիտական ճաշակի զարգացմանն է նպաստում շրջանային մանկական գրադարանը (վարիչ՝ Ռ. Թիրաքյան)։ Երիտասարդությանը հեղափոխական լավագույն տրադիցիաների ոգով դաստիարակելու գործում խրախուսելի է հեղափոխական թանգարանի աշխատանքը. այստեղ կենտրոնացված են մեր ժողովրդի հեղափոխական պայքարի պատմության վառ էջերն արտացոլող պետական փաստաթղթեր, անձնական իրեր, լուսանկարներ, գեղարվեստական կտավներ։ Պատշաճ ձևով են ներկայացված աշխատավորական զանգվածների հերոսական պայքարը, մեր ժողովրդի անվանի զավակների՝ քաղաքական առաջադեմ մտածողների հեղափոխական գործունեությունը։ Թանգարանն զգալի գործ է կատարում նաև էքսպոզիցիաներ ստեղծելու կամ եղածների վերակառուցման, հարստացման համար։ Մեծ արձագանք են գտնում մասսայական այնպիսի միջոցառումներ, ինչպես՝ ցուցասրահներում կազմակերպվող հանդիպումները, կոմերիտական տոմսերի հանդիսավոր հանձնումը, պիոներական ցերեկույթները, ժողովրդական համալսարանների պարապմունքները, պատմության դասերը և այլն։ Թանգարանն ակտիվ նախապատրաստվում է լենինյան թեմաներով կազմակերպվող էքսպոզիցիաների ստեղծման համամիութենական ստուգատեսին։

Մարդկանց դաստիարակության գործում անժխտելի է կինոյի դերը։ Զգալի աշխատանք է կատարված Վ. Ի. Լենինին նվիրված կինոֆեստիվալների, կինոլեկտորիումների կազմակերպման ուղղությամբ։ Ինչպես քաղաքի, այնպես էլ գյուղական կինոկետերում էկրաններից չեն իջնում լենինյան թեմատիկային նվիրված նկարները։

Շրջանում զբաղվում են նաև կուլտուր-լուսավորական օջախների նյութական բազայի ստեղծմամբ, կառուցվում են և այս տարի շահագործման կհանձնըվեն Աչաջուր, Սևքար, Ջողազ գյուղերի կուլտուրայի տները, Աղդանում սկսվել է կինո-թատրոնի շինարարությունը։ Նախատեսվում է առաջիկա 1—2 տարում կուլտուրայի տներ կառուցել նաև Լալիգյուղում և Այգեհովտում։

Դաշտային աշխատանքների եռուն շրջանում կոլտնտեսականները և սովխոզի բանվորները աշխատանքի վայրում— ծխախոտի պլանտացիաներում, այգիներում, հեռավոր յայլաղներում— լսում են համերգ, հետաքրքրական զեկուցում, զրույց, հաղորդակից դառնում մեր երկրում տեղի ունեցող կարևոր իրադարձություններին, դիտում կինո և այլն։

Շրջանի կուսակցական ու սովետական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն են նվիրում աշխատավորների դաստիարակության գործում կուլտուր-լուսավորական օջախների դերի բարձրացմանը, մարդկանց կուլտուրական հանգստի և սպասարկման կազմակերպմանը, ամեն ինչ անում Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակներն արժանավայել դիմավորելու համար։



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՄՈՒՆԻԶՄԸ «ԶՍՊԵԼՈՒ» ԱՄԵՐԻԿՅԱՆ ԴՈԿՏՐԻՆԱՆ

Հետպատերազմյան առաջին ժամանակաշրջանում կոմունիզմը «զսպելու» դոկտրինան ձևակերպվեց ու հռչակվեց որպես ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ղեկավար դիրքորոշում և դարձավ ստրատեգիական ու տակտիկական այն պայքարի ծրագիրը, որ ԱՄՆ-ը մղում է ընդդեմ Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, համաշխարհային բանվորական ու կոմունիստական և ազգային-ազատագրական շարժման, ընդդեմ խաղաղության, դեմոկրատիայի ու ազգային անկախության բոլոր ուժերի։

Կոմունիզմը «զսպելու» դոկտրինան հետամտում էր ընդհանուր նպատակներ։ Այն հղացել էր որպես ուժերի հավաքման և համաշխարհային մասշտաբով ագրեսիվ գործողությունների անցնելու ծրագիր, ստրատեգիա ու տակտիկա։ Այդ քաղաքականությունն իր սուր ծայրով ուղղված էր համաշխարհային սոցիալիստական սիստեմի հիմնական ուժի՝ ՍՍՀՄ դեմ։ Իրենց ագրեսիվ ձրգտումները քողարկելով «սովետական կոմունիզմի սպառնալիքի» մտացածին առասպելով, ԱՄՆ-ի կառավարող շրջանները ՍՍՀՄ դեմ բոլոր գծերով (տընտեսական, քաղաքական, գաղափարական և ռազմա-ստրատեգիական) պայքարելու կուրս վերցրին։ ՍՍՀՄ դեմ ուղղված այդ պայքարը, որը հիմնված էր մարտնչող հակակոմունիզմի գաղափարախոսության դրույթների և «ուժի դիրքերից» վարվող քաղաքականության վրա, ստացավ «սառը պատերազմ» չարագուշակ անունը։ «Զսպելու» դոկտրինան այդ քաղաքականության գաղափարական-տնտեսական հիմքն է, նրա ծրագիրը, ստրատեգիան ու տակտիկան։

«Զսպելու» դոկտրինայի առանցքը ՍՍՀՄ նկատմամբ ԱՄՆ-ի «ուժային գերակշռության» գաղափարն է։ Նրա հեղինակները ելնում էին ԱՄՆ-ի «գերազանցող հակաուժը» ՍՍՀՄ-ին և սոցիալիզմի մյուս երկրներին հակադրելու նախադրյալից՝ նրանց ջախջախելու միտումով։ Բայց, ի տարբերություն ուժի պաշտամունքի առավել ռազմատենչ կողմնակիցների, որոնք կանգնած էին ՍՍՀՄ և սոցիալիստական լագերի դեմ ուղղված «տոտալ պատերազմի» դիրքերում, հակակոմունիզմի քաղաքականության հեղինակները գտնում էին, որ կարելի է սոցիալիզմին հաղթել առանց ընդհանուր պատերազմի, սոցիալիզմի երկրները ռազմա-քաղաքական բլոկներով, ստրատեգիական պլացդարմներով, ռազմական բազաներով շրջապատելու և նրանց վրա մշտապես տնտեսական, քաղաքական, գաղափարական ու ռազմա-ստրատեգիական ճնշում գործադրելու միջոցով։

ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ղեկավար սկզբունքի՝ «զսպելու» դոկտրինայի հռչակման և դրա կենսագործման առաջին քայլը «Տրումենի դոկտրինան» էր։ Այդ անունն ստացավ արտաքին քաղաքական այն ծրագիրը, որը շարադրված էր պրեզիդենտի կոնգրեսին ուղղած 1947 թ. մարտի 12-ի ուղերձում՝ Հունաստանին ու Թուրքիային «օգնելու» հարցի կապակցությամբ։ ԱՄՆ-ը ձգտում էր Անգլիային դուրս մղել այդ երկրներից և Բալկանների ու Մերձավոր Արևելքի շրջանում գրավել ՍՍՀՄ դեմ ուղղված ստրատեգիական պլացդարմները։ Իրենց մտադրությունները քողարկելու համար նրանք հորինեցին Հունաստանի ու Թուրքիայի նկատմամբ «սովետական սպառնալիքի» առասպելը։

1947 թ. փետրվարի 27-ին կոնգրեսի պարագլուխների հետ ունեցած խորհրդակցությունում Տրումենն ու Մարշալը ասում էին, թե Հունաստանի ու Թուրքիայի վրա «կախված է սովետական սպառնալիք» և հայտարարում էին, որ եթե ԱՄՆ-ը նրանց անհապաղ օգնություն ցույց չտա, ապա «սովետական գերիշխանությունը կտարածվի Եվրոպայի, Միջին Արևելքի և Ասիայի վրա»։ Ապահովելով կոնգրեսի պարագլուխների աջակցությունը, Տրումենը մարտի 12-ին, կոնգրեսին հղած ուղերձում, առաջարկեց Հունաստանին ու Թուրքիային օգնելու նկատառումով այդ երկրներին հատկացնել 400 միլիոն դոլար և այնտեղ ուղարկել ամերիկյան էքսպերտներ ու հրահանգիչներ՝ «օգնության» և հունական ու թուրքական զորքերի վարժեցման ծրագիրը կենսագործելու համար։

«Տրումենի դոկտրինան» ամբողջ աշխարհում հեղափոխական ու ազատագրական շարժումների դեմ բռնի միջոցներով պայքարելու, կոմունիզմը «զսպելու» ծրագիր էր։

ՍՍՀՄ-ը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները և աշխարհի առաջադիմական ուժերը դատապարտում էին «Տրումենի դոկտրինայի» ագրեսիվ դրույթները, որոնք Արևմուտքի կապիտալիստական շրջաններում տարակուսանք առաջացրին, իսկ ԱՄՆ-ում հանդիպեցին զգալի օպոզիցիայի։ Վերջինիս ներկայացուցիչներից մեկը՝ կոնգրեսմեն Վաֆետը գրում էր. «Պարոն Տրումենը պահանջում է, որ Ամերիկան մեծ մասշտաբով միջամտի Բալկանների քաղաքական, տնտեսական և ռազմական գործերին։ Նա խոսում է այդպիսի միջամտության մասին և մյուս երկրներում... Եթե նույնիսկ դա ցանկալի էլ լիներ, Ամերիկան այնքան ուժեղ չէ, որ ռազմական ուժերի օգնությամբ կառավարի աշխարհը» («Congressional Record» March *I, 1947*, p. *2289—2291*)։

Երկար վիճաբանություններից հետո ԱՄՆ-ի կոնգրեսը 1947 թ. մայիսի 20-ին հավանություն տվեց Տրումենի ուղերձին և օրենք ընդունեց Հունաստանին ու Թուրքիային օգնելու մասին։ Միայն 1947 թ. ԱՄՆ-ը այդ նպատակի համար ծախսեց 500 միլիոն դոլար։ 1948 թ. Հունաստանն ու Թուրքիան մտան «Մարշալի պլանի» սիստեմի մեջ, և նույն թվականի ապրիլի 3-ի օրենքով այդ երկրների համար միջոցներ հատկացվեցին հիշյալ պլանի իրականացման համար։

«Տրումենի դոկտրինայի» կենսագործմամբ ԱՄՆ-ը Հունաստանի ու Թուրքիայի տերիտորիաները դարձրեց ստրատեգիական պլացդարմ և այդ երկրներին ներգրավեց իր ագրեսիվ քաղաքականության ոլորտը։ 1958 թ. Հունաստանն ու Թուրքիան ներգրավվեցին ՆԱՏՕ-ի մեջ։

Ղեկավարվելով «Տրումենի դոկտրինայի» դրույթներով, ԱՄՆ-ը ձգտում էր գաղափարական, քաղաքական և ստրատեգիական միջոցներով ճնշում գոր-



ծադրել ՍՍՀՄ վրա, դիմադրել սոցիալիզմի ուժերի համախմբմանը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում և «զսպել» կոմունիզմը։ Բայց նրան չհաջողվեց կասեցնել սոցիալիզմի ուժերի առաջընթացը։ Ուստի, ԱՄՆ-ը հրաժարվեց «Տրումենի դոկտրինայի» մեթոդներից և կոմունիզմը «զսպելու» իր նպատակներին հասնելու համար առաջ քաշեց պայքարի այլ ձևեր, գործողությունների այլ տակտիկա։

* * *

«Զսպելու» քաղաքականության կիրառման հիմնական ոլորտը Եվրոպան էր, որտեղ ԱՄՆ-ը հույս ուներ վճռական հաջողությունների հասնել սոցիալիզմի ուժերի դեմ մղվող պայքարում։ Այդ դոկտրինայի հեղինակները գտնում էին, որ Եվրոպան, որպես արդի կապիտալիզմի երկրորդ հիմնական կենտրոն ԱՄՆ-ից հետո, պետք է վերջինի հետ կարևորագույն դեր խաղա «համաշխարհային կոմունիզմի» դեմ մղվող պայքարում, որ «զսպելու» քաղաքականության հաջողությունը Եվրոպայում կապահովի այդ քաղաքականության հաջողությունը համաշխարհային մասշտաբով և որ, այդ պատճառով, իր արտաքին քաղաքականությունն իրականացնելիս ԱՄՆ-ը պետք է ուշադրությունը բևեռի եվրոպական ստրատեգիական ուղղության վրա։

ԱՄՆ-ի ագրեսիվ ակտիվությունը Եվրոպայում բացատրվում էր երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծված իրադրությամբ։ Պատերազմի ժամանակաշրջանում ԱՄՆ-ը, ղեկավարվելով «ուժերի հավասարակշռության» քաղաքականությամբ, ձգտում էր օգտագործել ֆաշիստական Գերմանիայի ուժերը ՍՍՀՄ-ը առավելագույն չափով թուլացնելու և իր գերիշխող դիրքը հետպատերազմյան աշխարհում ապահովելու համար։ Բայց ֆաշիզմի դեմ Սովետական Միության տարած հաղթանակը հողմացրիվ արեց այդ հույսերը։ Իմպերիալիստական շղթայի ճեղքումը, որ ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունների շնորհիվ տեղի ունեցավ Կենտրոնական ու Հարավ-Արևելյան Եվրոպայի երկրներում, և այդ երկրների անցումը սոցիալիզմի ուղին, խիստ նեղացրին կապիտալիզմի տիրապետության ոլորտը Եվրոպայում։ Գերմանիայի ու Իտալիայի ջախջախման և Անգլիայի, Ֆրանսիայի ու Արևմտյան Եվրոպայի մյուս երկրների ընդհանուր թուլացման հետևանքով խարխլվեցին կապիտալիստական սիստեմի դիրքերը Եվրոպայի այդ շրջանում։ Ժողովրդական ուժերի դիմադրությունը հաղթահարելու և իրենց դիրքերն ամրապնդելու նպատակով, նշված երկրների բուրժուական շրջանների ձեռնարկած փորձերը սրեցին քաղաքական իրադրությունն այդ երկրներում, ուժեղացրին աշխատավորների ու կոմունիստական կուսակցությունների պայքարն ընդդեմ բուրժուազիայի բռնացման, հանուն սոցիալական ու դեմոկրատական ազատությունների։ Այդ բոլորը փոխեց ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի և կապիտալիստական կարգերի խորտակման, ռեալ սպառնալիք ստեղծեց Եվրոպայում՝ կլասիկ կապիտալիզմի այդ օրրանում։

ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները գիտակցում էին, որ, առանց եվրոպական կապիտալիզմի, «համաշխարհային կապիտալիստական սիստեմ» հասկացությունը կկորցնի իր նշանակությունը։ Ուստի, նրանք ձգտում էին փրկել այդ սիստեմը սնանկացման սպառնալիքից, նոր կյանք ներարկել նրան և ամրապնդել նրա հիմքերը։ Այդ բանին հասնելու համար նրանք առաջ քաշեցին «եվրոպական վերականգնման ծրագիրը», որն ստացավ «Մարշալի պլան» անունը։ Այդ ծրագրի նախնական գաղափարը ձևակերպված է պետա-

կան դեպարտամենտի քաղաքականության պլանավորման բաժնի 1947 թվականի մայիսի 23-ի հուշագրում։ Դրա նախապատրաստումը ղեկավարող Քենանը իր մեմուարներում գրել է, որ նրա հեղինակները ելնում էին այն բանից, թե «կոմունիստները եվրոպական ճգնաժամը կօգտագործեն հանուն իրենց նպատակների, և կոմունիստական հետագա հաջողությունները լուրջ սպառնալիք կստեղծեն ամերիկյան հասարակության համար»։ Այդ պատճառով ԱՄՆ-ը պետք է «գործուն դիմադրություն ցույց տան սոցիալիզմի ուժերին» Եվրոպայում, իսկ «ամերիկյան ջանքերը պետք է գործադրվեն ոչ միայն կոմունիզմի դեմ պայքարելու, այլ հանուն եվրոպական հասարակության տնտեսության ու էներգիայի վերականգնման», գործադրվեն ոչ թե ուղղակի կոմունիզմի, այլ տնտեսական այն անկայունության դեմ, որը եվրոպական հասարակությունը խոցելի է դարձնում ամեն տեսակ տոտալիտար շարժումների համար և որն այժմ օգտագործում է ռուսական կոմունիզմը (տե՛ս G. Kennan Memoiv, pp. 325—353. E. Goldman, The Cruelal Dekadeand Alter... pp. 68, 71, 79)։

«Եվրոպայի վերականգնման ծրագիրը» բացահայտորեն շարադրվեց 1947 թվականի հունիսի 5-ին Հարվարդի համալսարանում ԱՄՆ-ի պետական քարտուղար Մարշալի արտասանած ճառում։ Նա հայտարարեց, որ ԱՄՆ-ի օգնությունը եվրոպական երկրներին հետևյալ նպատակն է հետապնդում. «նպաստել նրանց վերականգնմանը», «ստեղծել քաղաքական ու սոցիալական այնպիսի պայմաններ, որտեղ կարող են իրենց գոյությունը պահպանել ազատ ինստիտուտները» (The Department of state Bulletion, June 15; 1947, pp. 1159—1166);

«Մարշալի պլանը» հետապնդում էր փոխադարձաբար իրար հետ կապված երկու նպատակ. մի կողմից՝ հասնել կապիտալիզմի կայունացմանը Արևմտյան Եվրոպայում և նրան հնարավորություն ընձեռել դիմադրելու հեղափոխական ուժերի գրոհին, մյուս կողմից՝ հասնել իմպերիալիզմի ուժերի կոնսոլիդացմանը՝ ԱՄՆ-ի ղեկավարությամբ սոցիալիզմի ուժերի դեմ պայքարելու համար։

«Մարշալի պլանի» կարևորագույն նպատակն էր պայքարել սոցիալիստական սիստեմի դեմ։ «Ամբողջ աշխարհում նորմալ տնտեսական դրությունը վերականգնելու» և «կենսունակ էկոնոմիկան վերածնելու» դիմակի տակ սքողված էին՝ սոցիալիզմը ոչնչացնելու և համաշխարհային կապիտալիստական սիստեմի անբաժան տիրապետությունը վերականգնելու ձգտումները։ Սոցիալիստական սիստեմի դեմ հաջողությամբ պայքարելու համար ԱՄՆ-ը առաջնակարգ նշանակություն էր տալիս կապիտալիզմի հիմքերի ամրապնդմանը Եվրոպայում։ Պրեզիդենտի տնտեսական զեկուցման առթիվ կոնգրեսի միացյալ կոմիտեի ընդունած փաստաթղթերում նշվում էր, որ «երկու սիստեմների պայքարում առավել կարևոր է նրանց համապատասխան տնտեսական հզորության գործոնը։ Ո՛չ բարոյական ու տնտեսական կայունությունը և ոչ էլ ռազմական ուժը չեն կարող գոյություն ունենալ առանց պատշաճ տնտեսական բազայի։ Այդ փաստի պարզ գիտակցումը ստիպեց Միացյալ Նահանգներին ընդունելու «Մարշալի պլանը»։

Բուրժուական պրոպագանդան «Մարշալի պլանը» համարեց «անշահախնդիր» և «մարդասիրական», որն, իրականում, ծառայում էր Արևմտյան Եվրոպայի երկրները ստրկացնելու, վերջինները սոցիալիզմի ուժերի դեմ մղվող պայքարում օգտագործելու նպատակներին։



«Մարշալի պլանը» խոսքով եվրոպական բոլոր երկրներին կոչ էր անում մասնակցելու «Եվրոպայի վերականգնման ծրագրի իրականացմանը»։ Գործով ԱՄՆ-ը ձգտում էր իր ֆինանսա-տնտեսական օգնությունն օգտագործել ՍՍՀՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ պայքարելու, իր քաղաքականությունը Արևմտյան Եվրոպայի երկրների վզին փաթաթելու համար։ «Մարշալի պլանը» ԱՄՆ-ի և արևմտաեվրոպական երկրների ռեակցիոն դավադրությունն էր սոցիալիզմի երկրների դեմ, որի իրական նպատակները երևան եկան կյանքում։

Մերկացնելով այն առասպելը, թե «Մարշալի պլանի» նպատակը, իբր, «Եվրոպայի տնտեսական վերականգնումն է» և բացահայտելով դրա քաղաքական ու ռազմա-ստրատեգիական նշանակությունը, Ու. Ֆոստերը գրել է. «Իրականում «Մարշալի պլանը» Եվրոպայի վերականգնման ծրագիր չէ։ Դրա էությունն այն է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգների խոշոր կորպորացիաները, որոնք ղեկավարում են ինչպես հանրապետական, այնպես էլ դեմոկրատական կուսակցություններին, փորձում են իրենց վերահսկողությունը հաստատել Եվրոպայի նկատմամբ, որն աշխարհում գերիշխանություն հաստատելու նրանց ծավալուն ծրագրի մի մասն է։ Դա ռազմական պլան է» (N. Z. Foster, Lacler and the Marahall Plan, N. Y., 1948, p. 2)։

«Մարշալի պլանը» բոլոր կողմերով հակասովետական և հակակոմունիստական էր։ Տնտեսական բնագավառում դա արտահայտվում էր նրանով, որ «օտար երկրներին օգնելու մասին» օրենքը ամերիկյան օգնություն ստացող երկրներին արգելում էր ապրանքներ արտածել Սովետական Միություն և մյուս սոցիալիստական երկրները։ Օրենքը «Մարշալի պլանը» իրականացնող կառավարչին իրավունք էր տալիս օգնությունից զրկել այն երկրներին, որոնք կխախտեն այդ պայմանը։ Այսպիսով, «մարշալացված» երկրները դառնում էին սոցիալիզմի երկրները տնտեսական բլոկադայի ենթարկելու ամերիկյան քաղաքականության մասնակից։

ԱՄՆ-ը ռազմա-ստրատեգիական մեծ հույսեր էր կապում «Մարշալի պլանի» հետ։ Իր ռազմա-ստրատեգիական նպատակադրումով այն նման էր «Տրումենի դոկտրինային»։ Եթե վերջինը ձգտում էր ամերիկյան ռազմական բազաներ ու ստրատեգիական պլացդարմներ ստեղծել Բալկանների և Մերձավոր Արևելքի շրջանում, ապա «Մարշալի պլանը» նպաստում էր նույնպիսի բազաների ու պլացդարմների ստեղծմանը Արևմտյան Եվրոպայում։

«Մարշալի պլանը» հետագայում դարձավ ՆԱՏՕ-ի տնտեսական հիմքը։ ԱՄՆ-ի ավիացիայի նախկին մինիստր Ֆինլեթերը նշում էր. «Եթե «Մարշալի պլանը» չլիներ, ապա հնարավոր է, որ երբեք չէր լինի նաև ՆԱՏՕ-ն» (Финлеттер. Сила и политика, стр. 41)։

ԱՄՆ-ը հույս ուներ այդ պլանի օգնությամբ Եվրոպայում փոխել տնտեսական, քաղաքական ու ռազմական ուժերի հարաբերակցությունն իր օգտին, ստեղծել ստրատեգիական առավելություններ՝ կոմունիզմը «զսպելու» նպատակներին հասնելու համար։ Բայց ԱՄՆ-ի քաղաքականության այդ հիմնակետում «Մարշալի պլանը» չարդարացրեց իր հեղինակների ու ոգեշնչողների հույսերը։ Նրանց չհաջողվեց սոցիալիզմի երկրները ներգրավել «Մարշալի պլանի» ստրկական սիստեմի մեջ և դրանց զարգացումը վարել կապիտալիզմի վերականգնման ուղիով։ Խորտակվեցին նրա հեղինակների այն դիտավորությունները, որոնց նպատակն էր արգելակներ ստեղծել ՍՍՀՄ էկոնոմիկայի վերականգնման ու զարգացման ճանապարհին։ Ջախողվեցին ՍՍՀՄ և ժողո-

վրրդական դեմոկրատիայի երկրների համագործակցությունը քայքայելու հույսերը։

«Զսպելու» ստրատեգիական դրույթների հիմքն էր իմպերիալիստական տերությունների ռազմա-քաղաքական բլոկների ստեղծման գաղափարը, բլոկներ, որոնք ուղղված են ՍՍՀՄ և ամբողջ սոցիալիստական լագերի դեմ։

Իր ողջ պատմության ընթացքում ԱՄՆ-ը հետապնդում էր նույնիսկ պատերազմի ժամանակ ռազմական դաշինքներին չմասնակցելու քաղաքականություն։ Երկու համաշխարհային պատերազմների ժամանակաշրջանում, որոնց ԱՄՆ-ը ակտիվ մասնակցեց, նա դաշինքի մեջ չմտավ դրանց մասնակիցներից և ոչ մեկի հետ։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ը հրաժարվեց այդ տրադիցիայից և անցավ նույնիսկ խաղաղ ժամանակ ռազմա-քաղաքական բլոկներ ստեղծելու և դրանց մասնակցելու քաղաքականության։ Հետպատերազմյան առաջին տասնամյակի ընթացքում ԱՄՆ-ը ռազմա-քաղաքական համաձայնագրեր կնքեց 42 պետությունների հետ և ակտիվ ու ղեկավար դեր խաղաց ԱՊԿ-ի, ՆԱՏՕ-ի, ԱՆԶՅՈՒՍ-ի, ՍԵԱՏՕ-ի, ՍԵՆՏՕ-ի ռազմա-քաղաքական այլ խմբավորումների ստեղծման գործում։ Բլոկների այդ գլոբալ սիստեմի կարևորագույն օղակն էր ՆԱՏՕ-ն, որը դարձավ կոմունիզմը «զսպելու» քաղաքականության գլխավոր գործիքը։

ԱՄՆ-ի հովանու տակ, Ատլանտիկայի շրջանում ռազմա-քաղաքական դաշինք ստեղծելու գաղափարը ծնվեց պատերազմի տարիներին, «ատլանտիկական համագործակցության» նախագծերում՝ ի «հակակշիռ ռուսական օրբիտայի»։ Պատերազմից հետո այդ գաղափարը դրվեց գործնական հողի վրա։ ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ազդեցիկ գործիչներից Բ. Բարուխը, 1948 թվականին, սենատի արտաքին գործերի հանձնաժողովի նիստերից մեկում, հայտարարեց, որ ԱՄՆ-ը պետք է մասնակցի «ազգերի փոխադարձ երաշխիքներին» և դառնա «ագրեսիայի դեմ ուղղված դաշինքի անդամ»։ «Երաշխիքներ ասելով,— նշում էր Բարուխը,— ես նկատի ունեմ հաստատուն խոստումը՝ պատերազմի մեջ մտնել համատեղ պաշտպանության գործում, եթե դաշնակից երկրներից որևէ մեկը գրոհի ենթարկվի»։ Բարուխի գաղափարը պաշտպանեց այդ հանձնաժողովի նախագահ Ա. Վանդենբերգը, որն ակտիվ դեր խաղաց այն իրականացնելու խնդրում։

Իր իսկ խոստովանությամբ, Վանդենբերգը, ՄԱԿ-ի կանոնադրության ընդունման ժամանակից ի վեր, ուղիներ էր որոնում Անվտանգության խորհրդի մշտական անդամների միաձայնության և վետոյի իրավունքի վերաբերյալ այդ կանոնադրության կարևորագույն կետը շրջանցելու համար, որպեսզի ապահովի ԱՄՆ-ի գործողությունների ազատությունը՝ ագրեսիվ պլաններն իրականացնելու գործում։ Նա սենատին ներկայացրեց մի փաստաթուղթ, որը հայտնի է «Վանդենբերգի բանաձև» անունով։ Այստեղ առաջարկվում էր «թույլատրել ռեգիոնալ և այլ կոլեկտիվ համաձայնագրերի զարգացումը հանուն անհատական ու համատեղ ինքնապաշտպանության...»։

1949 թվականի ապրիլի 4-ին ստորագրվեց Հյուսիս-ատլանտյան պակտը, որի մասնակիցները դարձան 12 պետություններ՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, Կանադան, Բելգիան, Հոլանդիան, Լյուքսեմբուրգը, Իտալիան, Դանիան, Նորվեգիան, Իսլանդիան և Պորտուգալիան։ 1953 թվականին պակտին միացան Հունաստանն ու Թուրքիան, իսկ 1955 թվականին՝ ԳՖՀ-ն։

ՆԱՏՕ-ն դարձավ ՍՍՀՄ և սոցիալիզմի երկրների դեմ մղվող պայքարի գլխավոր զենքը։ Նրա ագրեսիվ, հակասովետական ու հակակոմունիստական



բնույթը սքողելու համար պակտի հեղինակները փորձում էին այն ներկայաց-
նել որպես «պաշտպանողական ակտ»։ Երբ 1948 թվականի դեկտեմբերին հրա-
պարակվեց պակտի նախագիծը, աշխարհը ծանոթացավ դրա բովանդակու-
թյանն ու հեղինակների դիտավորություններին։ ԱՄՆ-ի կառավարությունը
համաշխարհային հասարակական կարծիքն ապակողմնորոշելու համար հայ-
տարարեց, թե պակտը «պաշտպանողական բնույթ» ունի և «կոլեկտիվ ան-
վտանգության ակտ է»։ Նա փորձում էր ագրեսիվ բլոկների ստեղծումը ԱՄՆ-ի
արտաքին քաղաքականության մեջ ներկայացնել որպես «նոր ուղղություն»։
Այդ կապակցությամբ սովետական կառավարությունը հրապարակեց մի հայ-
տարարություն, որում մերկացրեց այդ պակտի ագրեսիվ, հակասովետական
բնույթը, նշելով, որ այն ծառայում է բռնի կերպով ԱՄՆ-ի համաշխարհային
տիրապետություն հաստատելու նպատակներին. պակտի կնքումը նշանակում
է, որ ԱՄՆ-ը, Անգլիան ու Ֆրանսիան «վերադարձել են ՍՍՀՄ-ը մեկուսացնե-
լու արտաքին քաղաքականության հին կուրսին»։
ՆԱՏՕ-ի ստեղծմամբ դրվեց ագրեսիվ ռազմա-քաղաքական խմբավորում-
ների գլոբալ սիստեմի հիմքը, խմբավորումներ, որոնք կոչված էին ծառայե-
լու «համաշխարհային կոմունիզմը զսպելուն» և ԱՄՆ-ի համաշխարհային հե-
գեմոնիա հաստատելուն։ Բայց այն հիմնական քաղաքական ու ստրատեգիա-
կան նպատակները, որոնց ԱՄՆ-ը հույս ուներ հասնել ռազմական դաշինքների
այդ սիստեմի օգնությամբ, դուրս եկան անիրագործելի։ Միացյալ Նահանգնե-
րին չհաջողվեց «ուժային գերակշռության», ստրատեգիական առավելություն-
ների և ռազմա-քաղաքական գերազանցության հասնել ՍՍՀՄ ու ամբողջ սո-
ցիալիստական լագերի նկատմամբ։

* * *

«Զսպելու» քաղաքականությունը ելնում էր ուժերի հարաբերակցությունը
աստիճանաբար ԱՄՆ-ի օգտին փոխելու և ՍՍՀՄ նկատմամբ նրա «ուժային
գերազանցությանը» հասնելու ստրատեգիական ծրագրից։ Բայց այդ հույսերն
ի դերև ելան։ Կոմունիզմը «զսպելու» քաղաքականությունը կրախի մատնվեց։
Այդ քաղաքականության ձախողումը պայմանավորված էր, ամենից
առաջ, ՍՍՀՄ տնտեսական զարգացման և նրա ռազմական հզորության բարձ-
րացման բնագավառում ձեռք բերված վիթխարի հաջողություններով։ Տնտե-
սական բլոկադայի, գաղափարական դիվերսիաների, քաղաքական և ռազմա-
կան ճնշման միջոցով սովետական էկոնոմիկայի վերականգնումն ու հետագա
զարգացումը ձախողելու համար ԱՄՆ-ի գործադրած ճիգերը կրախի մատնվե-
ցին։ Կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ը վերացրեց պատերազմի հետևանքնե-
րը, վերականգնեց քայքայված տնտեսությունը և, շարունակելով անշեղ վերել-
քը, առաջ էր ընթանում սոցիալիզմի կառուցումն ավարտելու ուղիով։
Տնտեսական ու գիտատեխնիկական առաջադիմության բնագավառում
ՍՍՀՄ ձեռք բերած հսկայական հաջողություններն ընդունեցին ամերիկյան
էքսպանսիոնիզմի մի շարք գաղափարախոսներ։ «Զսպելու» դոկտրինայի հե-
ղինակ Քենանը, որը 1947 թվականին խոսում էր սովետական էկոնոմիկայի
«սնանկացման վտանգի», սովետական ժողովրդի «ֆիզիկական ու հոգևոր
ուժասպառության» մասին, 1958 թվականին հարկադրված էր ընդունել, որ իր
«գուշակումները» անհիմն դուրս եկան։ Չնայած պատերազմի պատճառած
ավերածություններին, սովետական էկոնոմիկան կարճ ժամանակամիջոցում
վերելք ապրեց, սովետական ժողովուրդը հաջողությամբ վերականգնեց տըն-

տեսությունը, իրագործեց ինդուստրացման ծրագիրը, որի շնորհիվ արդյունաբերական արտադրանքի ծավալի տեսակետից ՍՍՀՄ-ը դարձավ աշխարհի երկրորդ հզոր տերությունը։

Նշանակալի հաջողություններ ձեռք բերվեցին ՍՍՀՄ պաշտպանական հզորության ամրապնդման բնագավառում։ Սովետական գիտության ու տեխնիկայի աչքի ընկնող նվաճումն էր ատոմային զենքի ստեղծումը, որով վերացավ ԱՄՆ-ի ատոմային մոնոպոլիան։ Այդ առթիվ ամերիկացի ռազմական պատմաբան Ռեյնհարդտը գրում էր. «Բոլոր մասնագետները միաձայն հայտարարում էին, որ Սովետական Միությունը ատոմային ռումբ կարող է ստեղծել 1955 թվականից ոչ շուտ։ Շատերը նույնիսկ գտնում էին, որ դրա համար Սովետական Միությանը հարկավոր կլինի քսան տարի»։

ԱՄՆ-ի ատոմային մոնոպոլիայի վերացումն ու, «ատոմային ահաբեկման» քաղաքականության ձախողումը «զսպելու» քաղաքականության և դրա ստրատեգիական դրույթների սնանկության ևս մի վկայությունն են։ Վերջինիս ձախողման մյուս կարևորագույն ցուցանիշները սոցիալիզմի ուժերի հաջողություններն էին ժողովրդական դեմոկրատիայի երկրներում և համաշխարհային սոցիալիստական լագերի ամրապնդումը։ «Զսպելու» իմպերիալիստական քաղաքականությանը սոցիալիզմի երկրները հակադրեցին բարեկամության, դաշինքի և փոխօգնության պայմանագրերով ամրապնդված իրենց քաղաքական միասնությունը և տնտեսական բազմակողմանի համագործակցությունը։

Ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի օգտին արմատապես փոխվելու շնորհիվ իմպերիալիզմի արտաքին քաղաքականության կուրսը հիմնովին ձախողվեց։ 50-ական թվականների սկզբին ԱՄՆ-ի ղեկավար շրջաններում «մեծ վիճաբանություններ» ծավալվեցին արտաքին քաղաքականության ստրատեգիայի ու տակտիկայի հարցերի շուրջը։ 1952 թվականի պրեզիդենտական ընտրությունների ժամանակ հանրապետական կուսակցությունը, օգտագործելով Տրումենի կառավարության արտաքին-քաղաքական ու ռազմական սխալները, անհաջողություններն ու ձախողումները, սուր քննադատեց դեմոկրատների արտաքին-քաղաքական և ռազմա-ստրատեգիական ծրագրերը։ Հատկապես խիստ քննադատվեց «զսպելու» դոկտրինան։ Հանրապետական կուսակցության համագումարում «զսպելու» կոնցեպցիան դատապարտվեց որպես չափից ավելի պասսիվ, ճակատագրական, անհետևողական ստրատեգիա (տե՛ս «The New York Rimes, 11, VII, 1952)։

1953 թվականի հունվարին ԱՄՆ-ի պետական ղեկը իր ձեռքը վերցրեց էյզենհաուեր-Նիքսոն-Դալլեսի կառավարությունը։ Էյզենհաուերի ադմինիստրացիան նախկին քաղաքական կուրսը փոխարինեց կոմունիզմը ետ շպրտելու բացահայտ ագրեսիվ դոկտրինայով, որը ենթադրում էր ռազմական միջամտություն սովերեն պետությունների ներքին գործերին։ Կարճ ժամանակամիջոցում հայտնի դարձավ այդ քաղաքական գծի բացարձակ սնանկությունը։

Մեր օրերում էլ իմպերիալիզմի ագրեսիվ ստրատեգիայի սուր ծայրը, առաջին հերթին, ուղղված է սոցիալիստական պետությունների դեմ։ Իմպերիալիզմը չի հրաժարվում պայքարի զինված միջամտումներից։ Ուժեղացնելով սպառազինությունների մրցավազքը, մոնոպոլիստական կապիտալը փորձում է ակտիվացնել ռազմական բլոկները, որոնք ստեղծվել են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ, աշխատում է արգելակել նրանց զարգացումը։ Միլիտարիզմը միշտ եղել է իմպերիալիզմի գոյատևման վճռական գործոնը։ Բայց այսօր այն չտեսնված ծավալ է ընդունել։ Իմպե-



րիալիզմն է պատճառը, որ բազմամիլիոն մարդկանց աշխատանքը, մարդկային բանականության նվաճումները ի սպաս են դրվում ոչ թե մարդկության, այլ պատերազմի կարիքներին։ ԱՄՆ-ի ռազմական ծախսերը վերջին հինգ տարում կազմել են 350 միլիարդ դոլար, այսինքն՝ 20 տոկոսով ավելի, քան երկրորդ համաշխարհային պատերազմի բոլոր տարիներին։ Չբավարարվելով դրանով, այժմ իմպերիալիստական տերությունները կազմում են սպառազինությունների մեծացման նոր պլաններ, որոնք նախատեսվում են հետագա ամբողջ տասնամյակների համար։

Օգտագործելով ռազմա-քաղաքական բլոկները և ուրիշ պետությունների տերիտորիաներում ունեցած բազաները, տնտեսական ճնշումը, ամերիկյան իմպերիալիզմը լարվածություն է պահպանում աշխարհի մի շարք շրջաններում։ Միայն վաթսունական թվականներին ԱՄՆ-ը և մյուս իմպերիալիստական պետությունները զինված հարձակումներ գործեցին Վիետնամի, Կուբայի, Պանամայի, Դոմինիկյան Հանրապետության, արաբական երկրների վրա։ Հետպատերազմյան տարիներին իմպերիալիզմը բազմիցս տեղիք տվեց միջազգային սուր ճգնաժամերի, որոնք մարդկությանը կանգնեցրին ջերմամիջուկային ընդհարման եզրին։ Վիետնամում շարունակվող զինված ինտերվենցիան առանձնահատուկ տեղ է գրավում ամերիկյան իմպերիալիզմի ռազմա-քաղաքական պլանների մեջ։ ԱՄՆ-ը մտադիր է ճզմել Ասիայում սոցիալիստական հենակետերից մեկը, փակել Հարավ-Արևելյան Ասիայի ժողովուրդների ազատության և առաջադիմության ճանապարհը, հարված հասցնել ազգային ազատագրական շարժմանը, խարխլել սոցիալիստական երկրների, ամբողջ աշխարհի աշխատավորների պրոլետարական համերաշխության ամրությունը։ Սակայն ամերիկյան կառավարող շրջանների ծրագրած քաղաքական կուրսի և նրա ռեալ հնարավորությունների միջև կա անլուծելի հակասություն։

Դասեր չքաղելով վիետնամյան իրենց ձախողված քաղաքականությունից, ամերիկյան իմպերիալիստական շրջանները ջանք չեն խնայում բորբոքելու Իսրայելի ագրեսիան Մերձավոր Արևելքում։

«Իմպերիալիզմը,— ասված է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների՝ Մոսկվայի միջազգային խորհրդակցության կողմից 1969 թ. հունիսի 17-ին ընդունված հիմնական փաստաթղթում,— անզոր է վերադարձնելու իր կորցրած պատմական նախաձեռնությունը, ետ շրջելու ժամանակակից աշխարհի զարգացումը։ Մարդկության զարգացման մայրուղին որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, միջազգային բանվոր դասակարգը, բոլոր հեղափոխական ուժերը»։

Կոմունիզմը «զսպելու» Տրումեն-էյզենհաուեր-ջոնսոնյան դատապարտված դոկտրինան մեր օրերում դարձյալ մնում է Նիքսոնի կառավարության գաղափարական-քաղաքական ստրատեգիայի անկյունաքարը։ Սակայն ինչպիսի միջոցների էլ դիմի ժամանակակից իմպերիալիզմը, այն ի վիճակի չէ կասեցնելու կոմունիզմի ուղիով շարժվող հասարակական առաջընթացը։

Մ. Ս. ՀԱԿՈԲՅԱՆ



## ՍՐԲԱԶԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐ

Երևանում 1914 թ. փետրվարից մինչև հունիս ադրբեջաներեն լույս էր տեսնում «Լեյլակ» երգիծական ամսագիրը, որը մերկացնում էր ռուսական ինքնակալության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Ցարիզմի բացահայտ սանձարձակությունների օրերին «Լեյլակը» բոլորին լսելի ձայնով հայտարարում էր. Գարնան սկզբից արևը չի ժպտացել Երևանին... Այստեղ տասը օրը մեկ հրատարակվում է «Խոսք» անունով հայկական թերթ, որի խմբագրին տանջում ու հալածում են անվերջ։ Ինչո՞ւ։ Որովհետև նա հաց է ուզել սովյալների համար, խոսք բացել ստեղծված ծանր դրության, սովամահ չքավորների ճոքախտային վիճակի մասին։ Հասկացրել է, որ ներկա վտանգավոր «պալարը» հեռացնելու համար անհրաժեշտ է «վիրահատում», մաքուր օդ, հաց վաստակելու համար հանգիստ պայմաններ (տե՛ս «Լեյլակ», № 6, էջ 4)։ Ամսագրի ելույթը հասարակական լայն արձագանք գտավ։

Հայտնի է, որ մինչև անցյալ դարի 30-ական թվականներն ադրբեջաներեն չի հրատարակվել ոչ մի պարբերական։ Կովկասի գլխավոր վարչապետ բարոն Ռոզենի, 1831 թվականի դեկտեմբերի 30-ի, լուսավորության մինիստրին ուղարկած շրջաբերականում և 1832 թվականի հունվարի 2-ին գավառային վարչապետներին ուղղված պաշտոնական հայտարարության մեջ նշվեց, որ 1832 թվականի հունվարի մեկից ադրբեջաներեն լույս է տեսնում «Թաթար խաբարլարի» թերթը, որը 1828 թվականից Թիֆլիսում հրատարակվող «Тифлисские ведомости»-ի հավելվածն է։

«Թաթար խաբարլարի» թերթի տնօրինությունը պաշտոնապես հանձնված էր «Тифлисские ведомости»-ի խմբագիր Պ. Ս. Սանկովսկուն, որն ադրբեջաներենին չէր տիրապետում։ Դրա համար, այդ շնորհակալ, բայց դժվարին գործը մեծ հաճույքով ու հմտությամբ կատարում էր Ն. Ա. Ենիկոլոպովը, որը կատարյալ կրթություն էր ստացել Եվրոպայում և արևելյան լեզուների լավագույն գիտակ էր։ Մ. Ա. Ենիկոլոպովի գործունեությամբ չէր սահմանափակվում այն մեծ օգնությունը, որ հայ մտավորականները ցույց էին տալիս ադրբեջանական առաջին թերթին։ Ադրբեջաներեն տպագիր օրգանի համեմատաբար ուշ հանդես գալը կապված էր լուրջ դժվարությունների, ինչպես նաև արաբական տառանիշերի բացակայության հետ։

Անդրկովկասում հայ տպագրիչ վարպետները, հաղթահարելով մեծ դժվարություններ, ստեղծեցին արաբական տառանիշեր, որը հնարավորություն ընձեռեց ադրբեջաներեն լույս ընծայելու առաջին թերթը։ «Թաթար խաբարլարի» լրագրի հրապարակումով հիմք դրվեց ադրբեջանական պարբերական մամուլին։

1840 թվականներից հրապարակ եկավ «Կաֆկազին բու թարաֆինին խաբարլարի» թերթը, որը «Кавказский вестник»-ի ադրբեջաներեն տարբերակն էր։ Նրանում տպագրվում էին պաշտոնական հաղորդագրություններ, լուրեր, հայտարարություններ և այլն։ Թերթի խմբագիրն էր՝ Պլատոն Իոսելիանին, իսկ թարգմանիչը՝ Բաբաջան Լազարովը։

Միայն 1875 թվականի հուլիսի 22-ին լույս տեսավ Հասանբեկ Զարդաբիի «Աքինչի» ինքնուրույն ադրբեջանական թերթը։ Առաջին իսկ օրից այն բարեկամական, ստեղծագործական կապեր հաստատեց «Մշակի» հետ։ Ուշագրավ է այն փաստը, որ երբ «Աքինչի» թերթի դեմ անհաշտ ու կատաղի պայքար էին մղում ազգային մշակույթի ու առաջադիմության այնպիսի թշնամիներ, ինչպիսիք էին՝ Հասան Հաջի Կարաբաղին, կապիտան Սուլթանովը, գեներալ Ալիխանովը և ուրիշներ, «Մշակ»-ը, նրա խմբագիր Գր. Արծրունին օգնության էին հասնում բարեկամ գրչակիցներին։

Բարեկամության, անշահախնդիր օգնության ու աջակցության մասին է վկայում «Աքինչի» թերթի առաջին համարի լույսընծայման առթիվ «Մշակի» առաջնորդող հոդվածը։ Այստեղ բարձր է գնահատված «Աքինչի» թերթի դերը բարեկամ ժողովրդի մշակութային կյանքում։ «Մշակը» հաճախակի հաղորդումներ ու լուրեր է տպագրել ադրբեջանական թերթի բովանդակության, նպատակի, ուղղության, ծրագրերի մասին։ «Մշակը» իր էջերում լայն պրոպագանդելով «Աքինչի» թերթը, նրան պաշտպանում էր հետադիմական ուժերի հարձակումներից։ Բացի այդ, «Մշակը» քաջալերում էր «Աքինչիին», ուրախանում նրա ստեղծագործական հաջողություններով։ Հայ ընթերցողներն ակտիվ մասնակցում էին «Աքինչի» թերթի տարածմանը։

Ուշագրավ են «Մշակի» համարներից մեկում տպագրված հետևյալ տեղեկությունները. «Գյանջայում մի քանի հայեր «Աքինչի» թերթը տարածելու նպատակով 4 անգամ 5 օրինակ նվիրել են իրենց ծանոթ ադրբեջանցիներին, որպեսզի նրանք կարդան և աջակցեն թերթի տարածմանը» (Ծ. Աղայան, Հայ և ադրբեջանական ժողովուրդների դարավոր բարեկամությունը, Երևան, 1967, էջ 112)։

«Մշակի» ու «Աքինչիի» սերտ համագործակցությունը խարսխված է եղել նպատակի ու գաղափարի ընդհանրության վրա, ծառայել եղբայրական երկու հարևան ժողովուրդների առաջադիմության շահերին։ Զարդաբին 1877 թվականին «Աքինչի» թերթի 4-րդ համարում գրել է. «Քանի հարյուր տարի է, որ մենք հայերի հետ հարևանություն ենք անում»։ Մերկացնելով եղբայրական ժողովուրդների միջև անհավատարմություն ու թշնամություն սերմանող ամեն տեսակ տզրուկներին, նա ասել է. «...Այժմ ամոթ չէ՞ ձեզ, իրար դեմ գրգռելու մեզ... չէ՛ որ եղբայրներ ենք մենք և պետք է խաղաղ ապրենք» («Աքինչի», № 4, 1877 թ.)։

«Աքինչին» բարձր էր գնահատում «Մշակի» ու նրա խմբագիր Գր. Արծրունու հետ ունեցած կապերը, եղբայրության կոչ անում երկու ժողովուրդներին, ջատագովում առաջադեմ գաղափարներ։ Սակայն իշխող խավերին հաջողվեց արգելել թերթի գործունեությունը և այն փակվեց 1877 թվականի սեպտեմբերի 29-ին։

Այնուհետև շուրջ քառորդ դար ադրբեջաներեն թերթ չհրատարակվեց։ 1903 թ. մարտից մինչև 1905 թ. հունվարի 15-ը Թիֆլիսում լույս էր տեսնում «Շարկի ռուս» թերթը։ Այն բարեկամական կապեր հաստատեց «Մուրճի» հետ։ «Շարկի ռուսը» իր էջերում առաջ էր քաշում լուսավորությանը, մշակույթի զարգացմանը նվիրված հարցեր։ «Մուրճը» «Կովկասի թուրք մամուլը» հոդվածում (№ 2, փետրվար, 1904 թ.) պաշտպանել է «Շարկի ռուսի» արծարծած հայացքները։

1905 թվականի առաջին ռուսական հեղափոխության տարիներին սկսվեց ադրբեջանական պարբերական մամուլի նոր դարաշրջանը։ Այդ ժամանակ ծնունդ առավ ադրբեջանական բոլշևիկյան մամուլը, որի էջերում հանդես եկան նաև հայ կոմունիստները՝ Ս. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ս. Կասյանը և ուրիշներ։

1905—1907 թվականներին Բաքվում ադրբեջաներեն հրատարակվող «Հումմեթ», «Թաքամուլ», «Յոլդաշ» և հայերեն տպագրվող «Բանվորի ձայն», «Օրեր» բոլշևիկյան պարբերականների, խմբագրությունների միջև հաստատվել էր ստեղծագործական սերտ համագործակցություն։ Ադրբեջանցի ու հայ բոլշևիկ լրագրողներն իրենց տպագիր ելույթներում աշխատավոր մասսաներին դաստիարակում էին ինտերնացիոնալիզմի ոգով, կոչ անում ակտիվ մասնակցել հեղափոխական պայքարին։

Հայ և ադրբեջանական լրագրողների միասնական գործունեության փայլուն արտահայտությունն էր հայերեն և ադրբեջաներեն հրատարակվող «Կոչ-դևեթ» թերթը, որը լույս է տեսել 1906 թ. մայիսի 1-ից մինչև օգոստոսի 6-ը՝ ընդամենը 12 համար։ Այն մերկացնում էր դասակարգային թշնամիների բոլոր «ոտնձգությունները», ամրապնդում եղբայրությունը ադրբեջանցի ու հայ բանվորների միջև, միասնական պայքարի կոչում նրանց։ Ժողովուրդների բարեկամության բոցաշունչ ջատագով Մ. Ազիզբեկովի ջանքերով ստեղծված լրագիրը լայն ճանաչում էր գտել բոլշևիկների շրջանում։ «Կոչ-դևեթ»-ի խմբագիրները և նրանց հետ միասին տասնյակ հայ ու ադրբեջանցի առաջադեմ մտավորականներ ջանք չէին խնայում բոլշևիկյան ճշմարտությունը մասսաների սեփականությունը դարձնելու համար։

Հ. Թումանյանի և Ա. Շիրվանզադեի գրչակից ու բարեկամ Ջալիլ Մամեդկուլիզադեն 1906 թվականի սկզբին հիմնադրեց ադրբեջանական երգիծական դպրոց։ Ապրիլի 6-ին նրա խմբագրությամբ լույս տեսավ հանրահռչակ «Մոլլա Նասրէդինի» առաջին համարը։ «Մոլլա Նասրէդինի» հրապարակումից երկու ամիս հետո լույս տեսավ «Խաթաբալա» հայկական երգիծական ամսագիրը։ Այդ երկու ամսագրերի միջև հաստատվեցին ստեղծագործական կապեր։

«Մոլլա Նասրէդինի» նկարիչները՝ Շմեռլինգն ու Ռոտերը նկարում էին նաև «Խաթաբալայի» համար։ Երբ ադրբեջանական հոգևորականությունն սկսեց հալածել Ջալիլ Մամեդկուլի-

զադեին, նրան առաջինն օգնության հասավ «Խաթաբալան»։

«Խաթաբալայի» խմբագիր Գ. Երիցյանը ցանկանում էր, որ իր բարեկամ Ջ. Մամեդկուլիզադեի խմբագրած «Մոլլա Նասրէդինի» լուսատու ճառագայթները հասնեն մուսուլմանական աշխարհի ամենախավար անկյունները։ Աշխատավորները գոհունակությամբ էին ընդունում «Մոլլա ամուն», որի հաջողությունները շատ էին ուրախացնում «Խաթաբալային»։

Ցարական ներքին գործերի մինիստրությունը արգելեց «Մոլլա Նասրէդինին» հանդես գալ Պարսկաստանի շահի դեմ, իսկ շահը թույլ չէր տալիս այն տարածել իր երկրում։ Այդ անարդարության դեմ բողոքի ձայն բարձրացրեց «Խաթաբալան»։

Այս և նման փաստերը պերճախոս վկայում են, որ դեռ անցյալ դարի 30-ական թվականներից առաջադեմ հայ ու ադրբեջանական մամուլի միջև հաստատվել էին բարեկամական, ստեղծագործական կապեր։

Այդ գեղեցիկ ավանդույթներին հավատարիմ մնաց «Լեյլակը», որը «Խոսքի» հետ պայքարում էր ցարական ինքնակալության դեմ («Խոսք» թերթը հրատարակվում էր Երևանում, 1913 թվականի դեկտեմբերի 30-ից մինչև 1914 թվականի հունիսի 20-ը)։ 1914 թվականի մայիսի 2-ին Թիֆլիսի մամուլի գործերի կոմիտեն հաղորդում էր Թիֆլիսի դատաստանական պալատի դատախազին, որ Երևանի նահանգապետի կարգադրությամբ բռնագրավվել է «Խոսք» թերթի 17-րդ համարը և հարց է բարձրացվել նրա խմբագիր Արշավիր Միքայելի Մելիքյանին դատի տալու և կալանքի վերցնելու մասին[1]։ Թերթը մեղադրվում էր հեղափոխական գաղափարների տարածման համար։

Տեղեկացնելով իր ընթերցողներին այդ անարդարության մասին՝ «Լեյլակը» համերաշխության ձեռք էր մեկնում ազատություն ու հավասարություն պահանջող «Խոսքին» ու նրա խմբագիր Ա. Մելիքյանին։

1914 թվականի մայիսի 12-ի համարում «Լեյլակը» գրում էր, որ դատաստանը մարդկանց ձայնը լռեցնելու, նրանց խուլ ու համր դարձնելու համար էր։ «Եթե այդպես չէ, ապա ինչու են դատում այն մարդուն, որը մտածում ու խոսում է սովամահ չքավորների անմխիթարական վիճակը բարելավելու մասին։ Պարզվում է, որ տվյալ դեպքում մեղադրանքի միակ պատճառը թերթի անունն է, «Խոսք», դա կնշանակի խոսել, ասել։ Ուրեմն, եթե մեր հարգելի խմբագիրն այդ անունը փոխեր և թերթն անվաներ «Լռություն», կամ էլ «Հնազանդություն», հիմա դատարանի առջև չէր կանգնի» («Լեյլակ», 12 մայիսի, 1914 թ.)։ «Լեյլակը» հրապարակայնորեն դիմակազերծ էր անում ցարական կառավարության մեքենայությունները՝ 1905 թ. հեղափոխության ժամանակ խոստացած որոշ դեմոկրատական ազատությունները չիրականացնելու կապակցությամբ։

Հայտնի է, որ ռեակցիայի տարիներին բացարձակ հարձակում էր սկսվել դեմոկրատական մամուլի դեմ, հալածվում էին առաջադեմ լրագրողներն ու մտավորականները, շատ թերթեր ու ամսագրեր, որոնք պաշտպանում էին ժողովրդի շահերը, հալածվում էին, արգելվում։

Հրապարակախոսական կրքոտ շնչով է գրված ամսագրի 11-րդ համարում տպագրված մահախոսականը։ Հեղինակը նշում է, որ գաղութային լծից, չարքաշ կյանքից, անվերջ հալածանքներից ու հետապնդումներից մասամբ ազատվելու, մի կտոր հաց վաստակելու և նվազագույն երջանկության հասնելու հույսով, հազարավոր հայաստանցիներ թողել են իրենց պապենական օջախը, հեռացել հայրենիքից։ Բայց երջանկությունն էլ, արդարությունն էլ, ազատությունն էլ, մի կտոր հացն էլ չքացել են շահագործող աշխարհի բոլոր անկյուններում։ Ժողովուրդը ոչ արդարության է արժանանում, ոչ կուշտ փորով հացի։

Այդ տարիներին էր, երբ կտրում էին նրա զավակների արդարություն պահանջող լեզուն, սպանում երջանկություն տենչող սիրտը։ Դրա լուռ վկան էր վայրենաբար սպանված թղթակից Յուսիֆ Հեյդարզադեն։

Յուսիֆը ծնվել է Երևանի նահանգի Ղամարլու գյուղում։ Մի կտոր հաց վաստակելու համար քանի՜, քանի աղալարների դուռ է ծեծել, ուսում ստանալու ծարավով քանի՜, քանի գյուղ է շրջել, դպրոց ու վարժապետ փնտրել։ Հասարակական անարդարությունների էությունը հասկանալու, թանձր խավարի թագավորության մեջ ապրող ժողովրդին լուսավորելու նպատակով ուսում է ստացել հանդիպած քիչ թե շատ գրագետ այս կամ այն մարդուց։ Նույն ձգտումներով, նույն նպատակով 25 տարեկան հասակում եկել է Երևան։ Բայց քաղաքում իշխող կարգերը, տիրող պայմանները նրան հնարավորություն չեն ընձեռել ուսում ստանալ կամ համապատասխան աշխատանք գտնել։

Հեյդարզադեի առաջադիմական հոդվածները, երգիծական բանաստեղծությունները դժգոհություն էին առաջացրել հարուստների շրջանում։ Ամսագրի խմբագրությունը ենթարկվում էր հալածանքի, ամենուր վարկաբեկվում։ Այդ պատճառով էլ Յուսիֆը երկու տարի հետո հեռանում է Հայաստանից, գնում է Մերվ։ Այնտեղ ևս Յուսիֆը չի հաշտվում իշխող դասակարգերի անարդարությունների հետ, բողոքի ձայն է բարձրացնում տիրող կարգերի սանձարձակությունների դեմ։ Այդ մասին նա հաճախ նամակներ, թղթակցություններ է հղում պարբերականներին, հատկապես Բաքվում լույս տեսնող «Իգբալ» թերթին։

Չնայած դաժան հալածանքներին, Յուսիֆն ամենածանր պայմաններում չի նահանջում իր ընտրած ուղուց։ Մերվում ապրած մի քանի տարիների ընթացքում նա աշխատավորության, հատկապես երիտասարդության շրջանում ծավալում է հասարակական, քաղաքական աշխատանք։

1914 թվականի փետրվարի 12-ին քաղաքային թատրոնում ելույթի ժամանակ Յուսիֆ Հեյդարզադեն չարանենգորեն սպանվեց։ Նրա մասին «Լեյլակը» գրում էր. «Յուսիֆի ճակատագիրը միլիոնավոր աշխատավորների, հազարավոր առաջադեմ մտավորականների ճակատագիրն է։ Իսկ այդպիսի միլիոնավորների ու հազարավորների դահիճն ու մարդասպանը հասարակական կարգերն են, ինքնակալությունն ու ցարիզմը» («Լեյլակ», 12 հունիսի, 1914 թ., № 11, էջ 2)։

«Լեյլակի» համարներում տեղեկություններ են տպագրված այդ ժամանակաշրջանում տարբեր վայրերում, տարբեր լեզուներով հրատարակվող պարբերական մամուլի մի շարք օրգանների մասին։ 10 և 11-րդ համարներում զետեղված հայտարարություններից պարզ երևում է, որ «Լեյլակը» կապեր է ունեցել նաև «Նոր մամուլի» հետ։

Ինչպես հայկական մյուս պարբերականները, այնպես և «Նոր մամուլը» անդրադարձել է ադրբեջանական կյանքին ու սերտ գործակցել ադրբեջանցի ընթերցողների հետ։ 1914 թվականի հունիսի 12-ին և 17-ին «Լեյլակում» տպագրված հայտարարություններով, «Նոր մամուլը» ադրբեջանցի ընթերցողներին «հավաստի հարգանքով» հաղորդում էր, որ «Տպագրելու է հայտարարություններ Ռուսաստանի բոլոր վայրերում տարածելու համար։ Այդպիսի հայտարարություններ տալ ցանկացողներից խնդրվում է անցնել մեզ մոտ» («Լեյլակ», № 10 և 11, էջ 8)։

Հայտարարությունների բաժնում տպագրված այս կարգի նյութերը տեղեկություններ են տալիս, թե տարբեր վայրերում հրատարակվող որ թերթերն ու ամսագրերն են հասել Հայաստան։ Մի հայտարարության մեջ ամսագիրը տեղեկացնում է. «Ռուսերեն իմացող մեր մտավորականներից շատերն ստանում են Պետերբուրգում ռուսերեն հրատարակվող մուսուլմանական թերթը, որի երևանյան լիազորն է «Մոլլա Նասրէդինի» թղթակից Ալի Մահզուն Ջեյնալաբդընզադեն» («Լեյլակ», № 12, էջ 8)։ Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին ամսագրի էջերում զետեղված այն քննադատությունը, որը վերաբերում էր «Русские ведомости», «Новое время», «Речь» թերթերում տպագրվող կեղծ տեղեկություններին, հանգեցնում է այն եզրակացության, որ նշված թերթերը ևս հասել են Հայաստան, որոնց հակաժողովրդական բնույթը քաջ հայտնի է եղել «Լեյլակի» հրատարակիչներին ու ընթերցողներին։ Բազմիցս կրկնվող այլ հայտարարություններից պարզվում է, որ Տաշքենդում տպագրվող գրական ու տնտեսագիտական «Սադաի Թուրքեստան» թերթը և Ստամբուլում լույս տեսնող գիտական «Շեհրալ» ամսագիրն իրենց ընթերցողներն են ունեցել Հայաստանում (նույն տեղը, №№ 10, 11, 12, էջ 8)։

Իսկ «Լեյլակը», արդյոք, դո՞ւրս է եկել Հայաստանի սահմաններից։ Այս հարցին պատասխան տվող հիմնական աղբյուրը առայժմ ամսագիրն է։ Նրա 4-րդ համարում տպագրված փոքրածավալ մի գրվածքում ասվում է. «Այն անձանց, որոնց այլ քաղաքներում վաճառելու համար ուղարկվել է մեր ամսագիրը, խնդրում ենք վաճառված համարների գումարը շտապ ուղարկել» («Լեյլակ», 28 ապրիլի, 1914 թ., № 4, էջ 8)։ Ուրեմն, կասկած չի մնում, որ «Լեյլակը» տարածվել ու վաճառվել է նաև այլ քաղաքներում։ Իսկ որո՞նք են այդ քաղաքները։ Այս հարցի պատասխանն էլ կարելի է գտնել ամսագրի էջերում։ Բազմաթիվ նյութերից պարզ երևում է, որ ամսագիրը ընթերցողներ, թղթակիցներ, նույնիսկ լիազորներ է ունեցել Նախիջևանում, Ջուլֆայում, Օրդուբադում, Գյանջայում, Բաքվում, Թիֆլիսում և այլուր։ Այլապես «Լեյլակը» հնարավորություն չէր ունենա առանց ուշացման բազմաթիվ ստույգ տեղեկություններ, բացատրություններ, հաղորդումներ տալ այդ վայրերում տեղի ունեցող դեպքերի մասին։ Այս համոզմունքը հաստատվում է նաև «Մեր պատասխանը ջուլֆացի Ծինբեկին», «Նամակ Թիֆլիսից», «Օրդուբադցի», «Նամակ Գյանջայից», «Գյանջա», «Բաքու», «Նախիջևան, Քյալանտարովի եղբայրը» վերնագրերով տպագրված նյութերով («Լեյլակ», №№ 6, 7, 8, 11, 12)։

«Սադաի Թուրքեստան» թերթի և «Շեհրալ» ամսագրի բաժանորդագրության պայմանների մասին բազմիցս տպագրված հայտարարությունները վկայում են, որ «Լեյլակը» ընթերցողներ է ունեցել Տաշքենդում ու Ստամբուլում, ինչպես նաև Կովկասի, Միջին Ասիայի ու Թուրքիայի մյուս քաղաքներում։

«Լեյլակը» հանդես է եկել առաջադիմական, դեմոկրատական դիրքերից, նպաստել հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, զարգացրել ադրբեջանական և հայ պարբերական մամուլի միջև ստեղծված ավանդույթները։

Ի. Ս. ՄԱՄԵԴՈՎ

[1] Ленинград. ЦГИА СССР, ф. 776, д. 241, л. 4.

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՇԱԳՐԱՎ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Վլադիմիր Իլյիչ Լենինի գրական ժառանգությունը մեծագույն ավանդ է պրոլետարիատի հեղափոխական ուսմունքի գանձարանում: Այն բանվոր դասակարգի գաղափարական զենքն է կապիտալիզմի դեմ մղվող անհաշտ պայքարում: Իմպերիալիզմի ու սոցիալիստական հեղափոխությունների դարաշրջանում Վ. Ի. Լենինը գիտական նոր հետևություններով ու եզրակացություններով զարգացրեց ու հարստացրեց Կարլ Մարքսի ու Ֆրիդրիխ Էնգելսի հեղափոխական ուսմունքը:

Լենինի աշխատությունները հասարակության զարգացման օրենքների, կոմունիզմի կառուցման մասին ճշմարտացի գիտելիքների անսպառ աղբյուր են:

«Լենինը մեծագույն գիտնական էր հեղափոխության մեջ և հեղափոխական՝ գիտության մեջ, նա նոր էտապ բացեց մարքսիստական տեսության զարգացման գործում, հարստացրեց մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը՝ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը և գիտական կոմունիզմը» (Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներից):

Կոմունիստական կուսակցությունները, ելնելով լենինյան գաղափարական ժառանգությունից, մեծ աշխատանք են կատարում հասարակության զարգացման արդի ժամանակաշրջանում ստեղծագործաբար կենսագործելու մարքս-լենինյան ուսմունքը, հարստացնելու այն: Նրանք անաղարտ պահպանելով մարքս-լենինյան տեսության սկզբունքները, անհաշտ պայքար են մղում հակակոմունիզմի գաղափարախոսության, ժամանակակից ռևիզիոնիզմի, ամեն երանգի օպորտունիստական հոսանքների դեմ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն մեծ նշանակություն է տալիս Վլադիմիր Իլյիչի աշխատությունները լայն մասսաների սեփականությունը դարձնելու գործին: Խնամքով պահպանվում և հրատարակվում են Լենինի երկերը, նրա գրչին պատկանող փաստաթղթերն ու նրա զեկուցումների և արտասանած ճառերի սղագրությունները:

«Հայաստան» հրատարակչությունը, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ, ընթերցողին է ներկայացրել ճաշակով ձևավորված, հարմար ծավալով, մասսայական տպաքանակով՝ առաջնորդի **Մեծ նախաձեռնություն, Վերջին նամակները և հոդվածները, Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն, Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին, Դասակարգային պայքարի լիբերալ և մարքսիստական ըմբռնման մասին, Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին, Մարքսիզմի ծաղրանկարի և «իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին, Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը, Յունիուսի բրոշյուրի մասին, Մարքսիզմը և ռևիզիոնիզմը, Պետության մասին** աշխատությունները:






Վ. Ի. Լենինն իր՝ «Մեծ նախաձեռնություն» նշանավոր աշխատությունը գրեց այն օրերին, երբ երիտասարդ սովետական պետությունը գտնվում էր ծանր վիճակում: Սպիտակ գվարդիական հրոսակախմբերն ու կապիտալիստական 14 պետություններ արշավանք էին սկսել Ռուսաստանում սովետական իշխանությունը օրրանում խեղդելու համար: Հարավից շարժվող Դենիկինի սևհարյուրակային զնդերը սպառնում էին Մոսկվային: Վլադիմիր Իլյիչի կոչով բանվորներն ու գյուղացիները գոտեմարտի էին դուրս եկել սոցիալիզմի թշնամիների դեմ՝ հանուն սովետների:

Բարձր գնահատելով կարմիր բանակի զորագնդերի մարտական գործողությունները, Լենինը նշում էր. «Սոցիալիզմի հաղթանակի գործի համար գիտակցաբար զոհաբերություններ անող աշխատավոր մասսաների հերոսություն— ահա թե ի՛նչն է Կարմիր բանակի նոր, ընկերական կարգապահության, նրա վերածնության, ամրապնդման, աճման հիմքը» («Մեծ նախաձեռնություն», էջ 3): Միաժամանակ նա ընդգծում է, որ թիկունքում բանվորների կատարած հերոսությունը ևս արժանի է մեծ ուշադրության: «Այդ տեսակետից ուղղակի հսկայական նշանակություն ունի **կոմունիստական շաբաթօրյակների** կազմակերպումը բանվորների կողմից, իրենց սեփական նախաձեռնությամբ» (նույն տեղը): Լենինը նկատում է. շաբաթօրյակների պատմական նշանակությունն այն է, որ աշխատանքի նըկատմամբ բանվորները ցուցաբերում են կոմունիստական վերաբերմունք, անցում է կատարվում ավելի բարձր՝ գիտակցական կարգապահության, որի շնորհիվ զգալիորեն բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը: Լենինյան դրույթը ելնում էր 1919 թվականի մայիսի 17-ին Ալեքսանդրյան երկաթուղում կոմունիստական շաբաթօրյակին մասնակցողների աշխատանքի արտադրողականության մակարդակից, որը 2—3 անգամ բարձր էր սովորական աշխատանքային օրվա համեմատությամբ:

«Կոմունիզմն սկսվում է այնտեղ,— գրում է Լենինը,— որտեղ երևան է գալիս **շարքային բանվորների** անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու **յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը** և այլ մթերքներ, որոնք հասնում են ո՛չ թե անձնապես աշխատողներին և ո՛չ թե նըրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը՝ տասնյակ և հարյուր-միլիոնավոր մարդկանց...» (նույն տեղը, էջ 35):

Կոմունիստական շաբաթօրյակները, ինչպես և ամեն մի նոր, լավագույն նախաձեռնություն, որ ծնունդ է առնում սոցիալիստական հասարակարգում, Լենինն անվանում էր կոմունիզմի **ծիլեր:** Դրա համար էլ նա պահանջում էր մեծ հոգատարություն ցուցաբերել այդ ծիլերի աճման ու զարգացման նկատմամբ:

Լենինի «Վերջին նամակները և հոդվածները» ժողովածուի մեջ զետեղված են ներկուսակցական հարցերի վերաբերյալ նրա նամակները, «Կոոպերացիայի մասին», «Էջեր օրագրից», «Լավ է քիչ, բայց լավ» հոդվածները և ուրիշ գործեր: Տվյալ ժողովածուում Լենինը բազմիցս անդրադառնում է երկրի ինդուստրացման հարցին, ընդգծում, որ սոցիալիզմի կառուցման գործում վճռական դեր է խաղում ինդուստրացումը, հատկապես ծանր արդյունաբերության զարգացումը: Դրա մեջ Վլադիմիր Իլյիչը տեսնում էր սովետական իշխանության փրկությունն ու նրա անվտանգության ապահովումը:

«Լավ է քիչ, բայց լավ» հոդվածում Լենինը գրում է. պետք է «...գյուղացիական, մուժիկի ուժաթափ ձիուց, քայքայված գյուղացիական երկրին համապատասխանող տնտեսությունների ձիուց նստել այն ձին, որին փընտրում է և չի կարող չփնտրել իր համար պրոլետարիատը՝ խոշոր մեքենայական ինդուստրիայի, էլեկտրիֆիկացիայի, Վոլխովստրոյի և այլնի ձին» (Վ. Ի. Լենին, **Վերջին նամակները և հոդվածները**, էջ 104)։ Առաջնորդը ցույց էր տալիս, որ հզոր ինդուստրիայի ստեղծման աղբյուրներից մեկը խնայողության ռեժիմի կիրառումն է։ Հարկավոր է նյութերի և միջոցների մեծագույն խնայողություն պահպանել պետական տնտեսության մեջ, խնայողություն ամեն ինչում, բոլոր բնագավառներում։ «Մենք պետք է մեր պետապարատը հասցնենք առավելագույն տնտեսման։ Մենք պետք է նրանից վտարենք շռայլությունների բոլոր հետքերը, որպիսիք այնքան շատ են մնացել նրա մեջ ցարական Ռուսաստանից, վերջինիս բյուրոկրատական-կապիտալիստական ապարատից» (նույն տեղը, էջ 103—104)։

Հետևելով լենինյան ուսմունքին, մեր երկրի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ուժեղ թափով առաջ մղեցին երկրի ինդուստրացման գործը։ ՍՍՀՄ-ում 1928 թվականին արտադրվել է չուգուն՝ 3,3, պողպատ՝ 4,3, քարածուխ՝ 35,5, նավթ՝ 11,6 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 5 միլիարդ կիլովատ-ժամ։ 1969 թվականին չուգուն՝ 81,6, պողպատ՝ 110, քարածուխ՝ 608, նավթ՝ 328 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 689 միլիարդ կիլովատ-ժամ։

Նոր, կոմունիստական հասարակարգի կառուցման լենինյան պլանի կարևորագույն բաղկացուցիչ մասը հանդիսանում է գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ծրագիրը։

**Կոոպերացիայի մասին** հոդվածում Լենինը հանճարեղորեն մշակեց սոցիալիստական սկզբունքներով մեր երկրում մանր տնտեսատեր գյուղացիության ապրելակերպն ու հոգեբանությունը վերափոխելու պլանը, գիտականորեն հիմնավորեց դրա ուղիներն ու եղանակը։ «Լիակատար կոոպերացման դեպքում, — գրում է Լենինը,— մենք արդեն երկու ոտքով սոցիալիստական հողի վրա կանգնած կլինենք» (**Վերջին նամակները և հոդվածները**, էջ 58)։ Միաժամանակ Լենինն ուսուցանում էր, որ պետք է սովորել սոցիալիզմը գործնականորեն այնպես կառուցել, որ յուրաքանչյուր մանր գյուղացի կարողանա մասնակցել այդ գործին։

Իր այս նշանավոր հոդվածում Լենինը գրում է, որ ամեն մի հասարակարգ ծնունդ է առնում միայն որոշ դասակարգի ֆինանսական




օգնությամբ։ Ծարունակելով իր միտքը՝ Իլյիչն իշխանության գլուխ կանգնած բանվոր դասակարգի, սոցիալիստական պետության բարոյական պարտքն է համարում՝ օժանդակել և աջակցել կոոպերատիվ՝ կոլտնտեսային կարգի ստեղծման, ամրապնդման ու զարգացման գործին։ Կոմունիստական կուսակցությունն իրականացրեց գյուղատնտեսության վերակառուցման լենինյան պլանը։

Լենինը խիստ անհանգստացած էր, որ ետ էին մնում գիտությունն ու կուլտուրան, բնակչության մեծ մասը անգրագետ էր։ Այս ամենից նա հետևություն է անում, որ անհրաժեշտ է կատարել կուլտուրական հեղափոխություն, մեծ ուշադրություն նվիրել մշակույթի ու գիտության զարգացմանը։ Այս հարցին է նվիրված **Էջեր օրագրից** հոդվածը։ Լենինին ստահոգում էին բնակչության գրագիտության վերաբերյալ վիճակագրական տվյալները, ըստ որի 1920 թվականին 1000 բնակչից ընդամենը 318-ն էին գրագետ (իգական սեռից՝ 244)։ Այս փաստից համապատասխան եզրակացություն անելով, Լենինը նշում է. «Նանից դուրս եկավ, որ, ինչպես և պետք էր սպասել, մենք ընդհանուր գրագիտությունից դեռ շատ ու շատ ետ ենք մնացել... մենք որքան անհուն աշխատանք պետք է թափենք այժմ, որպեսզի մեր պրոլետարական նվաճումների վրա հիմնվելով՝ կարողանանք հասնել իրապես քիչ թե շատ կուլտուրական մակարդակի» (նույն տեղը, էջ 36)։



Կուլտուրական շինարարության բնագավառի կարևորագույն և առաջնահերթ խնդիրներից մեկը Լենինը համարում էր բնակչության անգրագիտության վերացումը։ Իլյիչը գտնում էր, որ մենք բոլոր հնարավորություններն ունենք այդ վիճակից դուրս գալու. «...որովհետև ժողովրդական մասսաները ոչ մի տեղ այնպես շահագրգռված չեն իսկական կուլտուրայով, ինչպես մեզանում...» (նույն տեղը, էջ 37)։ Նա նպատակահարմար էր գտնում գերատեսչությունների ծախսերից կրճատել և խնայված գումարները հատկացնել լուսժողկոմատի կարիքներին։ Նկատի ունենալով, որ կուլտուրայի տարածման գործում վճռական է ուսուցչի դերը, Լենինը պահանջում է հոգատարությամբ շրջապատել ժողովրդական ուսուցչին, մտահոգվել նրա ամենօրյա կարիքներով։ Մի այլ առիթով Լենինը նորից անդրադառնալով կուլտուրական հեղափոխության հարցին՝ նշում է. «Մեզ համար այժմ այդ կուլտուրական հեղափոխությունը բավական է, որպեսզի մեր երկիրը լիովին սոցիալիստական երկիր դառնա...» (նույն տեղը, էջ 59)։

Լենինյան կանխատեսումներն իրականացվեցին։ Սովետական Միությունում ստեղծված է նախադպրոցական հիմնարկների, դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական ինստիտուտների լայն ցանց։ Սոցիալիստական հեղափոխությունը սովետական մարդկանց բերեց կրթություն, լուսավորություն, հարստացրեց հասարակության հոգևոր կյանքը։

**Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն** իր հանրահայտ հոդվածը Լենինը գրել է 1905 թվականին Ռուսաստանում տեղի ունեցած հեղափոխության փոթորկալից օրերին։ Այստեղ Վլադիմիր Իլյիչը բնորոշում է գրականության, արվեստի դերը գաղափարական պայքարում, կուսակցության առջև կանգնած գործնական խնդիրների լուծման գործում։ Դրանից նա հետևություն էր անում, որ գրականությունը անձնավորությունների և անհատական գործ չէ։ Ուրեմն, նշում է Լենինը «Գրական գործը պետք է դառնա համապրոլետարական գործի **մի մասը...** սոցիալ-դեմոկրատական կուսակցական աշխատանքի մի բաղկացուցիչ մասը...» (**Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն**, էջ 10—11)։

Լենինը կանխատեսում էր, որ կգտնվեն հիստերիկ ինտելիգենտներ, որոնք վայնասուն կբարձրացնեն գրական ստեղծագործության «ազատության» մասին։ «Ըստ գործի էության, — գրում է Լենինը,— նման վայնասունները միմիայն բուրժուական-ինտելիգենտական ինդիվիդուալիզմի արտահայտություն կլինեին» (նույն տեղը, էջ 12)։ Բայց կուսակցությունը չպետք է զիջի իր գաղափարական դիրքերը։ Նա պետք է անողոք պայքար մղի բուրժուական եսապաշտ գաղափարախոսների՝ գրականության, արվեստի «ինքնուրույնություն», «ազատություն» ֆրազների դեմ, ամեն ինչ անի՝ «...դուրս քշելու այնպիսի անդամներին,— ասում է Լենինը,— որոնք կուսակցության ֆիրմայից օգտվում են հակակուսակցական հայացքներ քարոզելու համար» (նույն տեղը, էջ 19)։

Իր հեղափոխական գործունեության ամբողջ ժամանակաշրջանում Լենինն անհաշտ մարտնչել է գիտական սոցիալիզմի հակառակորդների՝ ինչպես աջ օպորտունիստների, ռևիզիոնիստների, այնպես էլ «ձախ-ուլտրահեղափոխականների» և անարխիստների դեմ, որոնք նահանջել են մարքսիզմի դիրքերից, փորձել բանվոր դասակարգին շեղել հեղափոխական ուղուց։ Այս հարցերին են նվիրված Լենինի՝ **Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը, Մարքսիզմը և ռևիզիոնիզմը, Դասակարգային պայքարի լիբերալ և մարքսիստական ըմբռնման մասին** գրքույկները։ «Եթե պայքարն իմպերիալիզմի դեմ անխզելիորեն կապված չէ օպորտունիզմի դեմ պայքարելու հետ,— գրում է Լենինը,— ապա այն դատարկ ֆրազ է կամ խաբեություն» (**Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը**, էջ 17)։

Վ. Ի. Լենինի անմահ գաղափարները տեսականորեն, քաղաքականապես զինում են կուսակցական ու սովետական կադրերին, բանվորներին ու գյուղացիներին, մտավորականությանը, համայն աշխարհի աշխատավորությանը՝ ստեղծագործական նախաձեռնությամբ, հեղափոխական պայքարով կերտելու կոմունիստական հասարակարգը։

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԱՊՐՈՆԵ ԳՈՒԼՊԱՆԵՐԸ «ԳԵՂՑԿԱՆՈՒՄ ԵՆ»

*Թեթև և տեքստիլ մեքենաշինության համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի կոլեկտիվն ստեղծել է УКФ—60 մակնիշի ագրեգատը, ուր համատեղվում են կապրոնե գուլպաների պատրաստման տարանջատ գործողությունները։ Գուլպաների պատրաստման ողջ ցիկլը տևում է 4,5—6,75 րոպե, իսկ մի ժամում մեքենան մշակում է 375 զույգ բարձրորակ ու գեղեցիկ կապրոնե գուլպա։ Ագրեգատի կիրառմամբ տարեկան տնտեսվում է մոտ 28 հազար ռուբլի։*

*Սովետական այդ մեքենան հաջողությամբ մրցակցում է օտարերկրյա համանման սարքավորման հետ։ Այսպես, ամերիկյան «Տուրբո» ագրեգատի համեմատությամբ այն ունի կրկնակի արտադրողականություն, ծախսում է երկու անգամ պակաս էլեկտրաէներգիա։*

## ԼՈՒՍԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ՔԻՄԻԱՅԻ

*ՍՍՀՄ ԳԱ Ա. Ֆ. Իոֆֆեի անվան ֆիզիկո-տեխնիկական ինստիտուտում ստեղծվել է ապակու մի տեսակ, որը լուսամուտի սովորական ապակուց տարբերվում է նրանով, որ այն թափանցիկ է սպեկտրի ցանկացած հատվածի համար, սկսած ինֆրակարմիրից, վերջացրած ռենտգենյան ճառագայթներով։ Նոր «ապակին» արժեքավոր է նրանով, որ կիսահաղորդիչ է և ունի մի շարք արտասովոր հատկություններ, մասնավորապես, ֆոտոժապավենի նման պատկերը «մտապահելու» (օրինակ՝ ռենտգենյան պատկեր) ունակություն։*

*Կիսահաղորդիչ սկավառակը, որը փոխարինում է լյումինեսցենտային էկրանին, վայրկենապես դրոշմում է հիվանդի ներքին օրգանների պատկերը։ Լուսավորման ժամկետը կրճատվում է հարյուր անգամ և համապատասխանաբար նվազում է ճառագայթահարման դոզան։*

*Չնայած որոշ ժամանակ անց պատկերն անհետանում է, բայց բժիշկ-ռենտգենոլոգը հասցնում է ախտորոշել հիվանդությունը։*

## ՀԱՆՔԵՐԻ ՀԵՏԱԶՈՏՄԱՆ ԱՊԱՐԱՏ

*Սուլֆիդային հանքերի հետազոտման համար ԳԴՀ-ում ստեղծվել է արդյունավետ նոր ապարատ։ Այն չափում է ապարների էլեկտրահաղորդականությունը, դրանով իսկ հնարավորություն ընձեռում որոշելու հանքերի առկայությունը տվյալ վայրում։*

*Սարքն արձակում է հաստատուն հոսանքի պարբերական իմպուլսներ, որոնք երկու էլեկտրոդի միջոցով ներթափանցում են ապարների մեջ։ Երկու այլ (չափիչ) էլեկտրոդներ միացված են օսցիլլոգրաֆին, որն ընդունում և գրանցում է լարվածությունը։ Այսպիսով, հանքաշերտերը կարելի է «լուսավորել» մինչև 100 մետր խորությամբ։*

## ՋԵՐՄՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴԴԵՄ ՔԱՂՑԿԵՂԻ

*Համբուրգցի բժիշկ Գ. Շուլցը այն կարծիքն է հայտնել, թե որևէ հիվանդության դեպքում բարձր ջերմություն ունեցողները քաղցկեղի հանդեպ ձեռք են բերում իմունիտետ, որը պահպանվում է կազդուրվելուց հետո, մոտ 5 տարի։ Աշնանից կսկսեն ուսումնասիրել մի քանի հարյուր հազար համբուրգցիների, պարզելու համար, թե ովքեր և երբ են բարձր ջերմությամբ հիվանդությամբ տառապել։*

## ԵՐԿՐԻ ԱՆՀԱՅՏ ԱՐԲԱՆՅԱԿՆԵՐԸ

*Երկիրն ունի ոչ թե մեկ, այլ ամենաքիչը տասնմեկ բնական արբանյակ։ Դրանք շատ փոքր են, ունեն 30 մետրից ոչ ավելի տրամագիծ և թռչում են համեմատաբար փոքր բարձրություններում։ Հենց դա է պատճառը, որ այդ արբանյակները նկատվել են միայն վերջին տարիներս, երբ տիեզերքում հայտնվեցին արհեստական արբանյակները։*

*Այսպես, օրինակ, 1965 թ. դեկտեմբերին երկրի «էքսպլորեր—26» արհեստական արբանյակը կտրականապես փոխեց իր ուղեծիրը, իսկ արհեստական արբանյակների՝ ուղեծրից անակնկալ շեղվելու դեպքերն ընդհանուր առմամբ նկատվել են 150 անգամ։ «Խյուզ էյրկրաֆտ» ֆիրմայի աշխատակիցները լայնանկյուն ֆոտոխցիկի օգնությամբ լուսանկարել են երկու բնական արբանյակ, որոնց ուղեծիրը հաշվարկվել է այդ շեղումներով։*